ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1957 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ



### ՔՆՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ







## СОДЕРЖАНИЕ








# ԳՈՐԾԻ ՎԵՐԱԾԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմի 1956 թվականի Դեկտեմբերյան պլենումը քննության
առնելով վեցերորդ հնգամյա պլանը կազմելու աշխատանքների ավարտման
և 1956—1960 թվականների կոնտրոլ թվերի ու 1957 թվականի ժողովրդա-
տնտեսական պլանի ճշգրտումների, ինչպես նաև ՍՍՌՄ ժողովրդական տըն-
տեսության ղեկավարումը բարելավելու հարցերը, ընդունեց կոնկրետ որո-
շումներ, որոնք հանդիսանում են առաջիկա մեր գործունեության ուղեցույցը։
Իր որոշումների մեջ պլենումը տալիս է սովետական էկոնոմիկայի խոր
վերլուծությունը՝ նրա նվաճումները, բացահայտում է դժվարություններն ու
սխալները, որոնց հաղթահարման ուղղությամբ պետք է կենտրոնացվեն պար-
տիայի և ամբողջ ժողովրդի ջանքերը։
Պլենումը ի մի ամփոփեց վեցերորդ հնգամյակի առաջին տարվա՝ 1956
թվականի սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդյունքները։
Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները՝ սո-
վետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ խոշոր
հաջողությունների հասավ տնտեսական ու կուլտուրական շինարարության,
աշխատավորների բարեկեցության նոր վերելքի, սոցիալիստական պետության
տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում։
ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի տարեկան պլանը 1956 թվակա-
նին գերակատարված է։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը 1955
թվականի համեմատությամբ ավելացել է մոտավորապես 11 տոկոսով, ընդ ո-
րում ավելի բարձր թափով զարգացել են ծանր արդյունաբերության ճյուղերը։
Հետևողականորեն կիրառելով սոցիալիստական արդյունաբերության հե-
տագա զարգացման գիծը և առավելապես զարգացնելով արտադրական մի-
ջոցների արտադրությունը՝ Սովետական պետությունն այժմ ունի հզոր ծանր
ինդուստրիա։
Ծանր ինդուստրիայի առավել զարգացման հիման վրա հաջողությամբ
զարգանում են ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը ևս, այդ թվում
նաև գյուղատնտեսությունը։ Միայն վերջին երեք տարվա ընթացքում սոցիա-
լիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվել է ավելի քան
650 հազար տրակտոր (վերածած 15 ուժանոցի), 142 հազար հացահատիկա-
յին կոմբայն, 345 հազար բեռնատար ավտոմեքենա և ուրիշ շատ մեքենաներ։
Դա հնարավորություն տվեց կարճ ժամանակամիջոցում յուրացնելու 35,5
միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր։ Դա համարյա 1,7 անգամ գերազան-
ցում է Մեծ Բրիտանիայի, Իտալիայի ու Ֆրանսիայի հացահատիկային կուլ-
տուրաների ցանքերի տարածությունները միասին վերցրած։
Չնայած երկրի հարավային շրջաններում կլիմայական անբարենպաստ

պայմաններին՝ կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, պետությանը ավելի հանձնեցին ու վաճառեցին հաց՝ 1 միլիարդ փութ, կարտոֆիլ՝ 2,7 միլիոն տոննա, կաթ՝ 3,8 միլիոն տոննա: Զգալիորեն աճեց նաև բամբակի, բրդի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրանքը: Մեր երկրի ամբողջ պատմության ընթացքում այդպիսի բերք դեռ երբեք չէր եղել:

Ծանր արդյունաբերության զարգացման արագ տեմպերը հնարավորություն են տալիս ավելացնելու ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը: Անցած 1956 թվականին թեթև արդյունաբերությունը պլանից ավելի բնակչությանը տվել է 3 միլիարդ ռուբլու արտադրանք, սննդարդյունաբերությունը՝ 4 միլիարդ ռուբլու:

Կապիտալիստական երկրներում արտադրությունը մարդկանց շահագործելու, կեղեքման միջոց է, մինչդեռ, Սովետական Միությունում արտադրությունը միջոց է է՛լ ավելի լրիվ բավարարելու սովետական հասարակության նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքները: Արդեն իսկ վեցերորդ հնգամյակի առաջին տարում այդ բնագավառում կարևոր միջոցառումներ են կիրառված. բարձրացված են պետական կենսաթոշակները, վերացված է ուսման վարձը միջնակարգ և բարձրագույն դպրոցներում, ավելացված է կանանց հղիության ու ծննդաբերության արձակուրդների տևողությունը, կրճատված է աշխատանքային օրը տոնական ու հանգստյան օրերի նախօրյակներին, կիրառվում է բանվորների աշխատանքային կրճատ օրը ածխարդյունաբերության մեջ, 1957 թվականի հունվարի 1-ից բարձրացվել է ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը: Բարձրացված են գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գները, որով ավելացել է կոլտնտեսականների դրամական եկամուտը: Հենց միայն այս միջոցառումները քաղաքային ու գյուղական բնակչությանը տարեկան ավելի քան 35 միլիարդ ռուբլու լրացուցիչ օգուտ տվին:

Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, Հայկական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները սովետական մյուս ժողովուրդների եղբայրական ընտանիքում որոշակի հաջողությունների հասան վեցերորդ հնգամյակի առաջին տարվա պետական պլանները կատարելու գործում: Ժամկետից 10 օր շուտ ավարտված է ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության պլանի կատարումը և պլանից մոտ 200 միլիոն ռուբլու ավելի արտադրանք է տրված երկրին:

Արտադրության համախառն արտադրանքի պլանը կատարելով 104 տոկոսով, ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները 1955 թվականի համեմատությամբ արտադրանքն ավելացրել են 9,4 տոկոսով, այդ թվում ծանր արդյունաբերության գծով՝ 14 տոկոսով: Զգալիորեն աճել է նաև արտադրանքի բազմատեսակությունը:

Ձեռք առած կազմակերպական-տեխնիկական միջոցառումների շնորհիվ ձեռնարկություններում սիստեմատիկորեն բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը: Ամբողջ ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության պլանը 1956 թվականի 11 ամսում կատարված է 103,3 տոկոսով, կամ թե՝ նախորդ տարվա համեմատությամբ աճը կազմում է 2,2 տոկոս:



1956 թվականին հենց միայն Պարենամթերքների արդյունաբերության մինիստրության, Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության և Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները պլանից ավելի 157 միլիոն ռուբլու արտադրանք են տվել:

Վեցերորդ հնգամյակի առաջին տարվա մեր նվաճումները ուրախություն են պատճառում ժողովրդին: Այդ նվաճումների հետագա զարգացումը կենսական պահանջ է հարուցում՝ առավել ճկուն և կատարյալ մեթոդներով վարել մեր բազմաճյուղ ժողովրդական տնտեսությունը:

Չնայած ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության աշխատանքի ընդհանուր դրական ցուցանիշներին՝ առանձին արդյունաբերական մինիստրությունների և ձեռնարկությունների աշխատանքում դեռևս լուրջ թերություններ կան: Որոշ ձեռնարկություններ դեռևս պլանները չեն կատարում:

1956 թվականի համար սահմանված պլանները չկատարող ձեռնարկությունները պետությանը և բնակչությանը 78 միլիոն ռուբլու արտադրանք պակաս են տվել: Օրինակ, Քաջարանի Պղնձամոլիբդենային կոմբինատը 1956 թվականի պլանը կատարել է 97,7 տոկոսով, չի ապահովել նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանների կատարումը: Պլանի թերակատարման հիմնական պատճառը աշխատանքի վատ կազմակերպումն է: Լավ չէ դրությունը նաև էլեկտրալամպերի գործարանում. այստեղ տարեկան պլանը կատարվել է 77,8 տոկոսով:

Անհամեմատ վատ է աշխատում ցեմենտի գործարանը, որը տարեկան պլանը կատարել է 91,1 տոկոսով: Վերջին տարիներս այս գործարանը զգալիորեն վատացրել է ցեմենտի որակը և վառելիքի ու էլեկտրաէներգիայի մեծ գերածախս է տալիս:

Չնայած բոլոր միութենական-ռեսպուբլիկական և ռեսպուբլիկական արդյունաբերության մինիստրություններն ամբողջությամբ վերցրած կատարել են համախառն արտադրանքի պլանները, այնուամենայնիվ պլանը չի կատարվում ըստ ասորտիմենտի:

Անհրաժեշտ է նշել, որ դեռևս ցածր է տեղական արդյունաբերության, թեթև, անտառային արդյունաբերության, հայարդխորհրդի ձեռնարկությունների արտադրած ժողովրդական սպառման ապրանքների որակը:

Աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը մեծ չափով որոշվում է բնակարանային պայմաններով: Պարտիան ու կառավարությունը հսկայական ուշադրություն են հատկացնում սովետական ժողովրդի բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը: 1956 թվականին Հայկական ՍՍՌ-ում հենց միայն պետական միջոցների հաշվին կառուցվել և շահագործման է հանձնվել 82 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: Բայց սա ամենևին բավական չէ աշխատավորների բնակարանային պահանջները բավարարելու համար:

Բնակարանային շինարարության լուրջ թերությունն այն է, որ լրիվ չափով չեն յուրացվում այդ նպատակին հատկացված միջոցները: 1956 թվականին բնակարանային շինարարության գծով շինարարական-մոնտաժային աշխատանքների 160 միլիոն ռուբլու պլան է եղել, այնինչ, փաստորեն կատարվել է միայն 148 միլիոն ռուբլու աշխատանք, այսինքն՝ 92,5 տոկոսով: Շինարարության անբավարար ընթացքը բացատրվում է միջոցների չափից

ավելի մանրատումով, նյութա-տեխնիկական վատ մատակարարումով և շինարարական կազմակերպությունների անբավարար աշխատանքով։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը լուրջ խնդիրներ առաջադրեց նաև բնակարանային շինարարության բնագավառում, մատնանշելով, որ անհրաժեշտ է լրացուցիչ միջոցներ հատկացնել բնակարանային շինարարության համար։

Այս հարցի նախնական ուսումնասիրությունը ցույց տվեց, որ բնակարանային շինարարության համար կարելի է շատ միջոցներ գտնել։ Այսպես, օրինակ, հենց միայն ռեսպուբլիկական մինիստրությունների և գերատեսչությունների գծով 1957 թվականի ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված միջոցներից կարելի է լրացուցիչ կերպով բնակարանային շինարարությանը հատկացնել ավելի քան 20 միլիոն ռուբլի։ Այս գումարը կարող է խնայվել կապիտալ ներդրումների պլանից. այդ միջոցների հաշվին կարելի է լրացուցիչ կերպով կառուցել մոտ 14 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Այսպիսի միջոցառումներ անհրաժեշտ է կիրառել նաև միութենական-ռեսպուբլիկական և միութենական ենթակայության օբյեկտների գծով։

Շինարարության գործում լուրջ թերություն է կառուցումների անթույլատրելի ձգձգումը, դրա հետևանքով առաջացած պետական միջոցների մանրատելը և չօգտագործելը։

Միջոցների մանրատման հետևանքով ռեսպուբլիկայում մի շարք օբյեկտների շինարարությունը ձգձգվում է նույնիսկ մի քանի հնգամյակ։ Այսպես, Արզնիի կլինիկական սանատորիան, մոտ 15 միլիոն ռուբլու արժողությամբ, կառուցվում է ավելի քան 15 տարի և շահագործման չի հանձնվում՝ չնչին պակասությունների հետևանքով։ Ջերմուկի կլինիկական սանատորիան և ջուր խմելու գալերեան կառուցվում են սկսած դեռ 1950 թվականից։

Պլենումի որոշումները նախատեսում են բարելավել կապիտալ ներդրումների ծավալը և ճշգրտել շինարարական օբյեկտների ցուցակը՝ նրանց կրրճատման իմաստով՝ առաջին հերթին ի հաշիվ նոր սկսվելիք շինարարությունների, թույլ չտալ միջոցների մանրատում բազմաթիվ շինարարական օբյեկտների վրա, նյութական ու ֆինանսական ռեսուրսները կենտրոնացնել կարևորագույն կառույցների ու օբյեկտների վրա, որը հնարավորություն կտա ժամանակին ավարտել նրանց շինարարությունը։

Փորձը ցույց է տալիս, որ ուժերը, միջոցներն ու նյութերը կարևորագույն օբյեկտների վրա կենտրոնացնելու դեպքում կարելի է մեծ արդյունքների հասնել։ Ուժերի այդպիսի կենտրոնացման օրինակ կարող է ծառայել Արզնիի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, որ իրականացվեց 3 տարվա ընթացքում, այնինչ, Սևան—Հրազդան կասկադի մյուս կայանների կառուցումը ավարտվել է յուրաքանչյուրը միջին հաշվով 8 տարում։

Անհրաժեշտ է բնակարանային շինարարության պրակտիկայից վճռականապես դուրս գցել ամեն տեսակի ավելորդությունները, ավելի լավ օգտագործել տեղական նյութերը, ընդառաջել աշխատավորների նախաձեռնությանը, որը կարագացնի բնակարանային շինարարությունը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը լուրջ թերություններ բացահայտեց պլանավորման և տնտեսության ղեկավարման գործում։ Պլենումը նշեց, որ պլանային օրգանները բավարար չափով չեն ուսումնասիրում էկոնոմիկան։ Լինում են դեպքեր, երբ պլաններում սխալներ ու թերություններ են թույլ տրվում, ձեռ-



նարկությունները չեն ապահովվում բավարար քանակությամբ հումքով, վառելիքով ու նյութեղենով, որն իր հերթին հասցնում է պլանների կատարման ձախողման, ռիթմիկ աշխատանքի խախտումների և պարապուրդների։

Պլենումը նշեց, որ այլևս չի կարելի հանդուրժել այնպիսի վնասակար պրակտիկա, երբ արդյունաբերության և շինարարության օբյեկտները մատակարարող օրգանների կողմից չեն ապահովվում անհրաժեշտ նյութերով և շինանյութերով։ Յուրաքանչյուր գործարան և շինարարական օբյեկտ պետք է այսուհետև պլանավորող և մատակարարող մարմինների կողմից ապահովված լինի իրեն անհրաժեշտ նյութերով։

Նշելով պլանավորման գործում եղած թերությունները՝ միաժամանակ անհրաժեշտ է դատապարտել առանձին տնտեսական ղեկավարների փորձերը, որոնք ուզում են ձեռնարկությունները և շինարարությունները ղեկավարելու գործում իրենց ունեցած թերությունները քողարկել պլանավորման թերություններով և ձգտում են հասնել պլանների իջեցման։

Այսպես, օրինակ, չի կարելի հանդուրժել այն, որ Թեթև արդյունաբերության մինիստրությունը 1956 թվականին 8 միլիոն ռուբլի պակաս է պլանավորել կուտակման ֆոնդը։ Նման սխալներ չպետք է կրկնվեն։

Մեր առաջնահերթ խնդիրներից մեկն էլ թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումն է։ Մինչդեռ այս բնագավառում մեր ռեսպուբլիկայում կան լուրջ թերություններ։

Պլանավորման գործում առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների լուրջ թերությունները, շատ ձեռնարկությունների և կառույցների անբավարար ղեկավարությունը դանդաղեցնում են մեր առաջընթացը։ Դրա համար էլ պլանավորման և տնտեսական ղեկավարության բարելավման հարցերը ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումում հատուկ քննարկման առարկա դարձան։ Պլենումի որոշման մեջ ասված է. «Ներկայումս պարտիան իր խնդիրը համարում է այն, որ ավելի լավ և ավելի լրիվ օգտագործվեն սոցիալիստական կարգերի, տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն համաշխարհային-պատմական առավելությունները հօգուտ ժողովրդի, հօգուտ կոմունիզմի շինարարության»։ Մեր պարտքն է մարդկանց ամբողջ ուշադրությունն ու ջանքերը ուղղել այս կարևորագույն խնդրի իրականացմանը։ Դրա համար մենք ունենք արտադրական-տեխնիկական հզոր բազա, մեծաթիվ կադրեր, որոնք կարող են ղեկավարել տնտեսությունը և տեխնիկական, տնտեսական ու գիտական բարդ խնդիրներ լուծել՝ աշխատանքի միջոցների ու նյութեղենի նվազագույն ծախսումներով։ Հարկավոր է առավելագույն չափով օգտագործել աշխատավոր մասսաների և ամենից առաջ սոցիալիստական հասարակության առաջատար ուժի՝ բանվոր դասակարգի աշխատանքային ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը անհրաժեշտ համարեց արմատապես բարելավել ՍՍՌՄ Պետտնտհանձնաժողովի աշխատանքը՝ ժողովրդական տնտեսության ընթացիկ պլանավորման ուղղությամբ և խնդիր դրեց առավել չափով ռացիոնալ ու էֆեկտիվ օգտագործել արտադրական ֆոնդերը, հումքային, աշխատանքային ու դրամական ռեսուրսները, արտադրության մեջ լայնորեն ներդնել առաջավոր գիտության ու տեխնիկայի նվաճումները։

Ելնելով տնտեսավարման լենինյան սկզբունքներից՝ պլենումը անհրաժեշտ գտավ ընդլայնել միութենական ռեսպուբլիկաների իրավունքները տըն-

տեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում: Ընդգծելով, որ անհրաժեշտ է վերացնել ավելորդ կենտրոնացումը տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ՝ պլենումը որոշեց առաջիկայում ավելի ընդարձակել միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետների, մինիստրությունների, աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների և տնտեսական ձեռնարկությունների իրավունքները: Այդ որոշումը առավել լուրջ պարտավորություններ է դնում ղեկավարների վրա, պահանջում է ավելի մեծ ինքնուրույնություն և գործիմացություն:

Պլենումը որոշեց այս տարվա առաջին կեսին ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիային ներկայացնել ի քննություն և ի հաստատություն ժողովրդական տնտեսության վեցերորդ հնգամյա պլանը՝ մի շարք ճշգրտումներով, որոնք ընդունվեցին պլենումի կողմից իբրև սոցիալիստական արդյունաբերության զարգացման անհրաժեշտ պայման:

Մեր ժողովրդի շահերը պահանջում են զարգացման բարձր տեմպեր տնտեսության բոլոր ճյուղերում: Ուստի մեր պլանները պետք է լինեն իսկապես ռեալ, բայց ո՛չ բնավ նվազեցված:

Անշեղորեն կենսագործելով դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, խստորեն գործի վերածելով սոցիալիստական պլանավորման սկզբունքները, պայքար մղելով անպլանայնության յուրաքանչյուր երևույթի դեմ՝ մենք պետք է է՛լ ավելի մեծ չափերով օգտագործենք աշխատավոր զանգվածների ստեղծարար նախաձեռնությունն ու առաջավոր փորձը:

Կենտկոմի պլենումը նշեց, որ անհրաժեշտ է բարձրացնել պրոֆմիությունների դերը ձեռնարկությունների արդֆինպլանների մշակման ու կատարման գործում, աշխատանքի, աշխատավարձի նորմավորման ու կազմակերպման հարցերում, տեխնիկայի անվտանգության և բնակարանային շինարարության հետ կապված հարցերի լուծումը բարելավելու և աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանները բարձրացնելու ուղղությամբ:

ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները պարտիական կոմիտեներին պարտավորեցնում են այսուհետև ավելի սիստեմատիկ օգնություն ցույց տալ պլանավորվող օրգաններին, ավելի քննադատորեն վերաբերվել եղած ռեալ հնարավորությունների ռացիոնալ օգտագործմանը: Պայքարելով տնտեսական-կուլտուրական շինարարության հարցերին նեղ գերատեսչական մոտեցման և բյուրոկրատիզմի երևույթների դեմ՝ պարտիական կոմիտեները պետք է միաժամանակ լուրջ ուշադրություն դարձնեն կադրերի տնտեսագիտական ուսուցման գործին:

Բարձրացնելով մասսաների քաղաքական դաստիարակության աշխատանքի մակարդակը, լիովին օգտագործելով աշխատավորների անսպառ գործարար նախաձեռնությունը՝ պարտիական կազմակերպությունները պարտավոր են քաղաքական պատշաճ բարձրության վրա դնել առաջիկայում կայանալիք տեղական Սովետների ընտրության նախապատրաստման գործը:

Իրենց գործունեության հիմքում դնելով ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումները՝ Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունները բանիմաց, անձնուրաց և ստեղծագործ աշխատանքով գործի կվերածեն Դեկտեմբերյան պլենումի դիրեկտիվները:

---

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը հսկայական ուշադրություն են հատկացնում գյուղատնտեսական արտադրության արագ զարգացման հարցերին, որը սովետական մարդու կենսամակարդակը բարձրացնելու վճռական գործոններից մեկն է:

Իրենց մտահղացմամբ համարձակ և վճռական այն քայլերը, որ ձեռնարկեց մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, կարճ ժամկետում ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնաբուծության բնագավառում տվեցին բարձր արդյունքներ: Այդ մասին պերճախոս կերպով վկայում են 1956 թվականի գյուղատնտեսական տարվա հանրագումարները, առանձնապես Ղազախստանում, ՌՍՖՍՌ-ում, Ուկրաինայում, Ուզբեկստանում և մեր անծայրածիր Հայրենիքի այլ ռեսպուբլիկաներում ու շրջաններում, որտեղ գյուղատնտեսական մթերքների՝ հացահատիկի, բամբակի, կաթի, մսի և այլնի արտադրությունն զգալիորեն ավելացավ: Դա փայլուն կերպով ապացուցում է Կոմունիստական պարտիայի քաղաքականության ճշտությունը, ապացուցում է, որ պարտիայի խոսքը գործից չի տարբերվում:

Անցած գյուղատնտեսական տարվա արդյունքները գյուղատնտեսական արտադրության զարգացման վերաբերյալ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի իմաստուն կանխագծումների և վերջին երեք տարում մեր պարտիայի Կենտկոմի ձեռնարկած կազմակերպական ու տնտեսական խոշոր միջոցառումների պրակտիկ կենսագործումն են:

Հայաստանի պարտիական, սովետական ու գյուղատնտեսական օրգանները զգալի աշխատանք են կատարել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ղեկավարումը բարելավելու ուղղությամբ և ձեռք են բերել որոշ հաջողություններ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասունների մթերատվության բարձրացման և կոլտնտեսային արտադրության վերելքի կազմակերպման գործում:

Դրա հետ մեկտեղ գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ ու բացեր, որոնք չէին կարող չանդրադառնալ ռեսպուբլիկայի կոլտնտեսային արտադրության զարգացման վրա:

Այս հոդվածում մենք խնդիր չենք դնում լուսաբանել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ձեռք բերած հաջողությունները: Մեր խնդիրն է՝ բացահայտել

կոլտնտեսությունների ղեկավարման գործում եղած թերություններն ու բացերը, որոշ ճյուղերում եղած տնտեսական ցածր ցուցանիշների պատճառները և նշել դրանց վերացման ուղիները։

Ըստ 1956 թվականի տնտեսական տարվա արդյունքների, ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն ունի հետևյալ պատկերը։

Նախնական տվյալներով գյուղատնտեսական կուլտուրաների համախառն արտադրանքը կազմում է՝ կարտոֆիլինը՝ 735.311 ցենտներ, բանջարեղենինը՝ 508.932 ցենտներ, շաքարի ճակնդեղինը՝ 760.000 ցենտներ, ծխախոտինը՝ 76.000 ցենտներ, բամբակի հումքինը՝ 28.000 տոննա, խաղողինը՝ 667.696 ցենտներ։ Նախնական տվյալներով յուրաքանչյուր հեկտարից գյուղատնտեսական կուլտուրաների միջին բերքատվությունը կազմում է՝ հացահատիկային կուլտուրաներինը՝ 7,6 ցենտներ, կարտոֆիլինը՝ 58 ցենտներ, շաքարի ճակնդեղինը՝ 192 ցենտներ, ծխախոտինը՝ 9,7 ցենտներ, բամբակինը՝ 18 ցենտներ, բանջարեղենինը՝ 98 ցենտներ, խաղողինը՝ 67 ցենտներ և մրգերինը՝ 22 ցենտներ։

Անկասկած, ընթացիկ տարվա կլիմայական աննպաստ պայմանները (վաղ ցրտահարությունն ու երաշտը) լրջորեն վնասեցին բամբակի, ծխախոտի և հացահատիկի, ինչպես և մասամբ կարտոֆիլի ցանքերին, որոնց բերքատվությունն անցյալ տարվա համեմատությամբ ցածր է։ Այնուամենայնիվ, մի շարք շրջանների, ՄՏ կայանների և կոլտնտեսությունների առանձին ղեկավարների այն վկայակոչումը, թե իբր դա է ցածր բերքի հիմնական պատճառը, բնավ էլ հիմնավորված չէ։ Մեր ռեսպուբլիկայի պայմաններում գոյություն ունեն այլ, ավելի ծանրակշիռ պատճառներ, որոնք արգելակում են գյուղատնտեսության վերելքը և որոնց վերացումը հրամայական պահանջ է մեզ համար։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կարևոր ճյուղերից մեկը, որն առաջնակարգ նշանակություն ունի, անասնաբուծությունն է։

Մարգագետինների ու արոտավայրերի առկայությունը նպաստավոր պայմաններ է ստեղծում աշխատանքի և միջոցների փոքր ծախսումով բարձր մթերատվության հասնելու համար։ Վերջին երեք տարում անասնաբուծությունը մեր կոլտնտեսություններում հաջողությամբ է զարգացել. շրջանների մեծ մասում ձեռք են բերվել զգալի արդյունքներ անասունների մթերատվության բարձրացման և ցեղայնության բարելավման գործում։ Կոլտնտեսությունների մեծ մասը սովորել է կուլտուրական ձևով վարել անասնաբուծությունը, պատրաստված են զոոտեխնիկների, անասնաբույժների, կթվորների, անասնապահների բազմաթիվ կադրեր և բարելավվել է կազմակերպական աշխատանքը։ Ամենուրեք ծավալվել է տիպային անասնապահական շենքերի և սիլոսային կառուցվածքների շինարարությունը։

Այս բոլորի հետևանքով կոլտնտեսություններում կովերի կաթի համախառն արտադրանքը 1953 թվականի համեմատությամբ 1956 թվականին ավելացել է 44 տոկոսով, բրդինը՝ 36,4 տոկոսով, ձվինը՝ 44,8 տոկոսով։ Զգալիորեն աճել է նաև մսի արտադրությունը։

Եթե անասնաբուծության ներկա վիճակը վերցնենք ըստ շրջանների, ապա կտեսնենք, որ Շահումյանի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ղուկասյանի, Սևանի, Գորիսի և շատ ուրիշ շրջաններ հասել են ավելի լավ ցուցանիշների։ Այդ շրջաններից շատերը կրկնապատկել են անասնաբուծական մթերքների ար-



տադրությունը։ Բայց, չնայած տնտեսության այդ կարևոր ճյուղի զարգացման
բնագավառում ունեցած որոշակի տեղաշարժին, ձեռք բերված արդյունքները
չեն կարող բավարարել բնակչության աճող պահանջմունքները։ Ավելին, եթե
այդ բնագավառում մենք առաջ ենք մի քանի ռեսպուբլիկաներից, բայց բա-
վական ետ ենք մնում միջին-միութենական ցուցանիշներից։
Այդ են ասում հետևյալ փաստերը։ 1956 թվականին ռեսպուբլիկայի բո-
լոր կատեգորիաների տնտեսություններում նախնական տվյալներով կթվել է
մոտ 245,5 հազար տոննա կաթ։ Եթե կաթի այդ քանակը բաժանենք ռեսպուբլի-
կայի բնակչության վրա, ապա միջին հաշվով քաղաքում և գյուղում ապրող
յուրաքանչյուր շնչին տարեկան ընկնում է 122 կիլոգրամ կաթ, այսինքն՝ օրա-
կան 355 գրամ, այն ժամանակ, երբ Սովետական Միությունում բնակչության
մեկ շնչին դեռ 1955 թվականին ընկնում էր 225 կիլոգրամ։
Անհրաժեշտ է նշել, որ դեռևս լրիվին չի լուծված բնակչությանը մսով
ապահովելու հարցը։ 1956 թվականին մսի արտադրությունը ռեսպուբլիկայում
բոլոր կատեգորիաների տնտեսությունների գծով կազմել է 28,1 հազար տոն-
նա, հետևապես, ռեսպուբլիկայի բնակչության մեկ շնչին ընկնում է 14,9 կգ.
միս. ակներև է, որ այս ուղղությամբ մեր անելիքները մեծ են։
Նույնպիսի դրություն գոյություն ունի նաև ձվի արտադրության բնագավա-
ռում։ Եթե մեր ռեսպուբլիկայում բնակչության մեկ շնչին տարեկան ընկնում է
մոտ 56 ձու, ապա Սովետական Միությունում 1955 թվականին բնակչության
մեկ շնչին ընկնում էր 95 ձու։
Այս բոլորը խոսում է այն մասին, որ մենք դեռևս չենք ապահովել հողա-
տարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց անասնաբուծական
մթերքների արտադրությունը այն ծավալով, որ սահմանված է ՍՄԿԿ Կենտկո-
մի որոշումներով։
Վեցերորդ հնգամյակի նախագծումներով Հայկական ՍՍՌ բնակչությանը
նորմալ կերպով անասնաբուծական մթերքներ մատակարարելու համար մենք
պետք է 1960 թվականին հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկ-
տարի դիմաց արտադրենք՝ կաթ 319 ցենտներ, միս 40 ցենտներ և հացահա-
տիկային կուլտուրաների յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց՝ 72,5 հազար
ձու։ Մինչդեռ, նախնական տվյալներով այժմ յուրաքանչյուր 100 հեկտարից
մենք ունենք՝ կաթ 185,7 ցենտներ, միս 25,0 ցենտներ, ձու 29,3 հազար հատ։
Համառոտակի սրանք են մեր ռեսպուբլիկայի անասնապահության արտա-
դրության վիճակի հիմնական ցուցանիշները։ Ինչպես երևում է վերը շարա-
դրածից, անհրաժեշտ է ամենալուրջ և լարված աշխատանք կատարել բնակ-
չությանը անընդհատ աճող և թեթև ու սննդի արդյունաբերությունը հումքով
ապահովելու համար։
Հայտնի է, որ ժողովրդական տնտեսության ամեն մի ճյուղի վիճակը բա-
րելավելու կամ, ինչպես մեզ մոտ ընդունված է ասել, տնտեսության մակար-
դակը բարձրացնելու համար առաջին հերթին անհրաժեշտ է բարելավել ղե-
կավարությունը, հարկավոր է մինչև վերջ օգտագործել արտադրության ռե-
զերվները, վճռական պայքար մղել կոլտնտեսություններում, սովետական
տնտեսություններում, ՄՏ կայաններում անտեսավարության բնագավառում
եղած թերությունները վերացնելու համար։
Գյուղատնտեսական կուլտուրաների մշակումը և անասնաբուծական տըն-
տեսությունը պահանջում են ամենօրյա սեռուն և հոգատար ուշադրություն։

Այդ արտադրության բազմաթիվ պրոցեսներից յուրաքանչյուրը պետք է կատարել սիրով և ագրոնոմիական ու զոոտեխնիկական գիտությունների պահանջներին համապատասխան, օգտագործելով սոցիալիստական դաշտերի և անասնաբուծության առաջավորների հարուստ փորձը։

Սակայն, այդպիսի վերաբերմունք չի նկատվում ամենուրեք, ընդհակառակը, բազմաթիվ փաստերը խոսում են այն մասին, որ դեռևս մակերեսային վերաբերմունք է ցուցաբերվում դեպի այդքան կարևոր միջոցառումները, որի հետևանքով առաջանում են կորուստներ, իջնում է բերքատվությունը և անասունների մթերատվությունը, անտեսվում են մեր հարուստ ռեզերվները և այս բոլորի հետևանքը լինում է տնտեսական ցածր էֆեկտը։

Բուսաբուծության արտադրանքը Հայաստանի գյուղատնտեսական ամբողջ արտադրության ընդհանուր ծավալի 54,5 տոկոսն է կազմում։ Սա նշանակում է, որ կոլտնտեսությունների ստացած մոտ 700 միլիոն ռուբլու դրամական եկամուտներից 385 միլիոն ռուբլին գոյանում է բուսաբուծության արդյունքների իրացումից։ Հետևապես, բուսաբուծությունը մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վճռական ճյուղերից մեկն է։ Դժբախտաբար հենց այստեղ էլ չափազանց շատ են թերությունները արտադրության կազմակերպման և գյուղատնտեսական կուլտուրաների մշակման բնագավառում։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն արդեն շատ տարիներ ցածր բերք են ստանում. օրինակ՝ հացահատիկ հեկտարից ստացվում է 8,2 ցենտներից ոչ ավելի, կարտոֆիլ՝ 62 ցենտներ, բամբակ՝ 20,5 ցենտներ, պտուղներ՝ 14,8 ցենտներ, կերաբույսեր՝ 20—25 ցենտներ։ Հասկանալի է, որ եթե հիմնական կուլտուրաների բերքատվությունը ցածր է, ապա այդ ճյուղերի եկամտաբերությունը նույնպես անբավարար է, կուտակումն էլ աննշան է։

Ոմանք տրամադիր են կարծելու, որ ցածր բերքատվությունը ինչ-որ առանձնահատուկ սորտերի բացակայության արդյունք է, մյուսները կարծում են, որ դա կլիմայական սուր փոփոխությունների արդյունք է, իսկ ոմանք էլ գտնում են, որ պլաններն անիրագործելի են և այլն։ Իհարկե, այս ամենը իրոք որ առանձին շրջաններում ու կոլտնտեսություններում որոշ չափով իրենց բացասական ազդեցությունն են թողնում տնտեսությունն արդյունավետ վարելու վրա։ Բայց փաստերը և կյանքը հերքում են այդ անհիմն փաստարկումները, որոնց նպատակն է արդարացնել իրենց վատ աշխատանքը և ամեն ինչ բարդել բնական աննպաստ պայմանների վրա։

Գլխավոր սխալն ու մոլորությունն այն է, որ կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, մեքենա-տրակտորային կայանների շատ ղեկավարներ չեն ապահովում ագրոնոմիական գիտության տարրական կանոնների կիրառումը, հարկ եղած ուշադրություն չեն դարձնում մեքենա-տրակտորային կայանների կատարած աշխատանքների ինչպես ժամկետների, այնպես էլ որակի վրա։ Մինչդեռ դա գլխավոր ու վճռական գործոնն է՝ բարձր բերք ստանալու համար։

Բազմաթիվ են այն փաստերը, երբ ՄՏ կայաններն ու կոլտնտեսությունները հողը վարում են, բայց չեն փոցխում, որի պատճառով խոշոր հողակոշտերն ու անհարթ մակերևույթը նպաստում են խոնավության արագ գոլորշիացմանը, ուստի և երաշտային գոտում աշնանացանը հաճախ չի ծլում, մասնավորապես այդ նկատվում է Աղինի, Աշտարակի, Կոտայքի, Թալինի,



մասամբ Սիսիանի, Արթիկի և ռեսպուբլիկայի մյուս շրջաններում։ Դա լուրջ սխալ է, որը մեծ վնաս է հասցնում հացահատիկային տնտեսությանը։

Հաճախակի են այն դեպքերը, երբ մի շարք բարձր լեռնային շրջաններում գարնանացանը կատարում են հունիսին, նախապես գիտենալով, որ այդ ձեռնարկումից ոչինչ չի կարելի սպասել։ Սակայն, պլանը ձևականորեն կատարելու համար շատ ՄՏ կայանների ղեկավարներ անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում և հաճախ իրենք են ստիպում կատարել այնպիսի աշխատանքներ, որոնց ապարդյունության նկատմամբ նախապես համոզված են։

Հացահատիկային տնտեսության մեջ կոլտնտեսությունների կրած հըսկայական կորուստներն առաջ են գալիս մոլախոտերից, առանձնապես խըրբուկից, որը չափազանց վնասակար մոլախոտ է և որի պատճառով մենք հաճախ մեծ տարածությունների վրա կորցնում ենք բերքի 30—35 տոկոսը։ Գիտական կազմակերպությունների տվյալներով Նոր Բայազետի շրջանի Մանիշար կոչվող հողամասերում մեկ քառակուսի մետր տարածության վրա եղել է խրբուկի 1200 հասկ, իսկ ցորենի՝ միայն 250 հասկ։ Այդ մոլախոտի դեմ պայքար չի մղվում, թեև նրա վերացման եղանակներն ու միջոցները իր տարածման շրջաններում (Սևանի ավազան, Աղին, Աշտարակ, Կոտայք, Ախտա, Սիսիան, Ազիզբեկով և մի շարք այլ շրջաններ) բոլորին հայտնի են։

Հացահատիկային տնտեսությունը պակաս կորուստներ չի կրում բերքահավաքի աշխատանքների սխալ կազմակերպումից։ Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մեծ մասում բերքահավաքի ժամանակ առաջացած կորուստները կազմում են 2,5—3 ցենտներ յուրաքանչյուր հեկտարից, որը բերքահավաքի ժամկետների երկարացման հետևանքն է։ ՄՏ կայանների ղեկավարները հաճախ կոմբայնները չեն սարքավորում հատիկորսիչներով, հասկահավաք չի կազմակերպվում, անտեսվում է բերքահավաքը մոմային հասունության ստադիայում կատարելու փորձված մեթոդը։ Առանձնապես մեծ կորուստներ են լինում Իջևանի, Նոյեմբերյանի, Բասարգեչարի, Ազիզբեկովի, Մարտունու, Սևանի, Ալավերդու, Աղինի, Արթիկի և այլ շրջաններում։

Եթե հանրագումարի բերենք վերը թվարկված պատճառներով առաջացած կորուստները, ապա կստացվի, որ մենք յուրաքանչյուր հեկտարի վրա աճեցնում ենք ոչ թե 7—8 ցենտներ հացահատիկ, այլ անհամեմատ ավելի շատ, իսկ կորուստները փաստորեն կազմում են մոտավորապես այնքան, որքան մենք ամբարում ենք։ Եթե աշխատանքում եղած այդ բոլոր թերությունները վերացնենք, մենք համարձակորեն կարող ենք ասել, որ հացահատիկի համախառն արտադրանքը 1957 թվականին կարելի է կրկնապատկել։ Իսկ այդ նշանակում է, որ կուտակումը գյուղում կավելանա ավելի քան երկու անգամ, առանձնացվող ֆուրաժային ֆոնդը կկրկնապատկվի, կունենանք փոխանցիկ ֆոնդեր և ոչ մի պատահականություն չի կարող խանգարել հացահատիկային տնտեսությունը կազմակերպված կերպով վարելուն։

Բուսաբուծության ղեկավարման բնագավառում եղած հետևյալ խոշոր թերությունը պարենային կարևոր կուլտուրայի՝ կարտոֆիլի բերքատվության նվազումն է։ Հայաստանը վաղուց ի վեր հռչակված է բարձր բերքատու և բարձրորակ կարտոֆիլով։ Ո՞ւմ հայտնի չէ Ապարանի սորտը, բայց, ցավոք սրտի, այդ սորտն այժմ չկա և դրա համար մեղավոր են թե գյուղատնտեսա-

կան օրգանների ղեկավարները, թե մեր գիտական կազմակերպությունները, որոնք լուրջ կշտամբանքի են արժանի տասնյակ տարիների մշակման ընթացքում իրենն արդարացրած սորտը կորցնելու համար։

Չխոսելով այդ արժեքավոր կուլտուրայի մշակման ագրոտեխնիկայի կանոնների պահպանման գործում եղած խոշոր թերությունների մասին, պետք է ասենք, որ շատ քիչ բան է արվում սերմնաբուծական տնտեսությունը բարելավելու ուղղությամբ։ Նույնիսկ սելեկցիոն աշխատանք չի կատարվում բարձր բերքատու Լոռու սորտի բարելավման համար, ուստի այն մեր պայմաններում կորցնում է իր սերմնային ու սորտային հատկությունները։ Եթե դրան ավելացնենք ցողունային վնասատու նեմատոդայի առկայությունը, ապա պարզ կլինի, թե ինչու ռեսպուբլիկայում հեկտարից 60 ցենտներից ավելի բերք չի ստացվում։ Մինչդեռ, ինչպես ցույց է տալիս մեր ռեսպուբլիկայի առաջավոր տնտեսությունների փորձը, մեզանում բարձր բերք ստանալու մեծ հնարավորություններ կան։ Օրինակ, Կրասնոսելսկի շրջանի Օրջոնիկիձեի անվան կոլտնտեսությունը վերջին երեք տարում ավելի քան 200 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստանում է 140—160 ցենտներ։

Կարտոֆիլը բացառիկ մեծ նշանակություն ունի որպես սննդամիջոց գյուղի ու քաղաքի բնակչության և որպես կեր անասունների համար։ Անհրաժեշտ է լրջորեն զբաղվել այդ կուլտուրայով։ Նրա մշակումն արմատապես բարելավելու հետ մեկտեղ պետք է ձեռք առնել բոլոր միջոցները՝ սերմերը նորացնելու համար։ Վնասատուներին վերացնելու նպատակով անպայման փոխել կարտոֆիլի ցանքով զբաղեցված հողերը, իսկ դրա համար հարկավոր է պահպանել կուլտուրաների հերթականությունը ցանքաշրջանառության մեջ, թույլ չտալով երկու տարուց ավելի կարտոֆիլ տնկել միևնույն հողամասում։

Խոշոր թերություններ կան բամբակենու մշակման գործում։ Տարածված բարձր բերքատու 108—Ֆ սորտը ներկայումս կազմում է ռեսպուբլիկայի բամբակի պլանտացիաների ամբողջ տարածության 82,7 տոկոսը։ Առաջավոր բամբակացան կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ որտեղ ճիշտ են կիրառում ագրոտեխնիկան, պահպանում են ցանքի ու մշակման ժամկետները, ինչպես և պարարտացման ու ոռոգման ռեժիմը, այնտեղ ստանում են 30—35 ցենտների հասնող բերք և որպես կանոն, գերակատարում են բերքատվության պլանը։ Օրինակ, ընթացիկ տարվա կլիմայական բացառիկ աննպաստ պայմաններում Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունների մեծ մասը, ճիշտ կիրառելով ագրոտեխնիկայի կանոնները, պահպանելով ցանքի խտության, ոռոգման և պարարտացման, իսկ գլխավորը՝ խոր ծիրատման ռեժիմը, ապահովեցին բամբակի բարձր բերք։ Իսկ Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների մեծ մասը կատարեց շատ խիտ ցանք, տարվեց աշնանային ոռոգմամբ և ազոտային պարարտանյութերի կիրառմամբ, արհամարհվեց խոր ծիրատումը և այդ բոլորի հետևանքով բույսերն աշնանը բուռն աճ ունեցան, վեգետացիոն շրջանը երկարացավ և կոկոնները ժամանակին չբացվեցին։ Դրա հետևանքով շրջանը թերակատարեց բամբակի հումքի հանձնման պլանը։

Բամբակացան կոլտնտեսությունները պետք է համապատասխան հետևություններ անեն ընթացիկ տարվա փորձից և ագրոտեխնիկայի առաջավոր եղանակների կիրառման միջոցով հասնեն բամբակենու արագ հասունացման .



ու կոկոնները բացվելուն, դրանով իսկ խուսափելով բամբակահումքի բերքի թերահավաքումից։

Դաշտավարությանը մեծ վնաս է հասցնում կուլտուրապես կազմակերպված սերմնաբուծական տնտեսության բացակայությունը։ Այդ հարցում մեղավոր են թե Գյուղատնտեսության մինիստրությունը, թե ՄՏ կայանները, կոլտնտեսություններն ու գիտական կազմակերպությունները, որոնք ժողովրդական տնտեսության այդ կարևոր բնագավառը թողեցին ինքնահոսի։

Սերմնաբուծական բազմաթիվ տնտեսություններ տարեցտարի չեն կատարում պետությանը հացահատիկային կուլտուրաների սորտային սերմեր հանձնելու պլանները։ Կոլտնտեսություններում սերմի համար հողամասեր առանձնացնելը կրում է ձևական բնույթ, այդ հողամասերը գտնվում են անխնամ վիճակում և չեն արդարացնում իրենց դերը, իսկ սորտային ցանքերի ապրոբացիայի կանոնները կոլտնտեսություններում սիստեմատիկաբար խախտվում են։ Մի շարք կոլտնտեսություններում շարունակվում է հացահատիկային և այլ կուլտուրաների ցանքը ոչ կոնդիցիոն սերմերով կատարելու պրակտիկան, իսկ ՄՏ կայանների ու կոլտնտեսությունների ղեկավարները այնպես են ցույց տալիս, թե իբր չեն նկատում այդ երևույթը։

Կոլտնտեսությունների կողմից բազմամյա խոտաբույսերի սերմերի հանձնման համար սահմանված առաջադրանքների վերացումից հետո խիստ կրճատվեց դրանց արտադրությունն ու վաճառքը պետությանը, մի բան, որ հասցրեց անասնաբուծության կերի բազայի վատթարացմանը։ Բավական է ասել, որ 1956 թվականին 9000 ցենտներ պլանի դիմաց գնվել է կորնգանի միայն 695 ցենտներ սերմ։ Այն փաստը, որ 1957 թվականին մեր կոլտնտեսություններում ցանքի համար պլանով պահանջվում է 46,5 հազար ցենտներ սերմ, իսկ ամբարված՝ ընդամենը միայն 14,0 հազար ցենտներ, խոսում է այդ կարևոր միջոցառման նկատմամբ ՄՏ կայանների, կոլտնտեսությունների մի շարք ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքի մասին, որը վտանգի տակ է դնում կերախոտերի ցանքի պլանի կատարումը 1957 թվականին։

Խոսելով գյուղատնտեսության ղեկավարման թերությունների մասին, չի կարելի կանգ չառնել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վճռական ճյուղերից մեկի՝ հանրային անասնաբուծության զարգացման բնագավառում եղած թերությունների վրա։

Այդ բարձր եկամտաբեր ճյուղի զարգացման համար մեր ռեսպուբլիկայում կան մեծ հնարավորություններ, և դրանց ճիշտ ու ռացիոնալ օգտագործման դեպքում անասնաբուծությունը կդառնա գյուղատնտեսության առաջատար ճյուղերից մեկը։

Բայց մի շարք շրջաններում ու կոլտնտեսություններում գոյություն ունեցող անտարբերությունը և որոշ հետամնացությունը շատ հաճախ խանգարում են անասնաբուծությունը կուլտուրական ձևով վարելուն և նվազեցնում են նրա եկամտաբերությունը։ Որո՞նք են հանրային անասնաբուծության վարման հիմնական թերությունները։

1956 թվականի հոկտեմբերի մեկի դրությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կար 100294 կով, որոնք կազմում են խոշոր եղջերավոր անասունների 27,4 տոկոսը՝ 1955 թվականի 26,9 տոկոսի դիմաց։

Անասնաբուծության ցածր ապրանքայնության հիմնական պատճառնե-

րից մեկը կովերի ցածր տեսակարար կշիռն է ընդհանուր նախրում։ Դեռ 1953 թվականին ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը որոշեց մոտակա 2—3 տարիներին կովերի տեսակարար կշիռը խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր նախրում հասցնել մինչև 40 տոկոսի։ Մինչդեռ, ինչպես երևում է բերված տվյալներից, մեզ մոտ կովերի աճը տեղի է ունենում ծայր աստիճան դանդաղ։ Որոշ շրջանների, ինչպես, օրինակ, Ախտայի, Բասարգեչարի, Ախուրյանի, Սիսիանի, Ստեփանավանի, Կրասնոսելսկի, Թալինի, Սպիտակի և այլ շրջանների առանձին ղեկավարներ, ըստ երևույթին, դրան առանձին նշանակություն չեն տալիս, ուստի և այդ շրջանների կոլտնտեսություններում կովերի տեսակարար կշիռը դանդաղ է աճում։

Վատ է դրությունը նաև հանրային անասնաբուծության վերարտադրության բնագավառում։ 100 մայր անասունի դիմաց 1956 թ. ստացվել է՝ 76 հորթ, 73 գառ և 461 խոճկոր։

Ինչպես ցույց են տալիս այս տվյալները, այդպիսի ցածր վերարտադրությունը այդքան կարևոր տնտեսաճյուղում գյուղատնտեսական օրգանների որևէ լուրջ ուշադրության բացակայության ուղղակի հետևանքն է, մի գործ, որից կախված է հանրային անասնաբուծության ապրանքայնության հետագա աճը։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ 1956 թվականին անասունների զուգավորման կամպանիայի վատ կազմակերպման պատճառով կոլտնտեսությունները անասունների միայն բարձր ստերջության հետևանքով կորցրին 13—15 հազար հորթ, 100—110 հազար գառ և ուլ, 100—120 հազար խոճկոր։

Այդ տեսակետից առանձնապես վատ աշխատեցին Ստեփանավանի, Կիրովականի, Ղուկասյանի շրջանների կոլտնտեսությունները, որոնք անցյալ տարվա համեմատությամբ իջեցրին 100 մայր անասունին ընկնող մատղաշի քանակը, մինչդեռ Էջմիածնի, Հոկտեմբերյանի և շատ ուրիշ շրջաններ խիստ ավելացրին պահպանված մատղաշների գլխաքանակը։

1956 թվականին բարձր էր անասունների անկումը, որը նախորդ տարվա համեմատությամբ նույնիսկ որոշ չափով ավելացավ։ Անասունների անկման մեծ չափերի մասին են վկայում այսպիսի տվյալները. անցած տնտեսական տարում խոշոր եղջերավոր անասունների անկումը կազմում էր 21,108 գլուխ, ոչխարների և այծերի անկումը՝ 120,057 գլուխ և խոզերինը՝ 26,392 գլուխ։ Այս փաստերը խոսում են անասնաբուժական տարրական միջոցառումների անտեսման, անասունների խնամքի միանգամայն անբավարար կազմակերպման, մատղաշի պահպանման նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքի մասին։ Առանձնապես վատ էր կազմակերպված 1956 թվականի մատղաշի խնամքն ու աճեցումը, որի մասին է խոսում նրա անկման բարձր տոկոսը։ Այսպես, 1956 թվականի առ 1 հոկտեմբերի տվյալներով հորթերի անկումը կազմում էր 9,2 տոկոս, գառների և ուլերի անկումը՝ 7,6 տոկոս և խոճկորներինը՝ 14 տոկոս։

Խոշոր եղջերավոր անասունների առանձնապես մեծ կորուստներ են եղել Ազիզբեկովի, Մարտունու, Ապարանի, Նոր Բայազետի, Կրասնոսելսկի, Կոտայքի շրջանների կոլտնտեսություններում, որտեղ անկումը կազմել է 5,5 տոկոսից մինչև 6 տոկոս։

Խոճկորների անկման հետևանքով կոլտնտեսությունները մեծ վնաս են կրել։ Նրանց անկումը Կրասնոսելսկի շրջանում կազմել է 29,5 տոկոս, Ղուկասյանի շրջանում՝ 20 տոկոս, Արթիկի շրջանում՝ 22 տոկոս, Իջևանի շրջանում՝ 19,6 տոկոս և մի շարք այլ շրջաններում, մի բան, որը կարող է հասցնել խոզաբուծական ֆերմաների լիկվիդացմանը, թեև մսի արտադրության ավելացման գլխավոր աղբյուրներից մեկը խոզաբուծությունն է։



Մանր եղջերավոր անասունների զգալի անկում են թույլ տվել Կիրովականի, Ալավերդու, Աշտարակի, Արթիկի և մյուս շրջանների կոլտնտեսությունները, որտեղ անկումը հասնում է 8-ից մինչև 12 տոկոսի։

Խոշոր թերություններ կան հանրային անասունները կերով ապահովելու գործում։ Այդ թերությունների վերացումը անասնաբուծության զարգացման պայմանն է։ Մինչդեռ, ինչպես հայտնի է, անասունների համար բավարար քանակությամբ կերի բացակայությունը բացասաբար է անդրադառնում ինչպես մթերատվության բարձրացման, այնպես էլ գլխաքանակի պահպանման վրա։ Եթե հաշվի առնենք, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում հանրային անասնաբուծության կերի տարեկան բալանսում խզումը կազմում է 100—120 հազար տոննա կերային միավոր, ապա պարզ կդառնա անասնաբուծությանն սպառնացող վտանգը, եթե միջոցներ ձեռք չառնվեն բնական կերային տարածությունների բերքատվությունը բարձրացնելու և ընդհանրապես կերի արտադրությունն ընդլայնելու համար։ Ցավոք սրտի, երբ խոսքը վերաբերում է ժողովրդա-տնտեսական պլանները կազմելուն ու հաստատելուն, ապա ինչպես շրջանային, այնպես էլ ռեսպուբլիկական կազմակերպությունները շատ հաճախ շրջանցում են այդ կարևոր բնագավառը, դրանով իսկ շարունակ հետաձգում են անասուններին բավականաչափ կերով ապահովելու պրոբլեմի լուծումը։ Եթե դրան ավելացնենք նաև այն, որ առանց պատշաճ խնամքի բնական կերային տարածությունների երկարատև շահագործումից իջնում է մթերատվությունը, ապա պարզ կլինի կերի պրոբլեմը լուծելու համար շտապ միջոցներ ձեռնարկելու անհրաժեշտությունը։

Չէ որ գաղտնիք չէ, որ ռեսպուբլիկայի նախալեռնային չորային մի շարք շրջաններ, օրինակ՝ Կոտայքի, Աշտարակի, Ազիզբեկովի, Թալինի, Աղինի շրջանները, Սիսիանի, Շամշադինի, Նոյեմբերյանի շրջանների կոլտնտեսությունների մի մասը չեն ապահովում անհրաժեշտ քանակությամբ կերի կուտակումը, որի հետևանքն են անասունների ցածր մթերատվությունը և համեմատաբար մեծ կորուստները։

Վերջին տարիներս որոշ աշխատանք է կատարված անասունների ցեղը բարելավելու ուղղությամբ, բայց առատ կերի բացակայության պատճառով տվյալ անասունը չի կարող հանդես բերել իր ցեղային հատկությունները և հաճախ ոչնչով չի տարբերվում տեղական անասուններից։

Երբեմն անպատասխանատվության սահմանակցվող անտարբերություն գոյություն ունի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում թռչնաբուծության զարգացման գործի նկատմամբ։ Պետք է ուղղակի ասել, որ գյուղատնտեսության մեջ չկա ոչ մի ճյուղ, որն այնպես անտեսվեր, ինչպես այդ ճյուղը։ Այն բազմաթիվ ֆերմաները, որ կազմակերպվել են վերջին տարիներս, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մեծ մասում տալիս են աննշան եկամուտ, իսկ մեծ մասամբ դեֆիցիտային են, որովհետև ոչ ոք, ինչպես հարկն է, չի զբաղվում այդ ճյուղով։

Ուշադրության բացակայությունը դեպի անասնաբուծության այդ բարձր եկամտաբեր և այնքան անհրաժեշտ ճյուղը հասցրեց այն բանին, որ կոլտնտեսությունների ճնշող մեծամասնությունում եղած թռչնաբուծական ֆեր-

մաները գանձած են ու ոչ եկամտաբեր: Ռեսպուբլիկայում թռչունների քանակը մեկ ֆերմայում միջին հաշվով կազմում է 240 գլուխ, 42 կոլտնտեսություններ ընդհանրապես թռչնաբուծական ֆերմաներ չունեն: Ըստ երևույթին, այդ կոլտնտեսությունների ղեկավարներն իրենց արժանապատվությունից ցածր են համարում զբաղվել այդքան «չնչին», «մանր» գործերով: Օրինակ, Բասարգեչարի շրջանի Տաշքենդ գյուղի «Կրմզի ռանչպար» կոլտնտեսությունը շատ տարիներ է, որ զբաղվում է թռչնաբուծությամբ, բայց ստանում է չնչին եկամուտ և այդ այն պատճառով, որ ֆերմայում կա 32 ածան հավ, որոնցից յուրաքանչյուրի միջին ձվատվությունը կազմում է ընդամենը 17 հատ, մինչդեռ ֆերմայի վրա ծախսվել է 340 աշխօր, կամ յուրաքանչյուր աշխօրի դիմաց ստացվել է մոտ 2 ձու: Եթե հաշվի առնենք մեկ աշխօրի արժեքը կոլտնտեսությունում, ապա կստացվի, որ մեկ ձվի արժեքը կազմել է մոտ 6 ռուբլի: Իսկ այդ կոլտնտեսության նախագահ ընկ. Մ. Շարամովը գտնում է, որ իրենց կոլտնտեսությունում ֆերմա կա և այն եկամուտ է բերում:

Այդպիսի ղեկավարներին, ըստ երևույթին, հասկանալի չէ թռչնաբուծության զարգացման այն կարևոր նշանակությունը, որ այդ գործին տալիս են պարտիան ու կառավարությունը, իսկ նրանք, ովքեր ընդունակ չեն հասկանալ այդ հասարակ ճշմարտությունը, ղեկավարներ չեն կարող լինել: Հարկավոր է վերացնել թռչնաբուծության զարգացման գործում եղած անպատասխանատվությունը, հարկավոր է կոլտնտեսություններում ստեղծել խոշոր ֆերմաներ՝ 3000—5000 գլուխ ածան հավով, այդ ֆերմաների գլուխ կանգնեցնել ընդունակ և բարեխիղճ աշխատողների, կարգավորել հաշվառումն ու հաշվետվությունը ֆերմաներում, սիստեմատիկորեն վերահսկել ֆերմաներում կատարվող աշխատանքը և կարճ ժամկետում ապահովել թռչնաբուծական խոշոր, եկամտաբեր ֆերմաների կազմակերպումը: Չպետք է մոռանալ, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մսի արտադրության բալանսում հավի միս, ցավոք սրտի, գրեթե չի երևում:

Այս դառը և տհաճ փաստը պետք է անհանգստացնի պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների շատ ղեկավարների:

Մեր ռեսպուբլիկայում կան նաև լավ ֆերմաներ՝ մինչև 2000 գլխաքանակով, որտեղ մեկ հավի միջին ձվաբերությունը կազմում է 85—110 ձու, օրինակ՝ Շամշադինի շրջանի Ղրղի գյուղի, Էջմիածնի շրջանի Աղավնատան գյուղի և շատ ուրիշ գյուղերի կոլտնտեսությունների ֆերմաները:

Կոլտնտեսություններում է՛լ ավելի վատ է դրությունը մեղվաբուծության զարգացման բնագավառում: Այստեղ կատարվող միանգամայն անբավարար աշխատանքի մասին են խոսում բազմաթիվ փաստեր: Այսպես, Ստեփանավանի շրջանի Կույբիշև գյուղի կոլտնտեսությունը, որը բավական քանակությամբ մեղվի ընտանիքներ ունի, 1955 թվականին մեկ կիլոգրամ մեղրի ստացման համար ծախսել է 375 ռուբլի:

Անհրաժեշտ է մամուլում լայնորեն պրոպագանդել առաջավոր ֆերմաների աշխատանքի փորձը: Այդ տեսակետից լուրջ թերություններ կան ռեսպուբլիկական թերթերի աշխատանքում. նրանք անբավարար են լուսաբանում թռչնաբուծության ու մեղվաբուծության նշանակության և առաջավոր կոլտնտեսությունների փորձը: Վաղուց ժամանակն է, որ կոլտնտեսությունները կազմակերպեն կենդանի թռչունի, ձվի ու մեղրի վաճառքը՝ քաղաքի բնակչության կարիքները բավարարելու համար:



Սրանք են գյուղատնտեսության ղեկավարման գործում եղած էական թերությունները: Սխալների ու բացերի մեծ մասի վերացումը պետական հատուկ միջոցառումներ չի պահանջում և ամբողջապես կախված է հենց իրենցից՝ ղեկավարներից, աշխատանքի տվյալ բնագավառի համար պատասխանատու մարդկանցից, մի բան, որ ապացուցված է շատ կազմակերպությունների ու տնտեսությունների պրակտիկայով:

Եվ դա իրոք որ այդպես է: Եթե կոլտնտեսությունում բրիգադավարից, ֆերմայի վարիչից սկսած մինչև մասնագետներն ու վարչությունը, կադրերը ճիշտ են դասավորված, ապա, անտարակույս, նման երևույթներ տվյալ տնտեսությունում որպես կանոն մենք չենք նկատում: Դրա հետ մեկտեղ մեր բոլոր տնտեսություններում չէ, որ գործն այդ դրության մեջ է: Գյուղատնտեսական արտադրության մեջ դեռ շատ աշխատողներ կան, որոնք խոր չեն թափանցում տնտեսության հարցերում, աշխատում են մակերեսորեն, անսիստեմ, անտեսում են գյուղատնտեսական գիտության նվաճումները և առաջավոր փորձը: Իսկ շրջանային ու սկզբնական պարտկազմակերպությունները չեն կազմակերպում ու վերահսկում նրանց աշխատանքը, նրանցից չեն պահանջում կիրառել ագրոնոմիական ու զոոտեխնիկական միջոցառումներ աշխատանքի յուրաքանչյուր առանձին բնագավառում:

Բանն այնտեղ է հասնում, որ ղեկավարներն ու մասնագետները, որոնք կոչված են պայքարելու գյուղատնտեսության վերելքի համար, որոնցից շատ բանով կախված է տնտեսական գործունեության հաջողությունը, հաճախ իրենք են խախտում ագրոզոոտեխնիկական հիմնական միջոցառումները և երբեմն անպատիժ են մնում:

Վերևում մենք խոսեցինք այն մասին, որ ամենուրեք վարը կատարում են առանց հետագա փոցխման, օրինակներ բերեցինք, որ հաճախ խախտվում են հացահատիկային կուլտուրաների ցանքի ժամկետները, չեն պահպանվում բամբակի ցանքի, պարարտացման և ծիրատման ագրոտեխնիկական ժամկետներն ու նորմաները, որ սերմնաբուծական տնտեսությունը բարձիթող է արված, հսկայական մասսիվներ ծածկված են խոփուկով, որ, վերջապես, բերքահավաքի ժամանակ կորուստները հասնում են հսկայական չափերի:

Սակայն այդ խախտումների համար քիչ պատասխանատվություն չեն կրում ՄՏ կայանները, որոնք կատարում են գյուղատնտեսական բոլոր աշխատանքների 70—80 տոկոսը, հանդիսանում են կոլտնտեսային արտադրության կազմակերպիչները, անմիջականորեն պատասխանատու են կոլտնտեսության գործերի վիճակի համար: Օրինակ, Սիսիանի շրջանի Անգեղակոթի ՄՏ կայանը (դիրեկտոր՝ ընկ. Տիրոյան), Աշտարակի ՄՏ կայանը (դիրեկտոր՝ ընկ. Մինասյան) բոլոր հնարավորություններն ունեին կոլտնտեսությունների հետ կնքված պայմանագրային պարտավորությունները և աշխատանքային պլանները կատարելու ու գերակատարելու համար, սակայն, տեխնիկայի վատ օգտագործման, տրակտորների ցածր արտադրողականության, ինչպես և թույլ ղեկավարության հետևանքով 1956 թվականին հիմնական գյուղատնտեսական աշխատանքները թերակատարեցին:

Չի կարելի մոռանալ, թե որքան մեծ է ՄՏ կայանի դերն ու պատասխանատվությունը գյուղատնտեսական արտադրությունը ղեկավարելու գործում: Պետությունը նրանց տրամադրության տակ է դրել հարուստ տեխնիկա, մասնագետներ և տվել մեծ իրավունքներ: Միայն անճարակ ղեկավարները ի վի-

ճակի չեն արտադրությունը կազմակերպել ժամանակի պահանջների համաձայն, բայց, ցավոք սրտի, այդպիսիք մեզանում դեռ կան:

Շատ ՄՏ կայանների, շրջանային կազմակերպությունների ղեկավարներ և մասնագետներ մոռացություն են տվել այն ճշմարտությունը, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման հիմնական ու վճռական միջոցը առանձին շրջանների պայմաններին համապատասխան մշակված ժամանակակից առաջավոր ագրոտեխնիկայի կանոնների պահպանումն ու անշեղ կիրառումն է և խստագույն պայքարը կորուստների դեմ: Միայն այդ ճանապարհով կարելի է ամրապնդել հանրային տնտեսությունը և բարձրացնել կոլտնտեսությունների էկոնոմիկան: Պետք է վերջ տալ այն սխալ ըմբռնմանը, թե իբր մեր ռեսպուբլիկայի պայմաններում հացահատիկային տնտեսությունը չի կարող լավ արդյունքներ տալ: Այլապես ինչո՞վ բացատրել այն փաստը, որ կոլտնտեսությունների ու շրջանների որոշ ղեկավարներ, ուղղելով անցյալում թույլ տված սխալները, այժմ էլ շարունակում են անհիմն կերպով կրճատել հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները, իսկ բերքատվությունը մնում է նույն մակարդակի վրա:

Պլանավորման նոր կարգը գյուղատնտեսության մեջ լայն հնարավորություններ տվեց կոլտնտեսություններին՝ եղած ռեսուրսներն ավելի ռացիոնալ ու լրիվ օգտագործելու համար և դա տվեց իր դրական արդյունքները: Սակայն կոլտնտեսությունների մի շարք անփույթ ղեկավարներ տեղերում խեղաթյուրում են այդ կարևոր միջոցառումը, թույլ են տալիս կոպիտ սխալներ:

Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, թե ինչպես մի շարք կոլտնտեսություններում սխալ են պլանավորում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, անասունների գլխաքանակի աճը, սահմանում են նախընթաց տարիների փաստական արտադրանքից ավելի ցածր պարտավորություններ, որը չի խթանում գյուղատնտեսության զարգացմանը: Օրինակ, Սպիտակի շրջանի կոլտնտեսությունները դեռ 1955 թվականին ստացել են 29.925 տոննա շաքարի ճակնդեղ, իսկ 1957 թվականի պլաններով նախատեսել են ստանալ 29.200 տոննա, մինչդեռ դիրեկտիվ օրգանների որոշումով պարտավոր են 1957 թվականին հանձնել 29.900 տոննա շաքարի ճակնդեղ:

Սևանի շրջանի կոլտնտեսություններում 1956 թվականին ֆուրաժային մեկ կովից ստացվել է 1.574 կգ. կաթ, իսկ 1957 թվականի պլաններով նախատեսված է ստանալ 1530 կիլոգրամ, այսինքն՝ 1956 թվականին փաստորեն ստացվածից 44 կգ. պակաս: Այդպիսի օրինակները եզակի չեն:

Չնայած հանրային անասնաբուծության ասպարեզում կատարված որոշ դրական աշխատանքին, որը վերջին երեք տարվա ընթացքում որոշակի արդյունքներ տվեց, պարտիայի մի քանի շրջկոմներ, շրջսովետների գործկոմներ և ՄՏ կայանների դիրեկտորներ 1956 թվականին թուլացրին իրենց աշխատանքն այդ բնագավառում: Այլապես ինչո՞վ բացատրել այն, որ Ազիզբեկովի, Ապարանի, Արթիկի, Ղուկասյանի, Մարտունու, Նոր Բայազետի և Թումանյանի շրջանների կոլտնտեսությունները անցյալ տնտեսական տարվա համեմատությամբ ավելացնելու փոխարեն իջեցրել են մեկ ֆուրաժային կովից ստացվող կաթի քանակը, իսկ Շահումյանի, Ստեփանավանի և Կիրովականի շրջանների կոլտնտեսությունները գրեթե աճ չեն տվել:

Անասնաբուծության վերելքի տեմպերի թուլացման մասին են վկայում նաև մի շարք այլ փաստեր, որոնք բացառիկ կարևոր նշանակություն ունե-



անասնաբուծության զարգացման համար: Անթույլատրելի է այն, որ 1956 թվականին 100 մայր ոչխարին ընկնող գառների պահպանված քանակը ավելի քիչ է, քան նախորդ տարում:

Պահպանված մատղաշի քանակն առանձնապես իջեցրել են Ալավերդու, Ապարանի, Բասարգեչարի, Վեդու և Կիրովականի շրջանների կոլտնտեսությունները, որոնք 100 մայր ոչխարից ստացել են 63—68 գառ, որը բացահայտ թերացում է այդ շրջանների կազմակերպությունների աշխատանքում:

Այսպես, օրինակ, Ապարանի, Շամշադինի, Նոյեմբերյանի, Ախուրյանի շրջանների կոլտնտեսություններում շարունակվում է պահպանվել վաղուց մերժված և տնտեսապես իրեն չարդարացրած անասունների ազատ զուգավորման մեթոդը, որի հետևանքով թանկարժեք արտադրող ցուլերը պատշաճ արդյունք չեն տալիս: Գրեթե յուրաքանչյուր կոլտնտեսությունում, մասնագետների առկայության պայմաններում, անասունների զուգավորման այդ մեթոդը խոսում է այն մասին, որ մասնագետները հաճախ չեն հանդիսանում զոոտեխնիկայի առաջավոր մեթոդների կիրառողները:

Հարկավոր է ուղղել նաև թռչնաբուծության և մեղվաբուծության զարգացման գործում թույլ տված սխալները, հատուկ ուշադրություն դարձնելով խոշոր ֆերմաների կազմակերպման վրա, ապահովելով բարձր մթերատվություն, մանավանդ, որ այդ ճյուղերը մեծ կապիտալ ներդրումներ և աշխատանքի ծախսում չեն պահանջում:

Լուրջ ուշադրության է արժանի անասնաբուծության ճյուղերի տեղաբաշխման և զարգացման հարցը՝ ելնելով յուրաքանչյուր շրջանի և կոլտնտեսության տնտեսական ու բնական կոնկրետ պայմաններից, քանի որ անասնաբուծության ճիշտ մասնագիտացումը միայն կարող է ապահովել բարձր ապրանքայնություն և բնական պայմանների առավելագույն օգտագործում՝ անասնաբուծությունն ինտենսիվ կերպով վարելու համար:

Գործի շահերը պահանջում են, որ ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետին կից Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը և գյուղատնտեսական գիտահետազոտական հաստատությունները մոտիկից զբաղվեն այդ պրոբլեմով և որքան կարելի է կարճ ժամկետում լուծեն այն:

Վերը նշված թերությունները, բացերն ու սխալները զգալիորեն ավելի քիչ կլինեին, եթե մեքենա-տրակտորային կայանների, կոլտնտեսությունների ու գյուղատնտեսական գիտա-հետազոտական հաստատությունների և ռեսպուբլիկական կազմակերպությունների ղեկավարները ավելի խոր թափանցեին գյուղատնտեսական արտադրության հարցերում: Նրանք կոչված են վերահսկելու և ուղղություն տալու գյուղատնտեսության ողջ արտադրությանը, ձգտելով հասնել գյուղատնտեսական կուլտուրաների կայուն բերքի և հանրային անասնաբուծության մթերատվության բարձրացման:

Այս տեսակետից լուրջ քննադատության է արժանի մեր ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրությունը, որի աշխատանքում շատ թերություններ կան:

Ունենալով մեծ իրավունքներ, բազմաքանակ ապարատ և նյութա-տեխնիկական բազա, Մինիստրությունը միշտ չէ, որ իր օպերատիվ միջամտությամբ լուծում է գյուղատնտեսական արտադրության այս կամ այն չլուծված հարցը, դրանով իսկ խորացնում է գոյություն ունեցող խախտումները, որ մասնավորապես թույլ են տալիս ՄՏ կայանների որոշ ղեկավարներ, որոնք ոչ միայն

չեն նպաստում կոլտնտեսային արտադրության վերելքին, այլև իջեցնում են այդ արտադրության մակարդակը։ Մենք նկատի ունենք կատարվող աշխատանքների որակի և նրանց ժամկետների բազմաթիվ խախտումները, որոնք անուղղելի վնաս են հասցնում կոլտնտեսություններին։ Մինիստրության թերացումն այն է, որ նրա ապարատը պատշաճ կերպով ձեռնամուխ չի լինում գյուղատնտեսական աշխատանքների որակի բարելավմանը, որ շատ ՄՏ կայանների աշխատողներ իրենց պատասխանատու չեն համարում կոլտնտեսությունների վիճակի համար և մեծ մասամբ ընկնում են տրակտորային աշխատանքների փափուկ վարի վերածած պլանի կատարման հետևից։ Մինիստրությունը և նրա ՄՏ կայանների Գլխավոր վարչությունը պետք է վճռականորեն պայքարեն այս չարիքի դեմ և ՄՏ կայանների շատ դիրեկտորների հասկացնեն, որ իրենց սպասարկած կոլտնտեսությունները երբ սիստեմատիկորեն չեն կատարում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման առաջադրանքը, իրենք են պատասխանատու։ Հարկավոր է, որ ՄՏ կայանների Գլխավոր վարչության աշխատողները տեղերում խստորեն վերահսկեն մեքենաների աշխատանքը և վատորակ գործի յուրաքանչյուր փաստի ու նրա հեղինակների շուրջը ստեղծեն հասարակական կարծիք։

Մեծ խնդիրներ են ծառացած մինիստրության ապարատի առջև. ռեսպուբլիկայի բնա-տնտեսական տարբեր պայմանները գյուղատնտեսության մասնագետներին, գիտական կազմակերպություններին թելադրում են վերակառուցել իրենց աշխատանքը, գտնել կոլտնտեսային արտադրության մակարդակի բարձրացման և կայուն բերքի ստացման նոր ուղիներ։

Գյուղատնտեսական գիտա-հետազոտական հաստատություններից պահանջվում է պլանաչափ, նպատակասլաց աշխատանք տանել սելեկցիայի, առանձին զոնաների համար վաղահաս ցրտադիմացկուն ու չորադիմացկուն սորտեր ստանալու, ագրոտեխնիկայի բարելավման և կուլտուրական սերմնաբուծական տնտեսությունների ստեղծմանն օժանդակելու ուղղությամբ։

Գյուղատնտեսական արտադրության վերելքի համար կատարվող այս ամբողջ շնորհակալ աշխատանքում մեծ խնդիրներ են ծառացած պարտիայի շրջկոմների ու սկզբնական պարտկազմակերպությունների առջև։ Պետք է ընդունել, որ նրանց աշխատանքում ևս կան շատ թերություններ ու բացեր և ամենից առաջ այն, որ կենդանի կազմակերպական աշխատանքը, կենդանի կապը գյուղի կոմունիստների հետ շատ հաճախ վերածվում է նիստերի և պարադային շրջագայությունների։

Անհրաժեշտ է ակտիվացնել գյուղական պարտկազմակերպությունների գործունեությունը, անհրաժեշտ է, որ այդ կազմակերպությունները կանգնած լինեն այսօրվա խնդիրների մակարդակին, հարկավոր է նրանց ողջ գործունեությունը ենթարկել գլխավոր խնդրի լուծմանը՝ գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծմանը։

Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները, իրենց գործունեության հիմքում դնելով ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի հունվարին հրապարակած դիմումի ծրագրային դրույթները, ուժերի և միջոցների նոր մոբիլիզացմամբ կապահովեն գյուղատնտեսության շեշտակի վերելքը։ Այս է գլխավոր խնդիրը։

---

# ՍՍՌՄ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ԳԻՏԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Ն. ՍԻՍԱԿՅԱՆ

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա
պլանի վերաբերյալ պարտիայի տված Դիրեկտիվներում իրենց բազմակող-
մանի արտացոլումն են գտել գիտության նվաճումները՝ արտադրության
տարբեր ճյուղերում իրենց կոնկրետ կիրառման տեսակետից։ Եվ դա միան-
գամայն օրինաչափ է, քանի որ մեր դարում աշխատանքի արտադրողակա-
նության, ժողովրդական տնտեսության և աշխատավորության բարեկեցու-
թյան բարձրացման բնագավառում կատարած ամեն մի քայլը ուղղակի կամ
անուղղակի առնչված է գիտական նոր հայտնագործությունների հետ։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ պրոգրեսը կարող է
հենվել միայն նոր տեխնիկա ստեղծելու, հինը մշտապես նորով փոխարինե-
լու, այսինքն՝ անընդհատ տեխնիկական կատարելագործումների և տեխնի-
կայի բոլոր բնագավառներում եղած արմատական կատարելագործումների
վրա։ Մեր օրերում նոր տեխնիկայի առաջընթացի համար հենարան կարող է
ծառայել միայն գիտության հզոր պրոգրեսը։

Նոր տեխնիկայի պատվանդանը ստեղծվում է գիտական հետազոտու-
թյուններով, սկսած բնության այն ամենախոր օրենքների հայտնագործումով,
որոնք որոշում են ատոմային միջուկների, կենդանի նյութի ստրուկտուրան,
ժառանգականության բնույթը, ինչպես նաև գործարանային լաբորատորիա-
ներում նոր տիպի մեքենաների և նոր շինանյութերի փորձարկումով, փորձա-
կայաններում սերմերի նոր սորտերի, կոլտնտեսային ֆերմաներում անասուն-
ների նոր ցեղերի զարգացմամբ։

Ատոմային դարը ծնունդ է առել գիտնականների լաբորատորիաներում,
այնտեղ են ծնվել նաև ռեակտիվ ավիացիան, արագ գործող էլեկտրոնային
հաշվիչ մեքենաները, նավթային հումքից ստացվող նոր նյութերը՝ հագուս-
տեղենի համար և ուրիշ շատ բաներ, որոնք արմատապես փոխում են մար-
դու կյանքի ու աշխատանքի պայմանները։

Մեր ժողովրդական տնտեսության պլանային սիստեմի շնորհիվ Սովե-
տական պետության մեջ բարենպաստ պայմաններ են ստեղծված գիտության
այնպիսի զարգացման համար, որն ապահովում է նոր տեխնիկայի ստեղծ-
ման ամենակարճ ուղին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Նոր հնգամյա պլանը առանձնահատուկ ուշադրություն է նվիրում գի-
տական հետազոտությունների հետագա ծավալմանը մեր երկրում։ Ատոմա-

յին էներգիայի կիրառումը խաղաղ նպատակներով, արտադրական պրո-
ցեսների ավտոմատացումը, հաշվիչ մեքենաների ու կիսահաղորդիչ էլեմենտ-
ների արտադրության ընդլայնումը, նոր, շատ ավելի պրոգրեսիվ տեխնո-
լոգիական պրոցեսների արմատավորումը, այս ամենը ամենասերտ կերպով
կապված են սովետական գիտնականների աշխատանքների արդյունքների
հետ: ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները. բնորոշելով արտադրության
զարգացման ուղիները, միաժամանակ գիտնականներին ցույց են տալիս այն
ուղղությունները, որոնցով պետք է ընթանա գիտության առավելագույն զար-
գացումը: Կոմունիստական պարտիան սովետական գիտնականների առջև դրել
է հետևյալ խնդիրները.

«Ամեն կերպ զարգացնել գիտությունը: Ընդլայնելով գիտելիքների բոլոր
բնագավառներում տեսական հետազոտությունները՝ բարձրացնել գիտական
հիմնարկների դերը արտադրության տեխնիկական պրոգրեսի և կազմակերպ-
ման գործում: Գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքը վերակա-
ռուցել՝ նրանց գործունեությունը տնտեսության կոնկրետ կարիքներին ավելի
մեծ չափով մոտեցնելու իմաստով: Ապահովել հայրենական ու արտասահ-
մանյան գիտության և տեխնիկայի նվաճումների առավելագույն օգտագործու-
մը կոնստրուկտորական և նախագծային կազմակերպությունների կողմից:

Գիտնականների ջանքերը և գիտա-հետազոտական հիմնարկների նյու-
թական ռեսուրսները կենտրոնացնել առաջին հերթին ժողովրդատնտեսական
կարևոր նշանակություն ունեցող գիտական պրոբլեմների մշակման վրա,
ձգտելով, որ արագ կերպով մինչև վերջ հասցվեն գիտական հետազոտություն-
ները և աշխատանքների արդյունքների ներդրումը ժողովրդական տնտեսու-
թյան մեջ»:

Այս է պարտիայի և ժողովրդի կողմից սովետական գիտնականներին
տված սոցիալական պատվերը վեցերորդ հնգամյակի համար: Այդ պատվերը
որքան կարելի է լավ և լրիվ կատարելու համար մենք պետք է հանգամանո-
րեն և ինքնաքննադատաբար վերանայենք մեր ամբողջ գործունեությունը,
հայտնաբերենք թույլ օղակները, ամրապնդենք դրանք և գտնենք մեր առջև
ծառացած հիրավի հոյակապ խնդիրների լուծման ամենից ավելի կարճ ու
ռացիոնալ ուղիները:

Մի հոդվածում ոչ միայն հնարավոր չէ լուսաբանել, այլև դժվար է նույն-
իսկ նշել այն բազմաթիվ պրոբլեմները, որոնք ծագել են ՍՍՌՄ Գիտություն-
ների ակադեմիայի առջև պարտիայի XX համագումարի որոշումների կա-
պակցությամբ: Ուստի կանգ առնենք միայն բնական ու տեխնիկական գի-
տությունների զարգացման այն մի քանի վճռական ուղղությունների վրա,
որոնք իրենց արտացոլումն են գտել մեր Ակադեմիայի պլաններում:

Պարտիայի դիրեկտիվները մեզ կոչ են անում ամենից առաջ ընդլայնել
տեսական հետազոտությունները բոլոր բնագավառներում: Գիտության օգ-
նությամբ մեր արդյունաբերությունը լայնորեն օգտագործել է նաև արտասահ-
մանյան գիտության ու տեխնիկայի փորձը: Այդ կարվի առաջիկայում ևս:
Սակայն, նկատի ունենալով այն հանգամանքը, որ մեր գիտությունը և տեխ-
նիկան կանգնելու են առաջին դիրքերում, մենք «հասնելու» և «անցնելու»
խնդիրը հաջողությամբ կատարելու հետ մեկտեղ ավելի ու ավելի քիչ բան
կվերցնենք օտար փորձից և ավելի ու ավելի մեծ չափով կօգտագործենք մեր
կուտակած գիտական հարուստ պաշարը: Անհրաժեշտ է շեշտակի ավելացնել



մեր գիտական կուտակած փորձի տեսակարար կշիռը, այսինքն՝ ավելի ծա-
վալել գիտական հետախուզությունները դեռևս չուսումնասիրված մարզերում
և մեր հեռանկարային գիտական աշխատանքում, նպատակ ունենալով բա-
ցահայտել նոր երևույթներ, սահմանել նոր կապեր, մշակել նոր գիտական
մեթոդներ, նշել գիտության զարգացման առավել բեղմնավոր մարզերը և ուղ-
ղությունները: Գիտության պատմությունը ցույց է տալիս, որ բնական գի-
տությունների բնագավառում զարգացումն առանձնապես բուռն թափ է ընդու-
նում գիտության տարբեր ճյուղերի շփման եզրերում: Այդ իսկ պատճառով
վերջերս առանձնապես բուռն կերպով զարգանում են համեզր գիտություն-
ները, ինչպիսիք են, օրինակ՝ քիմիական ֆիզիկան, ֆիզիկական քիմիան, գեո-
քիմիան, բիոքիմիան, բիոգեոքիմիան, բիոֆիզիկան, ռադիոքիմիան, ռա-
դիոաստղագիտությունը և այլն: Մի գիտության մեթոդները արգասավորում են
մյուս գիտությունը: Ուստի ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի պլաննե-
րում առանձնահատուկ ուշադրություն է հատկացվում գիտության սահմանա-
կից նոր մարզերի զարգացման վրա:

Դեպի տեխնիկայի դեռ չհետազոտված ապագան տանող ուղին պետք է
լուսավորվի թեորիայի կողմից: Դա, հարկավ, առաջնահերթ ու հատուկ նշա-
նակություն ունի Գիտությունների ակադեմիայի համար: Վեցերորդ հնգամյա-
կում պետք է նշանակալի չափով ավելացվի տեսական հետազոտությունների
տեսակարար կշիռը ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում:

Սակայն, տեսական հետազոտությունների ծավալման կոչը ոչ մի դեպքում
չպետք է հակադրվի այն դրույթին, որ գիտությունը բոլոր ասպեկտներով էլ
պետք է մոտեցվի ժողովրդական տնտեսության կոնկրետ կարիքներին: Ընդ-
հակառակը, կատարելով պարտիայի XX համագումարի Դիրեկտիվները, տեսա-
կան հետազոտություններին զուգընթաց մենք պետք է ավելի մոտիկից բավարա-
րենք ժողովրդական տնտեսության պահանջները: Զուր չէ, որ Դիրեկտիվների
առաջադրած կարևոր խնդիրներից մեկը ատոմային էներգիան խաղաղ նպա-
տակներով լայնորեն օգտագործելու խնդիրն է: Այդ ցույց է տալիս այն պրոբ-
լեմների մասշտաբն ու հոյակապ հեռանկարը, որոնց լուծմանը համարձակո-
րեն ձեռնամուխ է լինում գիտությունը և որոնք թեորիան զուգորդում են ժո-
ղովրդական տնտեսության ամենախոշոր պրակտիկ խնդիրների հետ:

Պարտիայի XX համագումարը որոշեց. «Վեցերորդ հնգամյակում զգալի-
որեն ընդլայնել ատոմային էներգիայի կիրառումը խաղաղ նպատակներով:
1956—1960 թվականների ընթացքում կառուցել 2—2,5 միլիոն կիլովատ ընդ-
հանուր կարողությամբ ատոմային էլեկտրակայաններ... Աշխատանքներ ծա-
վալել տրանսպորտային նպատակների համար՝ ատոմային ուժային հարմա-
րանքներ ստեղծելու ուղղությամբ: Կառուցել ատոմային շարժիչ ունեցող սառ-
ցահատ: Ամեն կերպ զարգացնել արդյունաբերության, գյուղատնտեսության
և բժշկության մեջ ռադիոակտիվ ճառագայթների հետագա օգտագործման
աշխատանքները... Լայնորեն օգտագործել նշված ատոմների կիրառումը գի-
տահետազոտական աշխատանքներում»:

Այս դիրեկտիվի կատարումը լարված աշխատանք է պահանջում գիտու-
թյան շատ ճյուղերի մասնագետներից և առաջին հերթին՝ ֆիզիկոսներից:
Նախատեսված է այդ կապակցությամբ ընթացիկ տարում կառուցել զա-
նազան տիպի ատոմային ռեակտորներ, որը հնարավորություն կտա ընդար-

ձակելու և խորացնելու մեր հետազոտական աշխատանքը ատոմային ֆիզիկայի բնագավառում։

Ներկայումս տեխնիկապես իրականանալի է ատոմային էներգիայի փոխարկումը էլեկտրական էներգիայի՝ ծանր էլեմենտների միջուկների ճեղքման ժամանակ ստացվող ատոմային էներգիան վերածելով ջերմության, իսկ ջերմությունը շոգե կամ գազի տուրբինի և էլեկտրագեներատորի միջոցով՝ էլեկտրականության։

Ատոմային և միջուկային ֆիզիկայի գծով վերջին տարիներս կատարած տեսական և փորձնական աշխատանքների հետևանքով գտնվեցին ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու նոր ուղիներ։ Նկատի ունենք այն ջերմամիջուկային ռեակցիաները, որոնց դեպքում ատոմային միջուկի ներսում թաքնված էներգիան արտաբերվում է ոչ թե ուրանի ատոմային ծանր միջուկների ճեղքման հաշվին, այլ այնպիսի նյութերի թեթև միջուկների սինթեզի, միաձուլման հետևանքով, ինչպիսիք են ջրածնի հազվագյուտ այլատեսակությունները հանդիսացող դեյտերիումը և տրիտիումը։ Դեյտերիումը հանդիպում է բնության մեջ և կարելի է էլեկտրոլիզի միջոցով ստանալ ջրից մեծ քանակությամբ։ Տրիտիումը ռադիոակտիվ նյութ է, որը կարելի է ստանալ ատոմային կաթսաներում, նեյտրոններով ռմբակոծելով լիթիումը։

Մենք այժմ կարողանում ենք ջրածնային ռումբի մեջ պայմաններ ստեղծել դեյտերիումը հելիումի փոխարկելու համար։ Դա էլ հենց ջերմամիջուկային ռեակցիա է։ Սակայն, այդ ռեակցիան կործանիչ հզոր պայթյունի բնույթ ունի։ Հարկավոր է գտնել այնպիսի ուղիներ, որոնց միջոցով հնարավոր լինի ղեկավարել այդ ռեակցիան։

Այդ խնդրի լուծումը մարդկությանը կազատի այն հոգսից, որ նա մշտապես ունի երկրագնդի վրա կյանքի գոյությունը պահպանելու համար անհրաժեշտ էներգիայի պաշարների մասին։

Ատոմային ռեակտորների և նրանց հետ սերտ շաղկապված ռադիոքիմիական արտադրության համար պահանջվում են սովորական մետաղներից և նյութերից էապես տարբեր մեծ քանակությամբ նոր մետաղներ և նյութեր։ Այդպիսի նյութերի ստեղծումը ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի գիտական հիմնարկների խնդիրներից մեկն է։

Հարկավոր է ատոմային էներգիայի առջև ավելի լայն ճանապարհ բացել տրանսպորտային նպատակներով այն օգտագործելու համար։ Ընթացիկ հնգամյակում պետք է լայն աշխատանքներ տարվեն ոչ միայն սառցահատի, այլև տրանսպորտի այլ տեսակների համար ատոմային ուժային սարքավորումներ ստեղծելու ուղղությամբ։

Ներկայումս ռադիոակտիվ իզոտոպները լայնորեն օգտագործվում են դեֆեկտոսկոպիայի համար, ավտոմատիկ վերահսկողության ու ղեկավարման, տեխնիկական պրոցեսների ուսումնասիրման համար քիմիայի և մետալուրգիայի բնագավառում, նավթային արդյունաբերության և բժշկականության բնագավառում։ Մեր խնդիրն է ամեն կերպ զարգացնել և ընդարձակել ռադիոակտիվ իզոտոպների և ճառագայթումների կիրառումը բնագիտության և տեխնիկայի բոլոր ճյուղերում։ Առանձնապես կարևոր է խորացնել հետազոտությունները մի ամբողջ շարք քիմիական պրոցեսներ կատարելու համար՝ միջուկային ճառագայթումները կիրառելու գծով, սննդամթերքները ախտա-



հանելու, հացահատիկը, կարտոֆիլը, բանջարեղենը և այլ մթերքները պահպանելու նպատակով։

Ատոմային տեխնիկայի համար անհրաժեշտ են շատ էլեմենտներ, այդ թվում նաև հազվագյուտ էլեմենտներ։ Երկրաբանները պետք է ցույց տան այդպիսիք հայտնագործելու, իսկ քիմիկոսները՝ դրանց ստացման տեխնոլոգիայի մշակման ուղիները։

Հսկայական կարևորություն ունեցող խնդիրներ են ծառանում նաև կենսաբանության առջև։ Ատոմային դարում մենք պարտավոր ենք ստույգ իմանալ օրգանիզմի վրա ռադիոակտիվ ճառագայթումների ազդեցության բոլոր հետևանքները, մշակենք օրգանիզմը այդ ճառագայթումներից պաշտպանելու միջոցները, ինչպես նաև սովորենք օգտագործել նրանց դրական ներգործությունը։

Շատ հրատապ և հետևապես լարված աշխատանքի լայն ասպարեզ է բացվում բիոֆիզիկոսների, գենետիկների, բիոքիմիկոսների, ֆիզիոլոգների առջև։ Խոսքը վերաբերում է հյուսվածքների և բջիջների վրա ճառագայթումների քիմիզմի ներգործության խոր ըմբռնմանը, ինչպես և կենսաբանական խախտումներին և դրանց կանխմանը։

Առաջնահերթ և խոր հետազոտություններ են պահանջում նաև ռադիոտեխնիկան և էլեկտրոնիկան։ ՍՄԿԿ XX համագումարի կողմից այս բնագավառում դրված խնդիրները նախատեսում են էլ ավելի զարգացնել ռադիոհաղորդման և ընդունման նոր մեթոդներ գտնելու աշխատանքները, ընդլայնել հեռավոր հաղորդումների համար նոր ռադիոկանալների հետազոտությունը, յուրացնել ռադիոալիքների նոր դիապազոններ, մշակել ռադիոռելեային և ալիքային կապի սիստեմներ։ Պետք է նշել, որ այս բնագավառում զգալի հաջողություններ են ձեռք բերվել կապիտալիստական երկրներում, առանձնապես ԱՄՆ-ում։ Մենք այստեղ, դժբախտաբար, ետ ենք մնում։ Մեր ետ մնալու պատճառներից մեկն այն է, որ մեզանում դեռևս բավարար չափով գիտահետազոտական աշխատանքներ չէին ծավալվել այդ ուղղությամբ։ Ուստի վեցերորդ հնգամյակի կարևոր խնդիրներից մեկն է՝ մեծ չափով ընդարձակել գիտական հետազոտությունները ռադիոտեխնիկայի և էլեկտրոնիկայի բնագավառում։

Կապի, հեռուստատեսական ղեկավարման, ռադիոլոկացիայի, էներգիան առանց լարերի օգնության հաղորդելու տեխնիկան ներկայումս կախված է ռադիոլոկացիոն տեխնիկայի բնագավառում կիրառվող ալիքներից և ինֆրակարմիր ալիքներից։ Բոլոր հիմքերը կան կարծելու, որ միլիմետրային և ավելի կարճ ռադիոալիքների յուրացումը լայն հնարավորություններ կբացի ռադիոկապի, ռադիոլոկացիայի, ռադիոտելեկառավարման և ռադիոտեխնիկայի մյուս ճյուղերի հետագա զարգացման համար։

Ռադիոտեխնիկայի և էլեկտրոնիկայի հետ սերտորեն կապված է արագ գործող ավտոմատ հաշվիչ մեքենաների, ինչպես նաև այլ և այլ տիպի մասնագիտացած ու ղեկավարող մեքենաների ստեղծումը։ Ըստ էության էլեկտրոնային ավտոմատիկ թվային մեքենաները կատարում են նույն այն ֆունկցիաները, ինչ-որ նախկինում կատարում էին արիֆմոմետրի տիպի հաշվային մեքենաները։ Այդ ֆունկցիաների մեջ են մտնում թվաբանական հիմնական գործողությունները, այն է՝ գումարումը, հանումը, բազմապատկումը և բա-

ժանումը, որոնց միջոցով կարելի է լուծել ամեն տեսակ բարդ մաթեմատիկական խնդիրներ։ Դրանից բացի էլեկտրոնային մեքենաները կատարում են նաև տրամաբանական բնույթի որոշ գործողություններ (օրինակ, հաշվարկումների արդյունքների համեմատումը)։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների էական առանձնահատկությունն այն է, որ նրանք չունեն շարժվող մեխանիկական մասեր, իսկ հաշվման համար օգտագործվում է էլեկտրոնային ոչ-իներցիոն սկզբունքը։ Այդ հանգամանքը ապահովում է այդ մեքենաների գործողությունների վիթխարի արագությունը։ Այդպիսի մեքենաները կարող են մեկ վայրկյանում կատարել հարյուր հազարավոր գործողություններ, փոխարինելով հսկայական թվով հաշվիչների։

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում մշակված են էլեկտրոնային հաշվային մեքենաների մի քանի նմուշներ։ Օրինակ, արագ գործող էլեկտրոնային հաշվային մեքենան (ԲԷՍՄ), Մ—2 էլեկտրոնային մեքենան։ ԲԷՍՄ մեքենան մեկ վայրկյանում կատարում է 7—8 հազար գործողություն։ Մ—2 մեքենան նրանից համեմատաբար դանդաղ է գործում, բայց ունի այնպիսի առավելություններ, ինչպիսիք են փոքր ծավալը, ավելի քիչ թվով դետալները և այլն։

Այդ մեքենաներով արդեն կատարված են բազմաթիվ հաշվային աշխատանքներ։ Նրանց արտադրողականության մասին եզրակացություն կարելի է կազմել թեկուզ և հետևյալ օրինակներից։ Ռեակտիվ ինքնաթիռի կորպուսի գծանկարի հաշվարկումը կատարվել է մի քանի րոպեի ընթացքում։ Չափազանց կարճ ժամանակում հաշվարկվել է տասնյակ փոքր մոլորակների շարժումը մի քանի տասնյակ տարվա համար, որպիսի գործողության դեպքում անցյալ դարերի աստղագետները բազմաթիվ տարիներ կկորցնեին։ Հաշվային մեքենաների և հաշվիչների աշխատանքի արտադրողականության համեմատությունը ցույց է տալիս, որ ԲԷՍՄ-ը ընդունակ է փոխարինել այնքան հաշվիչների, որքան աշխատող ձեռքեր կային եգիպտական պիրամիդների կառուցման ժամանակ։

Հաշվող ու խնդիրներ վճռող սարքավորումների ստեղծումը գիտական այն խոշորագույն նվաճումներից մեկն է, որոնց հետևանքները այժմ դժվար է գերագնահատել և մենք պարտավոր ենք կանգ չառնել կես ճանապարհին, այլ պետք է արագ քայլերով առաջ ընթանանք։ Արդի ֆիզիկայի և տեխնիկայի խնդիրները պահանջում են ստեղծել է՛լ ավելի կատարյալ թվային մեքենաներ։ Այդ աշխատանքն իր հերթին պահանջում է զարգացնել տեսական հետազոտությունները մի շարք ուղղություններով։

Դիրեկտիվներում առանձնապես պահանջ է դրվում զարգացնել հետազոտությունները կիսահաղորդիչների գծով։

Ինչպես հայտնի է, կիսահաղորդիչների շարքն են դասվում այն նյութերը, որոնք ունեն հաղորդիչների և մեկուսիչների միջակա հատկություններ։ Կիսահաղորդիչներ են գրաֆիտը, սիլիկիոնը, գերմանիումը, սելենը, բազմաթիվ այլ քիմիական միացություններ և զանազան հանքանյութեր։

Կիսահաղորդիչները հնարավորություն տվեցին լուծելու մի շարք տեխնիկական պրոբլեմներ, որպիսիք անմատչելի էին էլեկտրատեխնիկայի սովորական նյութերի շրջանակներում։

Արդեն կարելի է թվարկել շուրջ 20 բնագավառ, ուր կիրառվում են կիսահաղորդչային նյութեր։ Օրինակ, արդեն կան փոփոխական էլեկտրական հոսանքի ամուր համուղղիչներ։



Կիսահաղորդիչները տեխնիկական կիրառում են գտել նաև որպես էլեկտրական հոսանքի ուժեղացուցիչներ։ Ռադիոտատանումները ուժեղացվում են գերմանիումի, սիլիկիոնի և այլ կիսահաղորդիչների բյուրեղիկների միջոցով, որոնց մեծությունը գնդասեղի գլխից քիչ մեծ է։ Նրանք ունեն շատ պարզ կառուցվածք։ Այդ ամենը հաջողությամբ փոխարինում են վակուումային ռադիոլամպերին։

Արդեն ստեղծված են կիսահաղորդչային սառցարանների նմուշներ։ Այդպիսի սառցարաններ կարելի է տեսնել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի գլխավոր պավիլիոնում, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի աշխատանքների ցուցահանդեսում։

Հաշվի առնելով ջերմաէլեմենտների էֆեկտիվության բուռն աճը, կարելի է կարծել, որ առաջիկա տարիներին հնարավոր է դրանց օգնությամբ լուծել բազմաթիվ կարևոր հարցեր, այն է՝ մեծ քանակությամբ էլեկտրական էներգիա ստանալ արեգակի ռադիացիայից (մեկ հեկտար տարածությունից մոտ 1000 կիլովատ), օգտագործել ավտոմոբիլների, շոգենավերի, մետալուրգիական վառարանների ավելորդ գազերի ջերմությունը, օգտագործել կենտրոնական ջեռուցման կաթսաները այնքան էլեկտրական էներգիա ստանալու, որքան հարկավոր է տվյալ շենքի բնակիչների պահանջմունքները բավարարելու համար, էլեկտրական էներգիա մատակարարել ոչէլեկտրիֆիկացված շրջաններին։ Կիսահաղորդիչները նոր ուղիներ են բացել ավտոմատիկայում, ռադիոէլեկտրոնիկայում, լուսավորման և չափման տեխնիկայում և այլն։

Վեցերորդ հնգամյակում անվերապահորեն զգալի չափով կընդլայնվեն գիտահետազոտական աշխատանքները այդ բնագավառում։

Վերջին ժամանակներս մեծ ուշադրություն են գրավում մագնիսային հատկություններ ունեցող կիսահաղորդիչները՝ ֆերրիտները, որոնք միայն վերջերս են տեխնիկական կիրառման մեջ ընդգրկվել և կապահովեն բազմաթիվ խնդիրների լուծումը ռադիոտեխնիկայում, ավտոմատիկայում և մաթեմատիկական մեքենաներում։ Այդ մասին է վկայում թեկուզ այն, որ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում ֆերրիտների հիման վրա մշակված է հատուկ հիշող սարքավորում՝ արագ գործող հաշվիչ մեքենաների համար։

Տեխնիկայի վերոհիշյալ առաջատար մարզերի հետ սերտորեն առնչվում և նրանց վրա հենվում են ավտոմատիկան և տելեմեխանիկան։ ՍՄԿԿ XX համագումարը նշել է արտադրական պրոցեսների ավտոմատացման շատ ընդարձակ ծրագիր։

Մենք այդ բնագավառում զգալի չափով ետ ենք մնում հետազոտությունների քանակի տեսակետից։ Դեռևս բավարար տեմպերով հետազոտություններ չեն կատարվում արտադրական պրոցեսների և արտադրական բարդ կոմպլեքսների ավտոմատացման սիստեմների կառուցման գիտականորեն հիմնավորված մեթոդներ ստեղծելու ուղղությամբ, տելեմեխանիկական ազդանշաններ հաղորդելու և հուսալի տելեմեխանիկական կառուցումների թեորիայի գծով, ինչպես նաև արտադրական պրոցեսների ավտոմատացման նպատակներով հաշվային-հաշվիչ և ծրագրող սարքավորումների կիրառման գծով։

Ուստի պահանջվում է զգալիորեն ընդարձակել գիտահետազոտական աշխատանքները, այդ աշխատանքների մեջ ներգրավելով բազմաթիվ գիտական հիմնարկներ։

Կարևորագույն խնդիր է նաև ժամանակակից ֆիզիկայի նվաճումների վրա հիմնված ավտոմատիկայի և տելեմեխանիկայի ավելի կատարյալ տեխնիկական միջոցներ գտնելը։

Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվները առաջադրում են նաև պարարտանյութերի արտադրության ավելացման, մոլախոտերի դեմ պայքարի միջոցների արտադրության և վնասատուների դեմ պայքարելու համար ավելի էֆեկտիվ թունաքիմիկատների արտադրության կազմակերպման խնդիրները։ Թվարկված խնդիրներից յուրաքանչյուրը հետազոտությունների մի ամբողջ բնագավառ է ներկայացնում։ Կարելի է հիշատակել շատ էֆեկտիվ ֆոսֆորօրգանական նոր ինսեկտիսիդներ ստեղծելու մասին։ Էլեմենտա-օրգանական միացությունների ինստիտուտի վերջին աշխատանքների շնորհիվ հայտնագործվել է ինսեկտիսիդների մի նոր տիպ, որն օժտված է ժանտանյութային սիստեմի ներգործությամբ։ Այդպիսի նյութերի լուծույթով ժանտանյութված սերմերը տալիս են այնպիսի ծիլեր, որոնք մի որոշ ժամանակաշրջանի ընթացքում թունավոր են միջատների համար։ Այդ թույների ներգործության մեխանիզմի ուսումնասիրությունը մեզանից պահանջում է խորապես ուսումնասիրել միջատների նյարդային գրգռման բիոքիմիան։ Բույսերի աճմանը նպաստող և կասեցնող նյութերը, որոնք վեցերորդ հնգամյակում կսկսեն լայնորեն կիրառվել մեր երկրի դաշտերում, իրենցից ներկայացնում են մոլախոտերի դեմ պայքարի մի նոր հզոր միջոց, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման հզոր միջոց։

Դիրեկտիվներում նախատեսվում են քիմիական և նավթային, ինչպես նաև բնական գազերի ու նավթամթերքների օգտագործման հետագա ծավալման խնդիրները սինթետիկ կաուչուկի, սպիրտի, լվացման միջոցների և քիմիական այլ պրոդուկտների արտադրության համար։ Դրա համար նախատեսվում է արդյունաբերության մեջ օգտագործել գիտության արդեն ձեռք բերած նվաճումները, ինչպես նաև գտնել նոր, ավելի կատարյալ պրոցեսներ։ Այդ հանգամանքը առաջադրում է մի շարք սկզբունքային հարցեր քիմիական գիտությանը, ինչպիսին է, օրինակ՝ կատալիզատորների ընտրության և կատալիտիկ պրոցեսների մեխանիզմի բացահայտման պրոբլեմը։

Արդի քիմիայի կարևորագույն պրոբլեմներից մեկը կատալիզատորների ընտրության գիտական հիմունքների մշակումն է։ Մեր օրերում քիմիական պրոցեսների մեծամասնությունը կատարվում է կատալիզատորների ներգործությամբ, որոնք արագացնում են տվյալ պրոցեսը և հնարավորություն են տալիս ցանկացած ուղղություն տալ նրան։ Մենդելեևյան սիստեմի գրեթե յուրաքանչյուր էլեմենտ կարող է որպես կատալիզատոր ծառայել այս կամ այն ռեակցիայի դեպքում։ Սակայն մինչև այժմ էլ կատալիզատորների ընտրությունը կատարվում է խարխափանքով։

Կատալիտիկ ռեակցիաները արդյունաբերությանը հնարավորություն են տալիս ստանալու ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ մթերքներ։

Կատալիտիկ դեհիդրացման (ջրածնի անջատման) ռեակցիան հնարավորություն է տալիս ստանալու սինթետիկ կաուչուկի հումք, ինչպես նաև ներկանյութերի և բուժիչ պրեպարատների, պայթուցիկ նյութերի, արհեստական թելերի, լվացող և մակերես-ակտիվ նյութերի արտադրության հումք։

Չափազանց կարևոր են քիմիական կինետիկայի՝ քիմիական պրոցեսների



ուղղությունն ու արագությունը ուսումնասիրող գիտության բնագավառում կատարվող աշխատանքները։ Քիմիական պրոցեսների ղեկավարման համար կարևոր նշանակություն ունեցող այդ հետազոտությունների վերջնական նպատակն է սահմանել քիմիական պրոցեսների մեխանիզմը, այսինքն՝ այն առանձին ստադիաների հաջորդականությունը, որոնցից գոյանում է տվյալ պրոցեսը։

Հարկ ենք համարում համառոտակի կանգ առնել ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայում կատարվող մի այլ աշխատանքի վրա ևս։ Հայտնի է, որ միևնույն նյութը, նայած պայմաններին, կարող է շատ արագ կամ շատ դանդաղ ռեակցիա ունենալ։ Պրոցեսը վարելուց է կախված, թե ինչպիսի վերջնական պրոդուկտներ են ստացվում միևնույն ելակետային նյութերից։ Ինչպես հայտնի է բնական մեթան գազը այրվում է, սակայն մեթանի ու թթվածնի ռեակցիան կարող է իրականանալ շատ ավելի դանդաղ, բայց դրա փոխարեն կգոյանա մի շատ արժեքավոր պրոդուկտ՝ ֆորմալդեհիդ։ Այդ նյութի հիման վրա կարելի է ստանալ սինթետիկ խեժեր և պլաստմասսաներ, ուրոտրոպին, սերմերի ախտահանման միջոցներ, կպցնող և շատ այլ նյութեր։ Մեթանի անմիջական օքսիդացման պրոցեսը իրականացվեց օքսիդացման քիմիական ռեակցիայի մեխանիզմի հետազոտության ժամանակ ստացված արդյունքների հիման վրա։ Ներկայումս արդեն ավարտված են բոլոր փորձնական աշխատանքները և կազմված է ֆորմալդեհիդի ստացման մեծ կարողություն ունեցող արդյունաբերական ագրեգատի շինարարության նախագիծը։

Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսվում է է՛լ ավելի կատարելագործել և յուրացնել հազվագյուտ մետաղների արտադրության տեխնոլոգիան, բազմակողմանիորեն ուսումնասիրել նրանց հատկությունները և կիրառման բնագավառները։ Պետք է խոստովանել, որ մեզ մոտ դեռևս անբավարար են կատարվում հետազոտությունները հազվագյուտ էլեմենտների գծով։ ՍՍՌՄ ԳԱ Նախագահությունը նշել է այդ աշխատանքների անբավարար վիճակը և որոշում է ընդունել այդ աշխատանքներն ուժեղացնելու մասին։ Մենք պետք է ամենակարճ ժամկետում վերացնենք թերությունները, ավելի լայն ծավալենք գիտական այն հետազոտությունները, որոնց նպատակն է ստեղծել հանքային հումքի և արտադրության մնացորդների կոմպլեքսային վերամշակման ժամանակ հազվագյուտ էլեմենտներ ստանալու ռացիոնալ մեթոդներ։ Այդ հետազոտությունները հիմնականում նպատակ են հետապնդում մեր կողմից օգնություն ցույց տալ մետալուրգիական և քիմիական արդյունաբերությանը՝ տեխնոլոգիական պրոցեսները մշակելու և կատարելագործելու հարցում։

Ակադեմիայի մյուս հիմնական խնդիրն է՝ ուսումնասիրել հազվագյուտ էլեմենտների հատկությունները և ստանալ այդ էլեմենտների նոր միացություններ, կիսահաղորդիչային նյութեր և դրանց հիման վրա ստեղծված ջերմադիմացկուն համաձուլվածքներ, ինչպես նաև մշակել խիստ մաքուր հազվագյուտ մետաղներ ստանալու մեթոդների գիտական հիմունքները։ Հազվագյուտ էլեմենտների հատկությունների ուսումնասիրությունը նոր հնարավորություններ կբացի բազմակողմանի պրակտիկ խնդիրներ լուծելու բնագավառում։ Հազվագյուտ մետաղների կիրառման դիապազոնը տարեցտարի ընդարձակվում է և ներկայումս այն ընդգրկում է թե՛ ատոմային էներգետիկան (ցիրկոնիում, բերիլիում, լիթիում), թե՛ բժշկականությունը (տանտալը՝ գանգի վնասված ոսկորները փոխարինելու համար), թե՛ գյուղատնտեսությունը (տալիում, որը մի

թույն է կրծողների դեմ պայքարելու համար), թե՛ մետալուրգիան և թե՛ ռադիոտեխնիկան։ Հետագայում հազվագյուտ մետաղների կիրառումը անտարակուսելիորեն շատ ավելի կընդարձակվի։ Վճռական խոսքը այստեղ պատկանում է մեր քիմիկոսներին, ֆիզիկոսներին, մետալուրգներին և տեխնիկներին, որոնք պետք է համատեղ ջանքերով գտնեն նրանց կիրառման նոր և հնարավոր ուղիներ։

ՍՄԿԿ XX համագումարի որոշումներում ընդգծված է մեր երկրի, առանձնապես արևելյան շրջանների բնական ռեսուրսների բազմակողմանի և կոմպլեքսային ուսումնասիրության ու յուրացման հսկայական դերը։

Համագումարում նշվեցին այդ բնագավառում սովետական երկրաբանների ձեռք բերած հաջողությունները։ Սակայն, պետք է ասել, որ դրական արդյունքները ձեռք են բերված շատ մեծ միջոցների ծախսումով։ Երկրաբանական-հետախուզական աշխատանքների էֆեկտիվությունը շատ ավելի բարձր կլիներ, եթե դրանք հենված լինեին տեսական ընդհանրացումների և գիտականորեն հիմնավորված պրոգնոզների վրա։ Այդպիսի գիտական ընդհանրացումները և պրոգնոզները ներկայումս մեզանում խիստ անբավարար են։ Այս հարցում թեորիան բացահայտորեն ետ է մնում պրակտիկայից։ Այդ թերությունը վերացնելու համար անհրաժեշտ է գիտական ուժերը և միջոցները կենտրոնացնել երկրաբանական գիտության վճռական բնագավառներում։

Երկրաբանական գիտությունների հետագա զարգացումը դժվար է պատկերացնել առանց գեոֆիզիկայի ու գեոքիմիայի հետ երկրաբանության ունեցած սերտ կապի։ Ընդհանուր տեսական հարցերը մշակելուց և հանքերի անմիջական որոնումների համար գեոֆիզիկական մեթոդները օգտագործելուց բացի ներկայումս մեծ նշանակություն են ձեռք բերում հանքադաշտերի ստրուկտուրայի երկրաբանական-գեոֆիզիկական կոմպլեքսային ուսումնասիրությունը և երկրաբանական խոշոր մասշտաբի քարտեզագրումը։

Երկրաբանական-գեոքիմիական հետազոտությունները հնարավորություն կտան նոր լրացուցիչ չափանիշներ ստանալու հանքագոյացման շրջանների և հեռանկարային կետերի հայտնաբերման համար։ Մասնավորապես պետք է ընդգծել հանքաբանական-գեոքիմիական կոմպլեքսային հետազոտությունների տեսական և գործնական լուրջ նշանակությունը։

Երկրաբանական գիտությանը առաջադրված պահանջները անհրաժեշտ են դարձնում հետազոտության նոր մեթոդների ամենալայն կիրառումը, մասնավորապես հանքատեսակների բացարձակ հասակը ռադիոակտիվ իզոտոպների միջոցով որոշելու մեթոդը։ Այդ մեթոդը հավանականորեն կարող է հաջողությամբ կիրառվել նաև հանքագոյացումների ուսմունքի հիմնական հարցերից մեկը, այն է՝ նրանց ինտրուզիաների կապը պարզելու, ինչպես նաև հանքավայրերի մի քանի երկրաբանական տիպերը որոշելու համար։

Դիրեկտիվները նախատեսում են ավելի ուժեղ տեմպերով զարգացնել Սիբիրի և ՍՍՌՄ արևելյան շրջանների արդյունաբերությունը և արտադրողական ուժերը։ Պարզ է, որ չի կարելի ամբողջ գիտությունը, կամ նրա գերակշռող մասը պահել Սովետական Միության արևմուտքում։ Հարկավոր է ամեն կերպ արագացնել գիտության զարգացումը արևելքում։ Ուստի ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի ուշադրությունը պետք է ուղղված լինի այդ հարցի լուծման վրա։

Գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքի վերաբերյալ պար-



տիայի XX համագումարի նշած խիստ կարևոր խնդիրները լուծելու գործում մեծ նշանակություն ունեն Պավլովի և Միչուրինի ուսմունքների ստեղծագործական զարգացումը, կենսաբանական գիտությունների տեսական խոշոր պրոբլեմների մշակումը։ Կենսաբանական գիտությունների բնագավառում տեսական հետազոտությունների ուժեղացումը հնարավորություն կտա լուծել մի շարք կարևորագույն ժողովրդա-տնտեսական պրոբլեմներ։

Բուսաբանական-հողագիտական պրոֆիլ ունեցող հիմնարկների կարևորագույն խնդիրն է բարձրացնել աշնանացան հացահատիկի, կերաբույսերի և պտղատու ծառերի ցրտադիմացկունությունը։ Անհրաժեշտ է բացահայտել ձմեռվա պայմաններում բույսերի չորացման բնույթը, գտնել նրանց դիմացկունության ավելի էֆեկտիվ սկզբունքներ և բուծել նոր ցրտադիմացկուն սորտեր։ Անհրաժեշտ է նաև շարունակել եգիպտացորենի ցրտադիմացկունության բարձրացման աշխատանքները՝ այդ կուլտուրայի դեպի հյուսիս կատարվող տեղաշարժի կապակցությամբ։

Անհրաժեշտ է մշակել բույսերի երաշտադիմացկունության հետագա բարձրացման, նոր սորտերի ստացման մեթոդներ, նոր ագրոտեխնիկայի գիտական հիմունքներ և անասնաբուծության զարգացման համար կերային ռեսուրսների օգտագործման էֆեկտիվ մեթոդներ։

Դիրեկտիվներում նախատեսվում է ուժեղացնել մոլախոտերի և գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարի քիմիական միջոցների մշակման աշխատանքները։

Մենք կանգ առանք ՍՄԿԿ XX համագումարի կողմից մեր գիտության առջև դրած միայն մի քանի խնդիրների վրա։ Ներկայումս գիտությունը և արտադրությունը այնքան սերտ են միահյուսված, որ արտադրության յուրաքանչյուր կետ խնդիրներ է առաջադրում գիտությանը։ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի համար դրանք արտադրությանը ցույց տրվող մասնակի օգնության առանձին մանր խնդիրներ չեն, այլ խոշոր ամբողջական բնագավառներ և պրոբլեմներ, որոնց լուծումը պետք է անընդհատ կատարելագործել, իսկ շատ դեպքերում էլ հեղափոխել արտադրությունը, իսկ այդ պրոբլեմների մշակումը անհնար է առանց տեսական կողմի բարձրացման, որը և Գիտությունների ակադեմիայի սպեցիֆիկ և գլխավոր խնդիրն է։

Պարտիայի XX համագումարը նշել է, որ գիտության և տեխնիկայի կարևորագույն նվաճումները դանդաղորեն են արմատավորվում արդյունաբերության մի ամբողջ շարք ճյուղերում։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումից հետո բարելավվեց ավարտված հետազոտությունների արմատավորման գործը։ Դրա օրինակ կարող է ծառայել այն, որ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հաստատված են Ակադեմիայի գիտնականների մշակած նոր սինթետիկ մանրաթելերի՝ անիդի, լավսանի և էնանտի ստացման մեթոդները։ Այդ թելերը, որոնք ոչ միայն չեն զիջում, այլ որոշ ցուցանիշներով գերազանցում են կապրոնի որակը, կարող են լայնորեն կիրառվել ժողովրդական տնտեսության մեջ։ Նախատեսված է կառուցել անիդ և լավսան տիպի սինթետիկ մանրաթել արտադրող գործարան, ինչպես նաև նախագծվել է սովետական օրիգինալ էնանտ թել արտադրող գործարանի շինարարությունը։

Վերջերս զգալիորեն բարելավվել է քարածխի կոքսացման և հարստացման նոր տեխնիկայի արմատավորման և ստեղծման վիճակը։

*Տարեցտարի ավելանում է այն ավարտված աշխատանքների քանակը, որոնք ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիան հանձնում է ժողովրդական տնտեսությանը՝ արմատավորման համար։ Այսպես, եթե 1951 թվականին արմատավորման համար հանձնվել էր 118 աշխատանք, ապա 1956 թվականին ստուգվել և արմատավորվել է ավելի քան 300 աշխատանք։ Այդ տեղի է ունեցել շնորհիվ շահագրգռված հիմնարկների և ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի կապերի ընդլայնման ու ամրապնդման։*

*Սակայն գիտական հետազոտությունների արդյունքների արմատավորումը դեռևս պետք է մեր ետ մնացող տեղամասը համարել։*

*Արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորման աշխատանքի հիմնական ձևերից մեկը պետք է լինի համատեղ աշխատանքը ձեռնարկությունների, փորձնական գործարանների և մինիստրությունների նախագծային կազմակերպությունների հետ։ Հարկավոր է օգտագործել և լայնորեն տարածել առաջավոր գիտնականների և արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծագործական համագործակցության փորձը։*

*Գիտության նվաճումները արդյունաբերության մեջ ավելի արագ արմատավորելու համար անհրաժեշտ է կազմակերպել աշխատանքներն ըստ առանձին պրոբլեմների, որոնք հենց սկզբից էլ կատարվել են արդյունաբերության ձեռնարկությունների հետ համատեղ՝ աշխատանքի ճիշտ բաժանման և արդյունաբերության կողմից նյութական ապահովման ուժեղացման հիման վրա։*

*Գիտության նվաճումների արմատավորման գործում մեծ դեր ունի մեր հասարակայնությունը։ Այդ կարևոր գործի հաջողությունը ապահովելու համար պետք է մշտապես ցուցաբերել անհանդուրժողականություն հնամոլության նկատմամբ, պայքար կոնսերվատիզմի դեմ։*

*Աշխատելով վեցերորդ հնգամյակի խնդիրների կատարման վրա, մենք չպետք է մոռանանք, որ պետք է ժամանակին անհրաժեշտ գիտական փորձ կուտակենք յոթերորդ և հետագա հնգամյակների համար։ Գիտությունը միշտ էլ պետք է շատ հեռուն նայի։*

*Խիստ կարևոր են նաև պլանավորման աշխատանքները։ Պլանավորման էությունն այն է, որ ներկայումս գիտական կազմակերպություններում մշակվող հազարավոր պրոբլեմներից ընտրվեն մի քանի տասնյակ այնպիսի պրոբլեմներ, որոնց լուծումը երկրին հնարավորություն կտա առաջիկա 3—5 տարում տեխնիկական պրոգրեսի նոր հնարավորություններ և արտադրողական ուժերի զարգացման նոր խթաններ ստանալ։ Անհրաժեշտ է ընտրել այնպիսի հեռանկարային պրոբլեմներ ևս, որոնց արդյունքները պրակտիկայում կարող են կիրառվել ավելի հեռավոր ժամանակներում։*

*Ընդամենը առաջադրված է շուրջ 80 այդպիսի պրոբլեմ։ Դրանց շարքում զգալի տեղ են գրավում տեսական ֆիզիկայի ընդհանուր հարցերի, ատոմային միջուկի տեսությանը, ցածր ջերմությունների ֆիզիկային վերաբերող պրոբլեմները։ Այդ պրոբլեմների լուծումը հնարավորություն կտա ավելի լրիվ չափով հետազոտել այդ երևույթները, նոր հնարավորություններ կբացի միջուկային պրոցեսի խորքը թափանցելու համար։*

*Առաջադրված պրոբլեմների մեջ կան նաև այնպիսիները, որոնց գծով գիտական հարցերը հիմնականում արդեն լուծված են և ծանրության կենտրոնը հիմնականում տեղափոխվում է ստացված արդյունքները արտադրության մեջ*



*կիրառելու վրա։ Այդպիսի պրոբլեմների թվին է պատկանում, օրինակ, տեխնիկայի բնագավառում սննդային յուղերի փոխարինումը սինթետիկ պրոդուկտներով։ Այդ պրոբլեմը նախատեսում է ածխաջրածնի սուլֆիրացման և օքսիդացման գոյություն ունեցող մեթոդների կատարելագործում և նոր մեթոդների մշակում։ Արդեն մշակված և ներկայումս մասնակիորեն արմատավորված մեթոդները հնարավորություն կտան 1954—1960 թթ. ընթացքում սոլիդոլների արտադրության մեջ լրիվին փոխարինել յուղերը, ստանալ լվացման բազմատեսակ նուրբ միջոցներ տեքստիլ արդյունաբերության համար և փոխարինել օճառի արտադրության մեջ ներկայումս գործադրվող սննդային յուղերի կեսը։*

*Ի՞նչ նոր բան է մտցրել այդ աշխատանքը գիտական հետազոտությունների կազմակերպման մեջ։ Ամենագլխավորն այն է, որ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի նախագահությանը հաջողվել է առանձնացնել գիտության ընդհանուր ճակատի այն ամենից կարևոր տեղամասերը, որոնց վրա հետագայում պետք է կենտրոնացվեն մեր ուշադրությունը, ուժերը և միջոցները։*

*Աշխատանքի պրոցեսում գիտնականների բրիգադներին հաջողվեց կոնտակտ հաստատել գիտության տարբեր ճյուղերի ներկայացուցիչների միջև, սահմանել կից գիտությունների փոխադարձ ներգործության հարցերը։*

*Շատ մեծ է ֆիզիկայի և քիմիայի, ֆիզիկայի և կենսաբանության և այլ գիտությունների փոխադարձ ներգործության նշանակությունը։ Ներկայումս պրակտիկ կերպով առաջին անգամ սկսվել է կոնտակտ դրանց միջև։*

*Այդպիսի աշխատանք կատարելու շնորհիվ միայն գիտության շատ ճյուղերի գիտնականներ կկարողանան աշխատանքային պայմաններում հանդիպել մինիստրությունների ներկայացուցիչների, ինչպես և նեղ-մասնագիտական ինստիտուտների և բարձրագույն ուսումնական հաստատությունների ներկայացուցիչների հետ։ Այդ ձևով կազմած պլանները կընդգրկեն գիտական և արտադրական բոլոր այն կազմակերպությունների աշխատանքը, որոնցից կախված է տվյալ պրոբլեմի լուծումը, անկախ այն բանից, թե որ գերատեսչությանն են ենթարկվում այդ կազմակերպությունները։*

*Պարտիայի XX համագումարի առաջադրած խնդիրը՝ «գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքը վերակառուցել նրանց գործունեությունը տնտեսության կոնկրետ կարիքներին ավելի մեծ չափով մոտեցնելու իմաստով», Գիտությունների ակադեմիային պարտավորեցնում է շարունակել ժողովրդական տնտեսության համար ակտուալ նշանակություն ունեցող պրոբլեմների մշակումը, որոնք, ունենալով սկզբունքային մեծ նշանակություն, միաժամանակ և կորոշեն տեխնիկական պրոգրեսի ուղղությունները։*

*Պարտիայի XX համագումարում տված իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ա. Բուլգանինը հատուկ ուշադրություն հրավիրեց այն բանի վրա, որ որոշ գիտական հիմնարկներ և առանձին գիտական աշխատողներ բազմաթիվ տարիների ընթացքում անարդյունավետ են աշխատել։*

*Անհրաժեշտ է հանգամանորեն վերանայել ՍՍՌՄ գիտա-հետազոտական հիմնարկների ցանցը այն հաշվով, որ այն լրիվին համապատասխանի գիտության և տեխնիկական պրոգրեսի կարևորագույն ուղղություններին։*

*Անհրաժեշտ է գիտա-հետազոտական հիմնարկներն ազատել այն մարդկանցից, որոնք տարիներ շարունակ ոչ մի օգտակար, գործնականորեն արժեքավոր արդյունք չեն տալիս։*

Համագումարը նշեց մեր բարձրագույն դպրոցի գիտական աշխատանքը մոբիլիզացնելու անհրաժեշտությունը որպես մեր գիտության հզոր ստեղծագործական ռեզերվի։ Անհրաժեշտ է բարձրագույն գիտական հաստատություններն ավելի լայնորեն ներգրավել ժողովրդական տնտեսության համար գիտա-հետազոտական աշխատանքներ կատարելու գործում։

Երկրի բարձրագույն ուսումնական հաստատությունների գիտա-տեխնիկական բազան ամրապնդելու նպատակով Բարձրագույն կրթության մինիստրությունը առաջարկություն է մտցրել 1957—1958 թթ. ընթացքում խոշոր բուհերին կից կազմակերպել ժամանակակից սարքավորում ունեցող լաբորատորիաներ՝ գիտության առաջատար բնագավառների և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության կարևորագույն գիտական պրոբլեմների մշակման համար։

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի խնդիրն է սերտ կապ հաստատել բուհերի հետ և նրանց ներգրավել գիտական կարևորագույն պրոբլեմների ընդհանուր պլանային աշխատանքներում։

Նախատեսված է ուժեղացնել գործարանային լաբորատորիաները, իսկ դա հնարավորություն կտա մասնագիտական ինստիտուտների վրայից վերցնել շատ մանր խնդիրներ, որոնք կապված են արտադրության ընթացիկ կարիքների սպասարկման հետ, և հնարավորություն կստեղծի նրանց ուշադրությունը կենտրոնացնել արդյունաբերության տվյալ ճյուղի գիտական հեռանկարային կարևորագույն պրոբլեմների լուծման վրա։ Այդ էլ իր հերթին Գիտությունների ակադեմիային կազատի բազմաթիվ այն խնդիրները լուծելու հոգսից, որպիսիք պետք է լուծեն մասնագիտական ինստիտուտները։ Այսպիսով, Գիտությունների ակադեմիան բուհերի հետ միասին կկարողանա իր ուշադրությունը կենտրոնացնել գիտության առավել խոշոր, սկզբունքային խնդիրների լուծման, ինչպես նաև քիչ հետազոտված, բայց շատ բան խոստացող նոր բնագավառների գիտական հետազոտության վրա։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը մշակել է սովետական ժողովրդի արտադրողական ուժերի և կուլտուրայի զարգացման հոյակապ ծրագիր։ Համագումարի առաջադրած խնդիրների լուծման ասպարեզում, դեպի կոմունիզմ կատարվող մեր հաջող առաջընթացում մեծ դեր ունեն կատարելու սովետական գիտությունը, նրա հայտնագործությունները, նրա նվաճումները և դրանց արմատավորումը արտադրության մեջ։

Սովետական գիտության զարգացման նկատմամբ պարտիայի և կառավարության ցուցաբերած մշտական հոգատարությունը հանդիսանում է շատ ուժեղ ազդակ մեր գիտնականների համար, նրանց ստեղծագործական նոր հաջողությունների համար։ Սովետական գիտնականները մեծ խանդավառությամբ կկատարեն իրենց վրա դրված պատասխանատու միսիան։

Ոգեշնչված պարտիայի XX համագումարի պատմական որոշումներով, հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, լենինյան դրոշի ներքո նրանք կկատարեն պատվի և աշխատանքային արիության իրենց պարտքը և ավելի լավ կծառայեն ժողովրդին, որը վստահորեն ընթանում է առաջ, դեպի կոմունիզմ։

# ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՄԱՐԴՈՅԱՆ

Կոտայքի շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները, ուղեցույց ունենալով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, անցյալ տնտեսական տարում նշանակալից աշխատանք կատարեցին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, կոլտնտեսությունները կազմակերպչորեն ու տնտեսապես ամրապնդելու ուղղությամբ։

Օգտագործելով ինչպես Սովետական Միության, այնպես էլ ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսությունների փորձը, շրջանի կոլտնտեսությունները կարողացան աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումով զգալիորեն ավելացնել յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստացվող գյուղատնտեսական մթերքների քանակը։

Լուրջ ուշադրություն նվիրվեց կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնության բարձրացման վրա։ Շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները անշեղորեն կենսագործեցին կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման վերաբերյալ վերադաս օրգանների որոշումները։ 1956 թվականի ընթացքում առաջին անգամ կոլտնտեսությունների նախագահների, դաշտավարական բրիգադների բրիգադավարների, անասնաբուծական ֆերմաների վարիչների և գյուղատնտեսության մասնագետների աշխատանքի վարձատրությունը կատարվեց ստացված արտադրանքի քանակի համեմատ։ Այսպես, օրինակ, Առինջ գյուղի Բաղրամյանի անվան կոլտնտեսության նախագահին ստացված յուրաքանչյուր 10 ցենտներ հացահատիկի, 30 ցենտներ խոտի, 50 ցենտներ սիլոսի մասսայի, 100 ցենտներ ճզոտ-դարմանի, 20 ցենտներ խաղողի-մրգի, 20 ցենտներ կաթի, 50 ցենտներ կենդանի քաշով միջակ գիրությամբ մսի, 300 հատ ձվի, 10 գլուխ 6 ամսական հասակի գառան և այլնի համար տրվեց մեկական աշխօր։ Բացի այդ, կոլտնտեսության նախագահին, որպես լրացուցիչ վարձատրություն, տրվեց նաև պլանից ավել ստացված գյուղատնտեսական մթերքների 1,5 տոկոսը, ծախսումի գծով պլանից ավել ստացված դրամական եկամտի մինչև 3 տոկոսը։ Կոլտնտեսության Կանոնադրությամբ սահմանված է, որ ծախսումից ստացված այդ գումարը չպետք է գերազանցի 6000 ռուբլուց (իհարկե, եթե կատարվել է սորտայնության պլանը), իսկ սորտայնության պլանը չկատարվելու դեպքում տրվում է հասանելիք գումարի միայն 85 տոկոսը։

Վարձատրումը նոր կարգի համաձայն կոլտնտեսության ամբողջ դրա-

մական եկամտի 2 տոկոսը առանձնացվել է վարչության նախագահին, հաշվապահին, գյուղատնտեսին և զոոտեխնիկին սահմանված չափով դրամական վարձատրություն տալու համար։

Հաշվի առնելով գյուղատնտեսության զարգացման գործում մասնագետների կատարած որոշակի աշխատանքը, զգալիորեն ավելացվեց նրանց վարձատրության չափը։ Այսպես, կոլտնտեսության գյուղատնտեսը վարձատրվեց դաշտավարության գծով նախագահի վաստակած աշխօրերի 100 տոկոսի, պլանից ավել ստացված մթերքների 80 տոկոսի և ծխախոտի գծով ստացած պարգևատրության 50 տոկոսի չափով։ Զոոտեխնիկը վարձատրվեց անասնաբուծության գծով նախագահի ստացած աշխօրերի 100 տոկոսի և պլանից ավել ստացած անասնաբուծական մթերքների 60 տոկոսի չափով։

Բրիգադավարների և ֆերմաների վարիչների աշխատանքի վարձատրությունը կատարվեց կոլտնտեսության նախագահի վարձատրության սկզբունքով։ Նրանց լրացուցիչ վարձատրություն տրվեց նաև պլանով նախատեսվածից ավել ստացված դրամական և բնամթերային եկամուտներից։

Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով, նրանց նկատմամբ նույնպես կիրառվեց լրացուցիչ վարձատրության սկզբունքը, որի համաձայն պլանով նախատեսվածից ավել ստացված բերքի մի մասը, տարբեր կոլտնտեսություններում տարբեր չափերով, որպես պարգև-հավելում տրվեց այն կոլտնտեսականներին, որոնք իրենց լավ աշխատանքով ապահովել էին բարձր բերքի ստացումը։ Ասածները վերացական չլինելու համար բերենք հետևյալ օրինակը։ Ելղովան գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսությունում բերքատվության պլանից ավել ստացված հացահատիկը, բանջարեղենի մինչև 70 տոկոսը, պլանից ավել պետությանը հանձնված ծխախոտի հումքի արժեքի մինչև 70 տոկոսը, ծղոտի՝ 50 տոկոսը, պլանից ավել ստացված կաթի մինչև 25 տոկոսը, բրդի՝ 40 տոկոսը, պլանից ավել ստացված և մինչև 2 ամիս պահպանված խոճկորների 30 տոկոսը տրվեց այդ ճյուղերում աշխատող կոլտնտեսականներին։ Այստեղ կոլտնտեսության վարչության նախագահ Զ. Զաքարյանը, բացի աշխօրերի դիմաց ստացած հիմնական վարձատրությունից, որպես լրացուցիչ վարձատրություն անցած տնտեսական տարում ստացավ 12.000 ռուբլի դրամ, 500 կիլոգրամ բանջարեղեն, 72 կիլոգրամ միս, 150 կիլոգրամ կաթ և այլ մթերքներ։ Այդ նույն կոլտնտեսության դաշտավարական բրիգադայի բրիգադավար Ա. Կարապետյանը որպես լրացուցիչ վարձատրություն ստացավ 4000 ռուբլի դրամ, 400 կիլոգրամ բանջարեղեն, կովաբուծական ֆերմայի վարիչ Ա. Շահինյանը՝ 1000 ռուբլի դրամ, 200 կիլոգրամ կաթ, 80 կիլոգրամ միս, մեկ հորթ և այլ մթերքներ։

Կոլտնտեսությունների ղեկավար աշխատողներին վարձատրելու նման սիստեմը և կոլտնտեսականներին լրացուցիչ վարձատրություն տալու նշված կարգը բարձրացնում է նրանց պատասխանատվությունն ու նյութական շահագրգռվածությունը՝ գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն ավելացնելու գործում։ Այդ է վկայում այն, որ չնայած 1956 թվականի կլիմայական անբարենպաստ պայմաններին, Ելղովան գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսությունը 1955 թվականի համեմատությամբ մսի արտադրությունն ավելացրել է 25,8 տոկոսով, կաթինը՝ 27 տոկոսով։ Կոլտնտեսությունը ֆուրաժային յուրաքանչյուր կովից ստացել է 2240 կիլոգրամ կաթ, պլանով սահմանված



1400 կիլոգրամի փոխարեն։ Գերակատարվել է նաև ոչխարների բրդատվության պլանը, զգալի չափով ավելացել է հացահատիկի արտադրությունը, կըրկնապատկվել է բանջարեղենի համախառն բերքը։ Ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 11 ցենտների փոխարեն ստացվել է 15 ցենտներ միջին բերք։ Կոլտնտեսության դրամական եկամուտն ավելացել է 500.000 ռուբլով, հասնելով 1,6 միլիոն ռուբլու։ Յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց կոլտնտեսությունում արտադրվել է 131,5 ցենտներ կաթ, 22,8 ցենտներ միս։ Կոլտնտեսությունը ժամկետից շուտ կատարել և գերակատարել է պետության հանդեպ ունեցած բոլոր տեսակի պարտավորությունները։ Կոլտնտեսության դրամական և բնամթերային եկամուտների ավելացման շնորհիվ կրկնապատկվել են կոլտնտեսականների աշխօրերին տրվելիք դրամն ու բնամթերքը։ Կոլտնտեսությունը յուրաքանչյուր աշխօրին բաժանել է 15 ռուբլի դրամ, 2,5 կիլոգրամ ցորեն և այլ մթերքներ։

Կոլտնտեսությունում վարձատրության կարգի մեջ կատարված փոփոխությունները մեծապես նպաստել են աշխատանքային կարգապահության բարձրացմանը։ Այդ է վկայում այն փաստը, որ չկա որևէ կոլտնտեսական, որն առանց հարգելի պատճառի չաշխատի արտադրության մեջ։

Աշխատանքի ճիշտ կազմակերպման և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման շնորհիվ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում լուրջ հաջողությունների է հասել նաև Արամուս գյուղի «Պայքար» կոլտնտեսությունը։ 1955 թվականի համեմատությամբ, 1956 թվականին կոլտնտեսության ֆուրաժային յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելացել է մոտ 400 կիլոգրամով։ Այստեղ զգալի հաջողություններ կան նաև հանրային տնտեսության մյուս ճյուղերի եկամտաբերության ավելացման գծով։ Այսպես, կոլտնտեսությունը, որը գլխավորապես մշակում է ծխախոտ, անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 21,1 ցենտներ միջին բերք, պլանով նախատեսված 11,8 ցենտների փոխարեն։ Կոլտնտեսության № 3 բրիգադան, որի բրիգադավարն է Հ. Վարդանյանը, յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 28 ցենտներ ծխախոտի բարձրորակ հումք։ Կոլտնտեսությունը 55 հեկտար ծխախոտի պլանտացիայից ստացել է 2 միլիոն 11 հազար ռուբլու եկամուտ։ Բանջարեղենի արտադրության ավելացումը կոլտնտեսությանը հնարավորություն է տվել պետությանը հանձնելու 1350 ցենտներ թարմ բանջարեղեն, կամ պլանը կատարել է 204 տոկոսով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ, նախորդ տարվա համեմատությամբ, անցյալ տարի ավելի քան մեկ միլիոն ռուբլով ավելացել է Արամուսի կոլտնտեսության դրամական եկամուտը, որը հասել է 2.300.000 ռուբլու։ Բնամթերային և դրամական եկամուտների ավելացումը կոլտնտեսությանը հնարավորություն է տվել 1956 թվականին երկու անգամ ավելի շատ եկամուտ բաշխել կոլտնտեսականների աշխօրերին, քան 1955 թվականին։

Կոտայքի շրջանում կոլտնտեսականների նյութական պայմաններն ավելի բարելավելու գործում վճռական նշանակություն ունի խաղողագործության և պտղաբուծության զարգացումը։ Այդ ճյուղերը առավել եկամտաբեր դարձնելու և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունն այդ գործում բարձրացնելու նպատակով պարտիայի շրջկոմը կոլտնտեսություններին խորհուրդ

տվեց այգիները բրիգադաների ներսում ամրացնելու առանձին օղակների, սահմանել հեկտարից ստացվող բերքատվության չափը և կոլտնտեսականներին լրացուցիչ վարձատրություն տալու կարգը։

Այդ սկզբունքով Գառնի գյուղի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության վարչությունը այգեգործական յուրաքանչյուր բրիգադայի ներսում կազմակերպեց մեկական խաղողագործական օղակ, հաստատելով յուրաքանչյուր օղակի անդամների կազմը։ Բացի այդ, կոլտնտեսության Կանոնադրության մեջ փոփոխություններ մտցնելու ժամանակ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը որոշում ընդունեց խաղողի այգիների պլանային բերքատվությունից ավել ստացված բերքի 50 տոկոսը, որպես պարգև-հավելում տալ խաղողագործության մեջ լավ աշխատող կոլտնտեսականներին։

Այդպիսի միջոցառումը բարձրացրեց կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը և պատասխանատվությունը այգիների մշակումը բարելավելու, ագրոմիջոցառումների կոմպլեքսը կիրառելու և բերքատվությունը ավելացնելու գործում։ Հիրավի, անցած գյուղատնտեսական տարվա փորձը ցույց տվեց, որ այդ միջոցառումը տնտեսական մեծ արդյունք է տալիս։ Այդ են ցույց տալիս ներքոհիշյալ աղյուսակում բերված թվերը։

1956 թվականին Գառնի գյուղի կոլտնտեսության խաղողագործ օղակների ստացած բերքը

| Օղակավարի անունը ազգանունը | Օղակում ընդգրկված կոլտնտեսականների թիվը | Օղակին ամրացված հեկտարների քանակը | Պլանով սահմանված մեկ հեկտարից ստացվող բերքը (ցենտներ) | Փաստորեն ստացված է բերք մեկ հեկտարից (ցենտներով) | Պլանով պետք է ստացվեր համախառն բերք (ցենտներով) | Փաստորեն ստացվել է համախառն բերք (ցենտներով) |
|---|---|---|---|---|---|---|
| Ա. Այվազյան | 4 | 5 | 65 | 100 | 325 | 500 |
| Վ. Սուքիասյան | 4 | 5 | 55 | 85 | 275 | 425 |
| Ա. Կարապետյան | 3 | 2 | 60 | 90 | 120 | 180 |
| Մ. Մուրադյան | 5 | 4 | 60 | 90 | 240 | 360 |
| Մ. Հովհաննիսյան | 5 | 5 | 60 | 100 | 300 | 500 |
| Ընդամենը՝ | 21 | 21 | 60 | 93,6 | 1260 | 1965 |

Աղյուսակը ցույց է տալիս, որ խաղողագործական վերոհիշյալ օղակները այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել են 93,6 ցենտներ միջին բերք, իսկ կոլտնտեսության մասշտաբով՝ խաղողի այգիների բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կազմել է 40 ցենտներ։

Համեմատության կարգով նշենք, որ կոլտնտեսությունը խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից 1953 թվականին ստացել է 9 ցենտներ, 1954 թվականին՝ 14 ցենտներ, 1955 թվականին՝ 31 ցենտներ միջին բերք։

Կոլտնտեսություններում սահմանված կարգի համաձայն կոլտնտեսականների աշխօրերը գրանցվում են արտադրական նորմաների համաձայն. այսպիսի պրակտիկան քիչ է նպաստում գյուղատնտեսական մթերքների արտադրության



ավելացմանը, արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող ծախսումների կրճատմանը և աշխօրերի արժեքի բարձրացմանը։ Նկատի ունենալով այդ, անհրաժեշտ նախապատրաստական աշխատանք է կատարվում 1957 թվականին մի շարք կոլտնտեսություններում կոլտնտեսականներին աշխօրերով վարձատրելու գործում որոշ փոփոխություններ կատարել։ Կատարվող փոփոխությունների նպատակն է՝ կոլտնտեսականներին աշխօրեր գրանցել ոչ միայն արտադրական նորմաների համաձայն, այլ նրանց կողմից արտադրած յուրաքանչյուր միավորի համեմատ, ինչպես ներկայումս արվում է ղեկավար աշխատողների նկատմամբ։

Վերցնենք Գառնի գյուղի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության օրինակը, որը մեկ ցենտներ խաղող արտադրելու վրա 1956 թվականին ծախսել է 6,6 աշխօր։ Կոլտնտեսությունը նախատեսում է 1957 թվականին մեկ ցենտներ խաղող արտադրելու վրա ծախսել 5 աշխօր և յուրաքանչյուր հեկտարից ստացվող բերքատվության չափը սահմանել 60 ցենտներ։ Այս դեպքում կոլտնտեսականներին մեկ հեկտար այգու մշակման ու 60 ցենտներ խաղողի ստացման համար կտրվի 300 աշխօր։ Այդ աշխօրերի 75—80 տոկոսը, արտադրական նորմաների համաձայն, ամեն ամիս պետք է գրանցել կոլտնտեսականների հաշվին, որպեսզի նրանք հնարավորություն ունենան ավանս ստանալու։ Աշխօրերի վերջնական հաշվարկը կատարվելու է տարվա վերջին, ըստ որի հեկտարից 60 ցենտներ բերք ստանալու դեպքում կոլտնտեսականներին կտրվի 300 աշխօր, իսկ դրանից ավել ստացված բերքի յուրաքանչյուր ցենտների համար լրացուցիչ կարգով կտրվի ևս 5 աշխօր և ընդհակառակը, սահմանված պլանից յուրաքանչյուր մեկ ցենտներ պակաս խաղողի ստացման դեպքում պակաս կտրվի 5 աշխօր։ Նույն սկզբունքով կոլտնտեսականներին աշխօրեր կտրվեն արտադրված մյուս մթերքների յուրաքանչյուր մեկ միավորի համար։

Կոլտնտեսականներին նյութապես խրախուսելու ձևերը շատ են և Կոտայքի շրջանի առանձին կոլտնտեսություններում 1956 թվականի ընթացքում կիրառվեցին խրախուսիչ մի շարք միջոցներ։ Այսպես, այն կոլտնտեսականները, որոնք կատարում են աշխօրերի պարտադիր մինիմումը և ամբողջ տարին աշխատում են անընդհատ, նրանց տրվում է երկու շաբաթվա վճարովի արձակուրդ, իսկ կոլտնտեսություններում բարեխղճորեն աշխատած և աշխատունակությունը կորցրած 55 տարեկանից բարձր կանանց, 60 տարեկանից բարձր տղամարդկանց համար նշանակվում են աշխօրերով նպաստներ։ Կոլտնտեսությունների հաշվին սանատորիական բուժման են ուղարկվում այն կոլտնտեսականները, որոնք բարեխղճորեն աշխատում են կոլտնտեսությունում։

1956 թվականի ընթացքում ավելի քան 120 կոլտնտեսական կոլտնտեսությունների հաշվին բուժվել և հանգստացել են երկրի առողջարաններում և հանգստյան տներում։

Կոլտնտեսականներին նյութապես շահագրգռելու ձևերից մեկն էլ նրանց ամենամսյա ավանսավորումն է։

Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներում նշված է կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման անհրաժեշտությունը։ Ուղեցույց ունենալով համագումարի որոշումը, շրջանի մի շարք կոլտնտեսությունների վարչություններ և սկզբնական պարտիական կազմակերպություններ որոշակի աշխատանք են կատարում այդ ասպարեզում, որը մեծապես նպաստում է

հանրային տնտեսության զարգացմանն ու ամրապնդմանը: Այդ է ցույց տալիս հետևյալ օրինակը:

Ջրվեժ գյուղի Մյասնիկյանի անվան կոլտնտեսությունը տնտեսապես և կազմակերպչորեն տևականորեն հետ էր մնում, կոլտնտեսությունում ընկած էր կարգապահությունը, կոլտնտեսականների մի զգալի մասը ակտիվորեն չէր մասնակցում կոլտնտեսության աշխատանքներին, որի պատճառով ժամանակին չէին կատարվում դաշտային աշխատանքները: Կոլտնտեսության վարչությունը ստիպված էր լինում դրսից բանվորներ վարձել և այդ նպատակով զգալի քանակությամբ բնամթերային և դրամական միջոցներ ծախսել: Միայն 1955 թվականի ընթացքում կոլտնտեսությունը վարձու բանվորներին վճարել է 282 ցենտներ ցորեն, 5000 ռուբլի դրամ:

Այդպես երկար շարունակել հնարավոր չէր: 1956 թվականի հունվար ամսից կոլտնտեսությունն առաջին անգամ կիրառեց կոլտնտեսականներին ամենամսյա ավանսավորում տալու ձևը, որը տվեց իր դրական արդյունքը. ամրապնդվեց կարգապահությունը, բարձրացավ կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը: Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը հնարավորություն տվեց կոլտնտեսության առջև դրված խնդիրները ժամանակին կատարելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու: Բավական է նշել, որ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացավ 63,6 տոկոսով, կամ ֆուրաժային յուրաքանչյուր կովի կաթնատվությունը՝ մոտ 500 կիլոգրամով, բանջարեղենի համախառն բերքը ավելացավ 500 ցենտներով, եգիպտացորենինը՝ 2500 ցենտներով, հացահատիկինը՝ 500 ցենտներով, ձվի արտադրությունը՝ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ՝ 3 անգամ: Բացի այդ, կոլտնտեսությունն իր ուժերով կառուցեց 2 կիլոմետր երկարությամբ ջրանցք և ոռոգելի դարձրեց շուրջ 200 հեկտար տարածություն:

Բնամթերքների և դրամական եկամուտների ավելացման շնորհիվ կրկնապատկվեց կոլտնտեսականների աշխօրերին տրվելիք եկամուտների քանակը:

Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը մեծ չափով խթանում է հանրային տնտեսության աշխատանքների հաջող կատարմանը, լայնորեն զարկ է տալիս կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնության ծավալմանն ու գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը: Այս տեսակետից առանձնապես ուշագրավ է Եղվարդի Կույբիշևի անվան կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի անասնապահների աշխատանքի օրինակը: Ժամանակին ավանսավորվելով և ստանալով իրենց հասանելիք լրացուցիչ վարձատրությունը, անասնապահները հանդես են բերում նոր նախաձեռնություն, գնալով ավելի են բարելավում անասունների կերակրումն ու խնամքը և ապահովում կովերի կաթնատվության պլանների գերակատարումը: Հիմնականում հենց դրա շնորհիվ է, որ կոլտնտեսությունը շրջանում հասել է կովերի ամենաբարձր կաթնատվության և երրորդ տարին է, ինչ իր ձեռքում է պահում պարտշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ Կարմիր դրոշը:

Եղվարդցիները հանդիսանում են նաև սոցիալիստական մրցության նախաձեռնողներ: Նրանք մրցության մեջ են գտնվում եղբայրական Ադրբեջանի Շամխորի շրջանի Լենինի անվան և Վրաստանի Բոլնիսի շրջանի Ստալինի անվան գյուղատնտեսական արտելների հետ: Բարեկամական այդ համագոր-



ծակցությունը աչքի ընկնող հաջողություններ է բերում Եղվարդ գյուղի կոլտնտեսությանը:

Մայակովսկի, Ակունք, Նորագյուղ, Զորաղբյուր, Մհուր, Ջրաբեր, Գետամեջ, Նուռնուս, Քանաքեռ գյուղերի կոլտնտեսությունները, արտադրության մեջ արմատավորելով եղվարդցիների փորձը, 1956 թվականին յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելացրին 350—774 կիլոգրամով:

Հաշվի առնելով այդ բոլորը, շրջանի կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարում առաջավոր կոլտնտեսությունների ոչ միայն աշխատանքային, այլև կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ ունեցած փորձը լայնորեն տարածելու և արմատավորելու համար: Ագիտատորների, պատի թերթերի, արտադրական խորհրդակցությունների, դասախոսությունների և այլ միջոցներով պարտիական կազմակերպությունները ցույց են տալիս, թե ինչպես կոլտնտեսություններում վարձատրության ճիշտ կազմակերպումը, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը այն կարևոր ազդակներից են, որոնք խոշոր չափով նպաստում են հանրային տնտեսության ամրապնդմանն ու գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, կոլտնտեսականների բարեկեցության մակարդակի բարձրացմանը:

Սակայն չի կարելի ասել, որ Կոտայքի շրջանում ամեն ինչ արված է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ: Այդ գործում շատ կոլտնտեսություններում կան էական թերություններ: Զառ, Կապուտան, Սարանիստ, Գողթ գյուղերի կոլտնտեսությունների վարչությունները և սկզբնական պարտիական կազմակերպությունները աչքաթող են արել կոլտնտեսականներին նյութապես շահագրգռելու կարևոր խնդիրը:

Այդ կոլտնտեսություններում կոլտնտեսականները ամեն ամիս չեն ավանսավորվում, առաջավորները չեն խրախուսվում: Կոլտնտեսականների որոշ մասը ակտիվ կերպով չի մասնակցում հանրային աշխատանքներին, բայց օգտվում է կոլտնտեսականների իրավունքներից ու արտոնություններից: Այդ տեսակետից բնորոշ է հետևյալ փաստը. Կապուտան գյուղի կոլտնտեսությունում 110 կոլտնտեսական չեն կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը, որոնց նկատմամբ կոլտնտեսության վարչությունը ոչ մի միջոց ձեռք չի առել: Դա հասցրել է նրան, որ կոլտնտեսությունում ձգձգվում են դաշտային աշխատանքները, լավ չեն մշակվում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները, անբավարար վիճակումն է անասունների խնամքն ու կերակրումը: Այս բոլորից հետո պատահական չէ, որ Կապուտան գյուղի կոլտնտեսությունում խիստ ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը: Կոլտնտեսությունը պլանով նախատեսված 1200 կիլոգրամի փոխարեն յուրաքանչյուր կովից ստացել է 894 կիլոգրամ կաթ, հեկտարից 4 ցենտներ հացահատիկ՝ 10 ցենտների դիմաց: Ավելին, Սարանիստ, Գեղադիր, Ողջաբերդ և Հացավան գյուղերի կոլտնտեսություններում 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելի քիչ գյուղատնտեսական մթերքներ արտադրվեց: Այդ կոլտնտեսությունների որոշ ղեկավար ընկերներ ամեն կերպ փորձում են նման վիճակը բացատրել միայն կլիմայական անբարենպաստ պայմաններով: Դրա հետ, իհարկե,

համաձայնվել չի կարելի։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մի շարք կոլտնտեսություններում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության ցածր լինելու հիմնական պատճառը ոչ միայն անբարենպաստ եղանակն է, այլև աշխատանքի վատ կազմակերպումը, եղած հնարավորությունների անբավարար օգտագործումը, ինչպես նաև կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման անտեսումը։ Այդ է ցույց տալիս հետևյալ օրինակը։ Էլար և Եղվարդ գյուղերի կոլտնտեսությունները գտնվում են հողակլիմայական նույնանման պայմաններում, սակայն ունեն բոլորովին տարբեր ցուցանիշներ։ Էլար գյուղի կոլտնտեսությունում ոչ միայն ցածր է գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակը, այլև զգալի չափով բարձր են արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսումները։ Այդ կարող ենք ցույց տալ հետևյալ փաստերով։

Արտադրանքի մեկ միավորի (ցենտների) վրա կատարված ծախսումները Էլար և Եղվարդ գյուղերի կոլտնտեսություններում (ռուբլիներով)

| Կոլտնտեսությունը | Հացահատիկ | Բանջարեղեն | Միս կե ն. քաշով | Կաթ | Յուղ | Բուրդ | Պանիր |
|---|---|---|---|---|---|---|---|
| Էլար . . . . . . . . . | 139 | 115 | 296 | 120 | 1550 | 2750 | 500 |
| Եղվարդ . . . . . . . . | 80 | 20 | 240 | 65 | 1210 | 1800 | 470 |

Աղյուսակը ցույց է տալիս, որ Էլար գյուղի կոլտնտեսությունում յուրաքանչյուր մեկ ցենտներ հացահատիկ արտադրելու վրա, Եղվարդ գյուղի համեմատությամբ, ավել է ծախսվել 56 ռուբլի, մեկ ցենտներ բանջարեղենի վրա՝ 95 ռուբլի, մեկ ցենտներ մսի վրա՝ 56 ռուբլի, մեկ ցենտներ կաթի վրա՝ 55 ռուբլի, մեկ ցենտներ յուղի վրա ՝ 340 ռուբլի, մեկ ցենտներ բրդի վրա՝ 950 ռուբլի և մեկ ցենտներ պանրի վրա՝ 30 ռուբլի։

Գյուղատնտեսական մթերքների մեկ միավորի վրա կատարված ծախսումները Էլար գյուղի կոլտնտեսությունում բարձր են այն պատճառով, որ այստեղ անբավարար են օգտագործվում եղած հնարավորություններն ու ռեզերվները, ցածր է հողագործության և անասնաբուծության կուլտուրան։ Բացի այդ, կոլտնտեսության վարչությունը չի կենսագործում Կանոնադրության մեջ կատարված փոփոխությունները, հետևողական աշխատանք չի կատարում կոլտնտեսությունում կարգապահությունն ամրապնդելու, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և նրանց վաստակած աշխօրերի դիմաց ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ և դրամ տալու համար։

Շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է ամենակարճ ժամկետում վերացնել կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման ասպարեզում գոյություն ունեցող թերությունները, ավելի արդյունավետ օգտագործել եղած հնարավորություններն ու ռեզերվները և նվազագույն ծախսումներ կատարելու միջոցով ապահովել ավելի շատ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

---

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՕՐՈՔ

Ս. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Կապիտալիստական հասարակարգը, սկսած իր ծագման և զարգացման արշալույսից, քայքայման ու ավերման է ենթարկել միլիոնավոր գյուղացիական և արհեստավորական տնտեսություններ՝ ճանապարհ հարթել իր զարգացման համար։ Արդյունաբերական հեղաշրջումն Անգլիայում, 1789 թվականի ռևոլյուցիան Ֆրանսիայում, 1848 թվականի ռևոլյուցիան մի շարք եվրոպական երկրներում իրավական ակտերով սրբագործեցին ժամանակակից կապիտալիզմի ողջ «պատմությունը, որը մարդկության տարեգրության մեջ գրված է արյան ու հրի բոցավառ լեզվով» (Մարքս)։

Կապիտալիզմի անարգել զարգացման համար անհրաժեշտ էին ոչ միայն արտադրության միջոցներ՝ կապիտալ, այլև այդ արտադրության միջոցները շարժման մեջ դնող ազատ բանվորական ձեռքեր։ Սակայն, այդպիսի ազատ բանվորական ձեռքեր կապիտալիզմի զարգացման նախնական շրջանում չկային, նրանք գտնվում էին գյուղում և մեծ մասամբ ճորտական ու կիսաճորտական կախման մեջ էին իրենց կալվածատերերից։

Արագությամբ զարգացող կապիտալիստական արդյունաբերության համար անհրաժեշտ էին ֆեոդալական սահմանափակումից զերծ ֆերմերական տնտեսություններ գյուղում՝ զարգացող արդյունաբերության համար հումքի հարուստ բազաներ ստեղծելու նպատակով, մի կողմից, և մյուս կողմից՝ ազատ բանվորական ձեռքեր։

Կապիտալի նախասկզբնական կուտակման շրջանը ոչ այլ ինչ է, բայց եթե կապիտալիզմի անարգել զարգացման այս երկու հիմնական նախապայմաններ ստեղծող մի շրջան։ Այս շրջանումն է, որ միլիոնավոր աշխատավոր գյուղացիներ և արհեստավորներ սեփականազրկվում են և իրենց ծառայություն առաջարկում արտադրության միջոցների սեփականատեր կապիտալիստներին։

Ուրեմն, «այսպես կոչված նախասկզբնական կուտակումը ոչ այլ ինչ է, եթե ոչ արտադրողին արտադրության միջոցներից անջատելու պատմական պրոցես» (Մարքս, Կապիտալ, հ. I, էջ 747)։ Այս պատմական պրոցեսի հետևանքով ստեղծվեց մարդու կողմից մարդու «ազատության» սկզբունքի վրա հիմնված շահագործումը։ Հետևապես, կապիտալիզմը չվերացրեց և չէր էլ կարող վերացնել շահագործումը։ Նա իր զարգացման ընթացքում ձևափոխեց միայն ռաբի ստրկությունը, այսինքն՝ բացարձակ ստրկությունը փոխարինեց վարձու, քողարկված ստրկությամբ։

Կապիտալիզմի աճման նախնական փուլում արտադրության տեխնիկական հագեցվածությունը գտնվում էր իր զարգացման ամենաստորին աստիճանի վրա, երբ գործադրվող ամբողջ կապիտալի փոփոխուն մասը՝ աշխատավարձը, դեռ գերազանցում էր նրա հաստատուն մասին, երբ մեծ թափով զարգանում էր վարձու բանվորների աճող պահանջն արդյունաբերության մեջ։ Հասկանալի է, որ այս պահանջը բավարարելու համար սեփականազրկման էին ենթարկվում գյուղի և քաղաքի սակավազոր աշխատավորական տնտեսությունները։ Սակայն, կապիտալը չի կարող երկար ժամանակ հանդուրժել այնպիսի դրություն, երբ արդյունաբերության մեջ գործադրվող կապիտալի փոփոխուն մասը գերազանցի նրա հաստատուն մասին։

Կապիտալիզմի ամենախոշոր առավելությունը հենց այն է, որ նա հսկայական քայլերով առաջ մղեց արտադրության ողջ տեխնիկան և այդպիսով փոփոխման ենթարկեց կապիտալի հաստատուն և փոփոխուն մասերի հարաբերությունը՝ առաջինի ավելի արագ աճման ուղղությամբ։ Այս հանգամանքը կարևորագույն նշանակություն ունի բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության բացարձակ և հարաբերական աղքատացման համար։ Կապիտալիստական արդյունաբերության տեխնիկական հագեցվածությունը արմատապես փոփոխման է ենթարկում այն ընդհանուր արտադրական պայմանները, որոնց մեջ աշխատում են մարդկության համար բարիքներ ստեղծող բանվորները։ Անասելի արագությամբ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, աշխատանքի լարվածությունը։ Առաջ, երբ արտադրության տեխնիկան գտնվում էր իր խանձարուրի շրջանում, բանվորն էր գործադրում և կառավարում գոյություն ունեցող պրիմիտիվ տեխնիկան, մինչդեռ այժմ, երբ արտադրողական ուժերի զարգացումը հսկայական չափերի է հասել, բանվորը կապիտալի երկրում փաստորեն զրկված է իր անհատականությունից և դարձել է անկենդան տեխնիկայի կենդանի մասնիկը։

Արտադրության տեխնիկայի այս անօրինակ աճման և արտադրողականության բարձրացման հետևանքով մեծ քանակությամբ բանվորներ են աշխատանքից զրկվում և ստեղծվում է գործազուրկների հսկայական բանակ կամ, այլ կերպ ասած, հարաբերական գերբնակչություն։

Գաղտնիք չէ, որ արտադրության միջոցների զարգացման հետևանքով աշխատանքի արտադրողականության բարձրացումը միաժամանակ նշանակում է աշխատուժի արժեքի իջեցում, որովհետև, համեմատած անցյալի հետ, ավելի քիչ աշխատանք կպահանջվի այն կենսամթերքների և ապրանքների արտադրության համար, որոնք անհրաժեշտ են փոխհատուցելու բանվորի աշխատուժի արժեքի դիմաց՝ բանվորի և նրա ընտանիքի անդամների գոյությունն ապահովելու համար։ Արտադրության կապիտալիստական եղանակի ժամանակ բանվորը, որպես աշխատավարձ գոնե պետք է ստանա այնքան, որքան անհրաժեշտ է նրա սպառած ուժերը վերականգնելու և իր ընտանիքի անաշխատունակ անդամների նվազագույն պահանջմունքները բավարարելու համար։ Սակայն, այդ պահանջմունքներն անփոփոխ մեծություն չեն բոլոր ժամանակների և երկրների համար։

Արտադրողական ուժերի զարգացմանը զուգընթաց ավելի կամ պակաս արագությամբ փոփոխման են ենթարկվում բանվորների և նրանց ընտանիքի կենսապայմաններն ու պահանջմունքները։



Եթե մի 50—60 տարի առաջ բանվորից չէր պահանջվում, որպեսզի նա ընդհանուր կրթության գոնե նվազագույնն ունենա, ապա այսօր, տեխնիկայի զարգացման ներկա պայմաններում, ընդհանուր կրթությունից զատ նա պետք է ձեռք բերի նաև տեխնիկական կրթության նվազագույնը, որպեսզի կարողանա կապիտալիստի համար արտադրողաբար աշխատել։

Եթե մի երկու տասնամյակ առաջ կենցաղային անհրաժեշտություն չէին համարվում ասենք լվացքի մեքենան, սառցարանը, ռադիո ընդունիչը և էլեկտրական կոմունալ-կենցաղային այլ իրեր և հարմարանքներ, ապա դրանք այսօր զարգացած կապիտալիստական երկրների բանվորների ընտանիքների համար անհրաժեշտություն են ներկայացնում։ Նույնը կարելի է ասել կինոյի, թատրոնի, համերգների և կուլտուրական այլ օջախներ հաճախելու անհրաժեշտության մասին։ Սակայն, պետք է ասել, որ բանվորների աշխատուժ ապրանքի արժեքը վճարելիս շատ հաճախ կապիտալիստը այսօր անտեսում է բանվորի և նրա ընտանիքի պահպանման կենսամինիմումի անհրաժեշտ մասը կազմող վերոհիշյալ կուլտուր-կենցաղային պահանջների բավարարումը և ձգտում է բավականանալ միայն բանվորի և նրա ընտանիքի անդամների ֆիզիկական գոյությունն ապահովող նվազագույն վարձատրմամբ։

Կապիտալիստն օգտագործելով արտադրության միջոցների մասնավոր սեփականատիրական իր իրավունքը, ամեն կերպ աշխատում է բանվորի աշխատուժի արժեքից ցածր վճարել։ Մարքսը հանգամանորեն վերլուծելով կապիտալիզմի բուն էությունից բխող այս երևույթը, եկավ այն եզրակացության, որ բանվորի «աշխատավարձը չի բարձրանում, կամ թե բարձրանում է անբավարար չափով, որպեսզի նա կարողանա հատուցել միջոցների աճած արժեքը, ապա աշխատուժի գինն իջնում է աշխատուժի արժեքից ավելի ցածր և բանվորի կենսամակարդակն ավելի է վատանում» (Մարքս, Էնգելս, Ընտիր երկեր, հատ. I, էջ 358, 1941 թ.)։

Այսպիսով, կապիտալի կուտակման ու զարգացման զուգընթաց, ազգային եկամտի մեջ բարձրանում է կապիտալիստների եկամտի՝ հավելյալ արժեքի տեսակարար կշիռը, իսկ դրան հակակշիռ իջնում է կապիտալիստական հասարակարգի ամբողջ հարստությունն ստեղծող բանվորների և ողջ աշխատավորության եկամտի տեսակարար կշիռը։

Հավելյալ արժեքի հարատև մեծացումն ի հաշիվ բանվոր դասակարգի եկամուտների, կազմում է կապիտալիստական արտադրաեղանակի զարգացման տենդենցն ու բուն էությունը։

Կասկածից վեր է, որ կապիտալիստական արտադրության բարենպաստ զարգացման շրջանում տեղի է ունենում բանվորների տնտեսական վիճակի մասնակի բարելավում, սակայն, այդ «նշանակում է փաստորեն, թե այն ոսկե շղթայի չափերն ու ծանրությունը, որ ինքը՝ վարձու բանվորն արդեն կռել է իր համար, թույլ են տալիս այդ շղթայի լարումը մի քիչ թուլացնել» (Մարքս, Կապիտալ, հ. I, էջ 648)։

Սակայն, այդ մասնակի բարելավումը տեղի է ունենում կապիտալիստական արտադրության բարեհաջող զարգացման պայմաններում միայն, բայց երբ վրա է հասնում ամեն ինչ խժռող, ամեն ինչ կլանող արդյունաբերական ճգնաժամը, որն անբաժան է կապիտալիստական սիստեմից, այն ժամանակ «բանվորական զանգվածները կենսամիջոցների կարոտություն են քաշում լոկ

այն պատճառով, որ նրանք չափից ավելի կենսամիջոցներ են արտադրել» (Էնգելս, Անտի-Դյուրինգ, էջ 353—354, 1932 թ.)։

Կապիտալիզմի երդվյալ ջատագովներն ամեն կերպ աշխատում են «ապացուցել», որ կապիտալիստական տնտեսակարգը ամենակատարյալ տնտեսակարգն է, որտեղ բոլոր դասակարգերը համերաշխ կերպով կարող են աշխատել և բարձրացնել իրենց տնտեսական վիճակը։ ԱՄՆ-ի իմպերիալիստական բուրժուազիայի վարձու գրչակները երգում են այն մասին, որ կապիտալիզմի զարգացման նոր էպոխան ԱՄՆ-ում հատկանշական է նրանով, որ ստեղծվել է մի նոր կապիտալիզմ, համաժողովրդական կապիտալիզմ։

Նրանք գրում են, որ «վերջին քսան տարում ԱՄՆ-ի տնտեսական կյանքում տեղի ունեցած փոփոխությունները ամբողջությամբ առած, կատարյալ ռևոլյուցիոն բնույթ են կրել և կարծես թե ստեղծվել է նոր տնտեսական կարգ, արտադրության և ապրանքների ավելի արդարացի բաշխման կարգ»։

Մի շարք փաստական տվյալներ անհերքելի կերպով կապացուցեն, որ ընդհակառակը, քանի կապիտալիզմը զարգանում է, այնքան աղքատանում է այն դասակարգը, որը բոլոր տեսակի բարիքների ստեղծողն է կապիտալիստական հասարակարգում և հարստանում է այն դասակարգը, որի մասնակցությունն արտադրության պրոցեսին անմիջական չէ, այլ միջնորդական է։

Այսպես, օրինակ, Ֆրանսիայի արհեստակցական միությունների՝ աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի տվյալներով, 4 հոգուց բաղկացած բանվորական ընտանիքի ապրուստի նվազագույն բյուջեն դեռ 1949/1950 թվականներին կազմել է 31 հազար ֆրանկ, մինչդեռ աշխատանք ունեցող բանվորների 50 տոկոսի աշխատավարձը չի գերազանցել 22 հազար ֆրանկից։ Իսկ բանվորների ընդհանուր թվի 25 տոկոսի աշխատավարձը չի գերազանցել 18 հազար ֆրանկից, այսինքն՝ նրանք կարողացել են իրենց ստացած աշխատավարձով բավարարել իրենց նվազագույն պահանջները միայն 60 տոկոսի չափով։

Եթե 1938 թվականին բանվորների եկամուտը՝ աշխատավարձը, կազմել է Ֆրանսիայի ազգային ողջ եկամտի 45 տոկոսը, ապա 1952 թվականին իջել է մինչև 30 տոկոսի։

Աշխատավորության վիճակն ավելի սոսկալի է Իտալիայում։ Աշխատավորների դրությունն ուսումնասիրող հանձնաժողովի տվյալներով, 1955 թվականին ուսումնասիրված 11592 հազար ընտանիքների 11,7 տոկոսի՝ 1357 հազար ընտանիքի տարեկան եկամուտը չի գերազանցում 4—5 հազար լիրայից, մինչդեռ 4 հոգուց բաղկացած ընտանիքի պահպանման նվազագույն բյուջեն կազմում է 50—60 հազար լիրա։ 1345 հազար ընտանիքների, կամ 11,6 տոկոսի տարեկան եկամուտը չի գերազանցում 10—12 հազար լիրայից. իսկ 7616 հազար ընտանիքների կամ ուսումնասիրված ամբողջ ընտանիքների 65,7 տոկոսի տարեկան եկամուտը չի գերազանցել 22—40 հազար լիրայից և միայն 1274 հազար ընտանիքների տարեկան վաստակած եկամուտն է, որ ապահովում է կենսամինիմումը։

Ճապոնիայում բանվորական միջին ընտանիքի ապրուստի նվազագույն բյուջեն 1952 թվականին կազմել է 30 հազար իեն, մինչդեռ բանվորների միջին աշխատավարձը չէր գերազանցում 13 հազար իենից։



Արևմտյան Գերմանիայում, արհեստակցական միությունների տվյալներով, մեկ միջին ընտանիքի համար պահանջվում է 4260 մարկ, մինչդեռ 24 միլիոն բանվորների տարեկան միջին եկամուտը չի էլ գերազանցում 2400 մարկից։ Իսկ եթե հաշվի առնենք նաև գործազուրկ բանվորներին, ապա այդ գումարը չի գերազանցի 1700—1800 մարկից, այսինքն՝ այդ գումարով հնարավոր կլինի բավարարել նվազագույն պահանջի միայն 40 տոկոսը։

1948 թվականին ԱՄՆ-ի արդյունաբերության մեջ աշխատող բանվորներն իրենց աշխատանքով 168,2 միլիարդ դոլարի նոր արժեք են ստեղծել, մինչդեռ նրանց ստացած աշխատավարձը կազմել է միայն 43,5 միլիարդ դոլար, կամ արտադրած ողջ արժեքի 25,8 տոկոսը. 1949 թվականին արտադրված է եղել 153,3 միլիարդ դոլարի նոր արժեք, իսկ բանվորները որպես աշխատավարձ ստացել են միայն 38,6 միլիարդ դոլար կամ իրենց իսկ աշխատանքով ստեղծված արժեքների 25 տոկոսը։ 1950 թվականին արտադրված է եղել 188,4 միլիարդ դոլարի նոր արժեք, իսկ բանվորների աշխատավարձը կազմել է 39,9 միլիարդ դոլար կամ ամբողջ արտադրածի 21 տոկոսը միայն։ 1952 թվականին ողջ բանվորության, աշխատավոր գյուղացիների և արհեստավորների բաժինը ազգային եկամտի մեջ կազմել է միայն 25,4 տոկոսը։

Իրական փաստերն ասում են, որ ԱՄՆ-ի 55 միլիոն տնտեսություններից համարյա 38 միլիոն տնտեսությունը կամ ամբողջ տնտեսությունների 69 տոկոսը 1953 թվականին ունեցել է 1.000-ից մինչև 5.000 դոլարի եկամուտ։ Եթե վերցնենք այդ 38 միլիոն տնտեսությունների ամբողջ եկամուտը և բաժանենք տնտեսությունների թվի վրա, ապա միջինը կստացվի ոչ ավելի քան 3000 դոլար, մինչդեռ Կալիֆորնիայի համալսարանի պրոֆեսոր Քելլերի կազմած բավական համեստ բյուջեն 4 հոգուց բաղկացած բանվորական ընտանիքի պահպանման համար պահանջում է նվազագույնը՝ 5400 դոլարի եկամուտ։

Վերը հիշատակված փաստական տվյալները մի ավելորդ անգամ ապացուցում են, որ անգամ կապիտալիստական ամենահարուստ երկրում, ինչպիսին է ԱՄՆ-ը, աշխատանք ունեցող ազգաբնակչության 50—60 տոկոսը ի վիճակի չէ իր ստացած աշխատավարձով դուրս գալու ապրուստի աղքատիկ շրջանակներից. մինչդեռ ազգաբնակչության ամենաչնչին տոկոսն իր ձեռքը կենտրոնացնելով աշխատավորների արյուն քրտինքով ստեղծված բարիքների խոշորագույն մասը, անասելի ցոփ կյանք է վարում։

1955 թվականի հոկտեմբեր ամսվա տվյալներով այսպես կոչված «ժողովրդական կապիտալիզմի» երկրում՝ ԱՄՆ-ում ազգաբնակչության մեկ տոկոսը իր ձեռքն էր կենտրոնացրել ազգային ողջ հարստության 60 տոկոսը, 12 տոկոսին բաժին էր ընկնում հարստության 32 տոկոսը, իսկ ազգաբնակչության 87 տոկոսը տիրապետում էր ազգային հարստության միայն 8 տոկոսին։

Անհերքելի փաստերով կարելի է ապացուցել, որ ԱՄՆ-ի կառավարության հարկային քաղաքականությունը, ընդհակառակը, լիակատար չափով ապահովում է խոշորագույն կապիտալիստների անարգել զարգացումը։ Օրինակ՝ միայն 1955/56 տնտեսական տարում կառավարությունը ֆեդերալ բյուջեի համար աշխատավորական խավերից 1,8 միլիարդ դոլարով ավելի հարկ է գանձել, քան գանձված է եղել 1954/55 տնտեսական տարում, մինչդեռ խո-

շորագույն կապիտալիստական ընկերությունններն այդ ժամանակամիջոցում պակաս հարկ են վճարել 1,4 միլիարդ դոլարի չափով։

Այստեղից պետք է եզրակացնել, թե որքան շինծու և կեղծ է կապիտալիզմի ջատագովների այն հայտարարությունը, որ իբր թե ԱՄՆ-ի կառավարությունը իր արդարացի հարկային քաղաքականության և եկամուտների բաշխման միջոցով հարուստներին իջեցնում և աղքատներին բարձրացնում է միջին դասակարգերի կարողության աստիճանին և այդպիսով ստեղծվում է «դեմոկրատական» կապիտալիզմ ԱՄՆ-ում։

Ֆ. Լանդբերգն իր «Ամերիկայի 60 ընտանիքները» ուշագրավ աշխատության մեջ բազմաթիվ փաստերով ցույց է տալիս, թե ինչպես են ապրում Միացյալ Նահանգներում, այդ կարծեցյալ դրախտավայրում։ Հիշյալ հեղինակի տվյալներով, դեռ 1936 թվականին ԱՄՆ-ի կապիտալիստների 4000 կանանց և աղջիկների արդուզարդի վրա ծախսված է եղել 85 միլիոն դոլար, այսինքն՝ այնքան, որքան մեկ տարվա ընթացքում հենց նույն Միացյալ Նահանգներում հազիվ կկարողանային վաստակել 28500 բանվորներ։

ԱՄՆ-ի մի ավտոկոմպանիայի տիրոջ այրին՝ տիկին Խորեյսը, իր աղջկան՝ Դելֆինային, նրա անվանակոչության օրը նվիրել է մի մարգարտաշար՝ 800 հազար դոլարի արժողությամբ։ Մի այլ միլիոնատերի աղջիկ 600 հազար դոլար վճարել է մի զույգ ապարանջանի, 65 հազար դոլար՝ մի զարդասեղանի և 75 հազար դոլար՝ թատրոնական մի հեռադիտակի համար, իսկ տիկին և պարոն Դոգերտիները 250 հազար դոլար են ծախսել իրենց երեխայի ծննդյան առթիվ կազմակերպված խնջույքի վրա։

Այս փաստերը լավագույն ապացույց են այն բանի, որ իրոք արտադրության կապիտալիստական սիստեմի ժամանակ հասարակության մի բևեռում՝ մարդկության համար բոլոր բարիքներ արտադրողների բևեռում, կուտակվում է աղքատությունն ու թշվառությունը, իսկ մյուս՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականատեր կապիտալիստների բևեռում՝ հարստությունն ու ցոփ կյանքը։

Բանվոր դասակարգի ընդհանուր աղքատացման մասին բավական շատ են գրել, բայց Մարքսն առաջինն էր, որ բանվորների բացարձակ և հարաբերական աղքատացումը կապեց կապիտալի կուտակման, կապիտալիստական արտադրաեղանակի հետ։ Կապիտալի կուտակմանը զուգընթաց փոխվում են արտադրության միջոցները, ձեռքի աշխատանքին փոխարինում է մեքենայական աշխատանքը, արագությամբ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը. քայքայման են ենթարկվում հազարավոր սակավազոր արտադրական միավորներ՝ չդիմանալով զարգացած կապիտալիստական արտադրության մրցմանը և, այսպիսով, միլիոնավոր բանվորներ փողոց են շպրտվում, որպես ավելորդ ձեռքեր։ Արդյունաբերության տեխնիկական զինվածության հետ զուգընթաց կատարվում է նաև կապիտալի կենտրոնացում ու համակենտրոնացում, որի ժամանակ հսկայական կապիտալներ են կուտակվում փոքրաթիվ մարդկանց ձեռքին, որոնք օգտագործում են իրենց մենաշնորհ դիրքը բանվոր դասակարգի շահագործումն ու ճնշումն ուժեղացնելու համար։

Գործազուրկների այն հսկայական բանակը, որը կապիտալիզմի զարգացման անբաժան ուղեկիցն է, բանվոր դասակարգի բացարձակ և հարաբե-



րական աղքատացման հիմնական գործոններից մեկն է՝ բանվորների աշխատավարձը ֆիզիոլոգիական մինիմումի հասցնելու տեսակետից։ Այսպիսի դեպքերում բանվորների աշխատուժի վարձատրությունը ցածր է լինում նրա արժեքից։ Այս այն հիմնական լծակներից մեկն է, որի օգնությամբ կապիտալիստներն ընդհանուր աղքատացման դուռն են հասցնում բանվորներին։ Բանվորների բացարձակ և հարաբերական աղքատացումը կապիտալիզմի արտադրաեղանակի ծնունդն է և նրա էությունից բխող սոցիալական երևույթ. «կապիտալիստական հիմունքներով տեղի ունեցող արդյունաբերական թռիչքը բանվոր զանգվածների աղքատությունն ու թշվառությունը դարձրեց հասարակության գոյության պայմանը» (Էնգելս, Անտի-Դյուրինգ, էջ 330, 1932 թ.)։

Կապիտալիզմի երդվյալ ջատագովները բանվոր դասակարգի աղքատացման պատճառը համարում են հենց իրենց՝ բանվորներին։ Նրանք գտնում են, որ բանվորները, հաշվի չառնելով իրենց ունեցած եկամուտը, անհաշիվ կերպով աճում են և թշվառներով լցնում մեր աղքատիկ երկրագունդը։ Մալթուսը և նոր մալթուսականները գտնում են, որ երկրագնդի վրա կենսամիջոցների արտադրությունը աճում է թվաբանական պրոգրեսիայով, այսինքն՝ 1, 2, 3, 4, 5 և այլն, իսկ ազգաբնակչությունը՝ երկրաչափական պրոգրեսիայով, այսինքն՝ 1, 2, 4, 8, 16 և այլն։ Ազգաբնակչության այս անօրինակ աճը, ասում են նրանք, հետևանք է աշխատավորության անզուսպ, ոչ ժուժկալ կյանքի և պատճառը՝ գոյություն ունեցող աղքատության։

Այստեղից ելնելով նրանք առաջարկում են այդ վիճակից «դուրս գալու» իրենց դեղատոմսը՝ «սահմանափակել բանվորների ամուսնությունը» և պատերազմների ու համաճարակների միջոցով երկրագնդի վրա ներկայումս եղած ազգաբնակչության քանակը՝ 2,5 միլիարդ հոգուց իջեցնել մինչև 800—900 միլիոն հոգու։ Մարդատյացների այս «թեորիան» ինքն է խոսում իր մասին։ Էնգելսը Մալթուսի այս «թեորիան» անվանել է ամենազարշելին եղած բուրժուական բոլոր թեորիաների մեջ։ Մանրամասնորեն վերլուծելով Մալթուսի «թեորիայի» ողջ էությունը, Էնգելսը գալիս է հետևյալ եզրակացության— «որ ավելցուկային բնակչությունը, կամ ավելցուկային աշխատուժը միշտ կապված է ավելցուկային հարստության, ավելցուկային կապիտալի և ավելցուկային հողային սեփականության հետ։ Բնակչությունը չափազանց մեծ է լինում միայն այնտեղ, որտեղ չափազանց մեծ են արտադրողական ուժերն ընդհանրապես...»։ Այսպիսով, «կարիք կա՞ արդյոք, որ ես ավելի մանրամասնորեն շարադրեմ այդ զզվելի, ստոր վարդապետությունը, բնության և մարդկության դեմ ուղղված այդ զարշելի սրբապղծությունը, և հետաքննեմ նրա հետագա հետևությունները։ Ահա այստեղ է, որ մեր առջև վերջապես հանդես է գալիս տնտեսագետի անբարոյականությունն իր ամենաբարձր ձևով։ Ի՞նչ են իրենցից ներկայացնում մենաշնորհների սիստեմի բոլոր պատերազմներն ու սարսափներն այս թեորիայի համեմատությամբ» (Մարքս, Էնգելս, Երկերի ժող. հատ. I, էջ 565—566, 1955 թ., ռուսերեն)։

Մարքսիստական տնտեսագիտությունը, վերլուծելով բանվոր դասակարգի բացարձակ և հարաբերական աղքատացման պատճառները, գտնում է միաժամանակ, որ բանվորների բացարձակ աղքատացում ասելով այն չպետք է հասկանալ այնպես, որ իբր թե տարեցտարի ընկնում է բանվորների անվանական ու ռեալ աշխատավարձը։ Այդպիսի մեկնաբանությունը մեզ աբ-

սուրդի կհասցներ։ Աշխատուժի արժեքը, ինչպես ասել ենք վերևում, բոլոր ժամանակների, երկրների և բոլոր ազգությունների համար մի մշտական, անփոփոխ մեծություն չէ։ Այլ է բանվորների աշխատուժի արժեքը Ցեյլոնում, Բրազիլիայում, Մեքսիկայում, Իրաքում, Եգիպտոսում և այլ՝ ԱՄՆ-ում, Անգլիայում, Արևմտյան Գերմանիայում, Ֆրանսիայում և այլն։ Կենցաղային և կուլտուրայի որոշ էլեմենտները չեն կազմում առաջին խումբ երկրների բանվորների անհրաժեշտ պահանջը, մինչդեռ դրանք կենսական անհրաժեշտություն են երկրորդ խումբ երկրների բանվորների համար։

Հայտնի է, որ աշխատավարձը ոչ այլ ինչ է, բայց եթե աշխատուժի գինը՝ արտահայտված դրամով։ Ինչպես որ ամեն մի ապրանքի գինը կարող է նրա արժեքից ցածր կամ բարձր լինել, նույնպես և աշխատավարձը կապիտալիստական արդյունաբերության վերելքի շրջանում մերթ հավասարվում է աշխատուժ ապրանքի արժեքին, բայց իբրև կանոն, առանձնապես արդյունաբերության լճացման և ճգնաժամերի շրջանում, աշխատուժ ապրանքի գինը ցածր է ընկնում նրա արժեքից։ Այդ դեպքում հսկայական բացասական ներգործություն է ունենում գործազուրկների բանակը, որն ամեն կերպ պատրաստ է ամենաչնչին վճարով փոխարինելու իր աշխատավարձի բարձրացման համար պայքարող բանվորներին։ Բանվորների կազմակերպված պայքարի շնորհիվ երբեմն բարձրանում է նրանց ռեալ աշխատավարձը, սակայն նա միշտ ետ է մնում նրանց նվազագույն պահանջմունքները բավարարելուց։ Ահա այս կարևորագույն հանգամանքը պետք է հաշվի առնել, երբ խոսում ենք կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի բացարձակ աղքատացման մասին։ Մի քանի փաստական տվյալների հրապարակումը անառարկելիորեն կապացուցեն, որ իրոք խզում կա բանվորների ստացած աշխատավարձի և նրանց կենսամինիմումը բավարարելու միջև։ Մեր օրինակը նորից վերցնում ենք «դեմոկրատական» կապիտալիզմի երկրից՝ ԱՄՆ-ից, որտեղ կապիտալիզմի ջատագովների ասելով, աստիճանաբար վերանում է բանվորների և կապիտալիստների միջև եղած սոցիալական անդունդը։

Կալիֆորնիայի համալսարանի պրոֆ. Քելլերի գլխավորած հանձնաժողովի կազմած կենսամինիմումի բյուջեն 4 հոգուց բաղկացած բանվորական ընտանիքի համար ԱՄՆ-ում և բանվորի ստացած տարեկան միջին աշխատավարձը[1]):

| Տարեթիվը | Պրոֆեսոր Քելլերի կազմած նվազագույն ծախսերի տարեկան բյուջեն | ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության մեջ աշխատող բանվորի տարեկան միջին աշխատավարձը | Բյուջեի ո՞ր տոկոսն է կազմում ստացած աշխատավարձը |
|---|---|---|---|
| 1944 | 2964 դոլար | 2396 դոլար | 80,9 |
| 1945 | 3075 » | 2308 » | 75,0 |
| 1946 | 3576 » | 2274 » | 63,4 |
| 1947 | 3894 » | 2598 » | 66,8 |
| 1948 | 4111 » | 2815 » | 68,5 |
| 1953 | 5405 » | 3728 » | 68,9 |
| 1954 | 5335 » | 3737 » | 70,0 |
| 1955 | 5500 » | 3748 » | 68,0 |

[1]) «Կոմունիստ» № 10, էջ 118, 1956 թ. (ռուսերեն)։



Արդյոք այս աղյուսակը պերճախոս կերպով չի՞ խոսում այն մասին, որ բանվորների ստացած միջին աշխատավարձը միշտ ետ է մնում այն նվազագույն պահանջմունքները բավարարելուց, որ ունի ամեն մի բանվորական ընտանիք, չնայած որ բացարձակորեն բարձրանում է բանվորի միջին աշխատավարձը։ Այս դեպքում արդեն մենք գործ ունենք այնպիսի աշխատավարձի չափի հետ, որն անկասկած ցածր է բանվորի աշխատուժի արժեքից, եթե հաշվի առնենք, որ կենսամինիմումի արժեքն ավելի մոտ է աշխատուժի արժեքին, քան աշխատավարձը։

Բացի այս, պետք է հաշվի առնել նաև աշխատավարձի վրա ազդող այլ գործոններ, ինչպես, օրինակ՝ ապրանքների մանրածախ գների շարժումը, բնակարանային վարձի ավելացումը, ուղղակի և անուղղակի հարկերի ավելացումը և այլն. այդ դեպքում բանվորների ստացած աշխատավարձի և կենսամինիմումի արժեքի միջև եղած ճեղքն ավելի է խորանում։ Անառարկելի է, որ կապիտալի տիրապետության ժամանակ կապիտալիստների դասակարգն ամենուրեք աշխատում է բանվորին վճարել նրա աշխատուժի արժեքից ցածր, և այս խզումը՝ աշխատուժի իրական արժեքի և նրա վարձատրման չափի միջև կապիտալիզմի օրոք, չի կարող վերանալ, հետևապես չի կարող վերանալ նաև բանվոր դասակարգի բացարձակ և հարաբերական աղքատացումը։

Բանվոր դասակարգի բացարձակ աղքատացումն ու շահագործման անմարդկային ձևերն առավել ևս դրսևորվում են գաղութային և կախյալ երկրներում։ Հարավային Աֆրիկայի ոսկու հանքերում վերջին 15 տարվա ընթացքում աշխատում են մոտ 300 հազար տեղացի լեռնագործներ։ Ամեն մեկ լեռնագործ բանվոր, միջին հաշվով, ամսական, որպես աշխատավարձ, ստանում է 100 շիլլինգ։ Հետևապես, հիշյալ հանքագործ բանվորների տարեկան աշխատավարձը կազմում է 18 միլիոն ֆունտ ստեռլինգ, մինչդեռ 1953 թվականի ընթացքում նրանց արտադրած ոսկին գնահատվել է 1.800 միլիոն ֆունտ ստեռլինգ, այսինքն՝ 100 անգամ ավելի, քան բանվորների ստացած աշխատավարձը։ 12 հազար բնիկ աֆրիկացիներ վերջին 11 տարվա ընթացքում, աշխատելով ալմաստի հանքերում, արտադրել են մոտ 150 միլիոն ֆունտ ստեռլինգի արժողությամբ ալմաստ, մինչդեռ նրանք, որպես աշխատավարձ, ստացել են 13 միլիոն ֆունտ ստեռլինգ, այսինքն՝ իրենց արտադրածի 8 տոկոսը միայն։ Այս բոլորն այն դեպքում, երբ Աֆրիկան տալիս է կապիտալիստական երկրների ալմաստի 98 տոկոսը, արմավի յուղի 80 տոկոսը, կակաոյի 63 տոկոսը, ոսկու 57 տոկոսը, պղնձի 25 տոկոսը և այլն։ Դեռ չենք խոսում այն մասին, որ ինչպես Միացյալ Նահանգներում, նույնպես և կապիտալիստական մյուս երկրներում, հսկայական շահույթներ են կորզում այլազգիներին պատկանող բանվորներին շահագործելու, կանանց և երեխաների աշխատանքն ավելի ցածր վարձատրելու շնորհիվ և այլն։

Բավական է հիշատակել, որ ԱՄՆ-ի կապիտալիստները միայն 1954 թվականի ընթացքում 4 միլիարդ դոլարից ավելի լրացուցիչ շահույթ են ստացել ոչ սպիտակամորթ բանվոր-բանվորուհիներին պակաս վճարելուց։ Բանվորների և ողջ աշխատավորության բացարձակ աղքատացմանը զուգընթաց պրոգրեսիվ կերպով հարստանում է կապիտալիստների դասակարգը, որը քանի գնում, այնքան խոշոր կապիտալներ է կուտակում ողջ աշխատավորության հաշվին։ Միայն վերջին երեք տարիների ընթացքում՝ 1953, 1954 և 1955

*թվականներին, ԱՄՆ-ի կապիտալիստները բանվորներին շահագործելու ճանապարհով յուրացրել են 116 միլիարդ դոլարի հավելյալ արժեք։ ԱՄՆ-ը բացառություն չի կազմում։ Այսպես է գործը նաև Անգլիայում, Ֆրանսիայում, Ճապոնիայում և կապիտալիստական մյուս երկրներում։*

*Բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության աղքատացումն անասելի չափերի է հասնում իմպերիալիստական պատերազմների ժամանակ, երբ կապիտալիզմն ու նրա պետական մեխանիզմը ամբողջ ֆրոնտով հարձակվում են աշխատավորության վրա, հարկերի և գների միջոցով ետ խլելու բանվորների ստացած աշխատավարձի մեծ մասը, ռազմական բյուջեների պակասը լրացնելու համար։*

*Այսպես, օրինակ, 1937/38 տնտեսական տարում ԱՄՆ-ում գանձված հարկերը կազմել են 6 միլիարդ դոլար, իսկ 1952/53 տնտեսական տարում այդ թիվը հասնում է 73,3 միլիարդ դոլարի։ Միայն Տրումենի պրեզիդենտության 6 տարիների ընթացքում ազգաբնակչությունից գանձված է եղել 277 միլիարդ դոլար հարկ, մինչդեռ նրանից առաջ եղած 31 պրեզիդենտների կառավարման 156 տարիների ընթացքում գանձված է եղել միայն 256 միլիարդ դոլարի հարկ։ Եթե բանվորը 1939 թվականին ուղղակի հարկ էր վճարում իր աշխատավարձի միայն 1,3 տոկոսը, ապա 1954 թվականին նա արդեն վճարում էր իր վաստակի 13,3 տոկոսը։ Այսպիսի վիճակ է տիրում նաև Անգլիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական մյուս երկրներում։*

*Իմպերիալիստական պատերազմների ժամանակ առավել ևս խորանում է կապիտալի և աշխատանքի միջև եղած անդունդը, որը ոչ այլ ինչ է, բայց եթե կապիտալիստական արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական եղանակի միջև եղած հակասության խորացումը։ Տասնյակ միլիոնավոր բանվորների կոլեկտիվ ջանքերով ստեղծված հսկայական արժեքները յուրացնում են անհատ կապիտալիստներ և նրանց առանձին խմբակցությունները։*

*Այս է կապիտալիզմի զարգացման օրենքը և այն կվերանա միայն կապիտալիզմի վերացման հետ միասին, որովհետև, ինչպես ասում է Մարքսը,— «Օրեցօր ավելի ակներև է դառնում, որ արտադրության այն հարաբերությունները, որոնցով շարժվում է բուրժուազիան ոչ թե ամբողջական, պարզ, այլ երկակի բնույթ է կրում, որ այն չափով, որչափով հարստություն է արտադրվում, արտադրվում է նաև* աղքատություն, *որ այն չափով, որ չափով արտադրողական ուժերի զարգացում է տեղի ունենում, զարգանում է նաև ճնշման ուժը, որ այդ հարաբերությունները* բուրժուական հարստություն, *այսինքն՝ բուրժուական դասակարգերի հարստություն են արտադրում այն եղանակով միայն, որ նրանք շարունակ ոչնչացնում են այդ դասակարգի առանձին անդամների հարստությունը և շարունակ բազմացող պրոլետարիատ են ստեղծում» (Կ. մարքս, «Փիլիսոփայության աղքատությունը», էջ 134—135)։ Այսպիսով, քանի դեռ գոյություն ունի կապիտալիզմը, պրոլետարիատի աղքատացումը մնում է նրա անխուսափելի հետևանքը։*

---



# ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐԸ

Լ. ԲԱԲԱՅԱՆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումները ինչպես մեր կյանքի բոլոր բնագավառներում, այնպես էլ բարձրագույն ուսումնական հաստատությունների կյանքում նոր էտապ նշանավորեցին։ Համագումարը լուրջ թերություններ բացահայտեց բարձրագույն մասնագիտական կադրերի պատրաստման գործում և պահանջեց ուսման ու արտադրության սերտ կապի հիման վրա արմատապես բարելավել մասնագիտական կադրերի պատրաստման գործը։ Հասկանալի է, որ նոր խնդիրների լույսի տակ է՛լ ավելի է բարձրանում բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունների դերը։ Նրանց առջև դրված խնդիրները չափազանց մեծ ու բազմակողմանի են։*

*Ներկա հոդվածում մենք նպատակ ունենք կանգ առնելու բարձրագույն ուսումնական հաստատություններում պրոֆեսոր-դասախոսական կազմի գիտական-գաղափարական մակարդակի բարձրացման մի քանի հարցերի և այս առնչությամբ պարտիական կազմակերպությունների խնդիրների վրա։*

*Հայտնի է, որ ապագա մասնագետի գաղափարական-քաղաքական դաստիարակությունն ընթանում է բարձրագույն ուսումնական հաստատությունում, նրա ուսման ամբողջ ժամանակաշրջանում և իրականացվում է առաջին հերթին ուսանողի ուսման պրոցեսում և հասարակական կյանքում նրա ունեցած մասնակցությամբ։*

*Անվիճելի է նաև, որ բարձրագույն ուսումնական հաստատությունում առաջատար դեմքը հանդիսանում է պրոֆեսորը, դասախոսը։ Առաջին հերթին նրանց վրա է ընկնում ուսանողին խոր և կայուն գիտելիքներ հաղորդելու ամբողջ պատասխանատվությունը։ Դասախոսների գիտական-քաղաքական մակարդակից է կախված դասավանդման որակը, ուրեմն և ապագա մասնագետների պատրաստման գործը։ Հետևաբար, ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ լուրջ ուշադրություն դարձնել դասախոսական կադրերի հետ տարվող աշխատանքին, նրանց գիտական-գաղափարական աճին։ Մինչդեռ, պետք է նկատենք, որ պարտիական կազմակերպությունները այս ուղղությամբ դեռևս անբավարար են աշխատում։*

*Դասախոսական կադրերի հետ տարվող աշխատանքը հաճախ սահմանափակվում է ամբիոնների գծով տարվող գիտահետազոտական աշխատանքների պլանների կատարման, դիսերտացիաների պաշտպանության ժամկետների*

ստուգման, առանձին ամբիոնների կամ դասախոսների թեմատիկ պլանների կատարման ընթացքի ձևական քննարկմամբ, լավագույն դեպքում, առանձին դասախոսների դասեր լսելու կամ սղագրելու, այն էլ առնչված որևէ հարցի նախապատրաստման հետ։ Պարտիական կազմակերպությունների հետևողական և ամենօրյա լուրջ աշխատանքի բացակայության հետևանքով դասախոսական կադրերի գիտական-գաղափարական մակարդակի բարձրացման ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ ու բացեր։ Գրեթե բոլոր բարձրագույն ուսումնական հաստատություններում կան առանձին դասախոսներ, որոնք, կարելի է համարձակորեն ասել, բավարարվել են միայն գիտության թեկնածուի դիպլոմ ձեռք բերելով և դրանից հետո այլևս չեն զբաղվում գիտահետազոտական աշխատանքներով։ Էլ չենք խոսում այն ընկերների մասին, որոնք այդ մինիմում պահանջն էլ չեն կատարել։

Մենք շատ հեռու ենք այն մտքից, թե դասախոսի գիտական-գաղափարական մակարդակը, նրա պատրաստականությունը պետք է գնահատել միայն և միայն նրա ձեռք բերած գիտական տիտղոսով։ Այս հարցի վրա կանգ ենք առնում այն պատճառով, որ դասախոսական կադրերի գիտական որակի բարձրացման ամենակարևոր միջոցը լուրջ գիտահետազոտական աշխատանքի կատարումն է։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունները պետք է գործն այնպես կազմակերպեն, որ գիտահետազոտական աշխատանքն ավելի նպատակասլաց լինի և իսկապես դառնա կադրերի դաստիարակության ու դասավանդման մակարդակի բարձրացման լավագույն միջոցը։ Գիտահետազոտական աշխատանքը պետք է շաղկապել կոմունիստական շինարարության հրատապ խնդիրների հետ, պրակտիկ կյանքի, արտադրության խնդիրների հետ։

Գիտահետազոտական աշխատանքները պրակտիկ կյանքին մոտեցնելը դասախոսական կադրերին հնարավորություն կտա հարստացնելու իրենց գիտելիքները, լավ ճանաչելու կյանքը, ճիշտ հասկանալու և կողմնորոշվելու տնտեսական շինարարության հարցերում, իրենց ուժերի սահմաններում մասնակցելու դրանց կենսագործմանը և ձեռք բերված գիտական նորությունները ներդնելու ապագա մասնագիտական կադրերի պատրաստման շնորհակալ գործում։

Գիտական աշխատանքը պրակտիկ կյանքին մոտեցնելը կամրապնդի և կընդլայնի գիտական-դասախոսական կադրերի կապը արդյունաբերության հետ։ Գիտական-դասախոսական կադրերի և արտադրության աշխատողների սիստեմատիկ համագործակցությունը նպաստում է ուսումնական պրոցեսի բովանդակության հարստացմանը, բարձրացնում է մասնագետների պատրաստման որակը։ Դասախոսության կուրսը, արտադրական պրակտիկան և դիպլոմային նախագծումները արտադրության հետ սերտ կապի շնորհիվ անհամեմատ ավելի արգասալի կլինեն։

Պարտիական կազմակերպությունները պետք է հաշվի առնեն այն կարևոր հանգամանքը, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարն ուղղակի պահանջ դրեց՝ բարձրագույն ուսումնական հաստատությունները ավելի լայնորեն ընդգրկել ժողովրդական տնտեսության զարգացման համար ծավալվող գիտահետազոտական աշխատանքներում։



Երևանի բարձրագույն ուսումնական հաստատությունները վերջին 2—3 տարիների ընթացքում որոշակի տեղաշարժ են կատարել գիտահետազոտական աշխատանքների դրվածքը բարելավելու ուղղությամբ։ Վ. Մ. Մոլոտովի անվան Պետական համալսարանի, Կարլ Մարքսի անվան Պոլիտեխնիկական, Ժդանովի անվան Ռուսական մանկավարժական և մյուս ինստիտուտների պարտիական կազմակերպություններն ու դիրեկցիաները մասամբ վերակառուցեցին այդ կարևոր աշխատանքները և կարողացան հասնել որոշ հաջողությունների։ Պրոֆեսոր-դասախոսական կադրերի մի մասը լուրջ կերպով զբաղվում է ակտուալ տեսական և պրակտիկ պրոբլեմների մշակմամբ։

Սակայն, եթե հաշվի առնենք մեր զարգացման տեմպերը, բարձրագույն ուսումնական հաստատությունների առջև դրված խնդիրները և այն հանգամանքը, որ ռեսպուբլիկայի գիտական կադրերի կեսից ավելին կենտրոնացված են այդ հաստատություններում, ապա կտեսնենք, որ գիտահետազոտական աշխատանքների դրվածքը դեռևս շատ հեռու է բավարար լինելուց։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության ակտուալ պրոբլեմների մշակման բնագավառում դեռևս միանգամայն անբավարար են օգտագործվում ուսումնական հաստատությունների կոլեկտիվների ստեղծագործական ուժերը։

Մեր բարձրագույն ուսումնական հաստատություններում շատ ամբիոններ դեռ չեն դարձել իսկական ստեղծագործական լաբորատորիաներ, գիտահետազոտական աշխատանքների նկատմամբ նրանք դեռ սրտացավ և լուրջ մոտեցում չունեն։ Պետական համալսարանի պարտիական կոմիտեին, ֆիլոլոգիական, պատմության, բիոլոգիական ֆակուլտետների, Բժշկական ինստիտուտի, Պոլիտեխնիկ ինստիտուտի լեռնային ֆակուլտետի պարտիական կազմակերպությունների բյուրոներին չի անհանգստացնում այն հանգամանքը, որ իրենց մոտ գիտահետազոտական աշխատանքների դրվածքը վատ վիճակումն է, որ դասախոսների մի մասը չի աշխատում իր գիտական մակարդակը բարձրացնելու վրա։ Պոլիտեխնիկական ինստիտուտի ֆիզիկայի և լեռնային գործի ամբիոններում գիտահետազոտական աշխատանքները չափազանց վատ են դրված, որոշ դասախոսություններ կարդացվում են մակերեսորեն, անորակ։

Եթե վերջին երկու տարիների ընթացքում ուսումնական հաստատություններում պարտիական կազմակերպությունների կողմից ավելի լուրջ ուշադրություն է ցուցաբերվում թեմատիկայի ընտրության, գիտահետազոտական աշխատանքների պլանները կազմելու վրա, ապա պետք է ասել, որ դեռևս անհրաժեշտ պայքար չի ծավալվում թեմատիկ պլանները ժամանակին և որակով կատարելու համար։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունները դեռևս շարունակում են ընդհանրապես զբաղվել գիտահետազոտական աշխատանքներով, խորը չեն թափանցում ամբիոնների գործունեության մեջ, մեծ մասամբ բավարարվում են հաշվետվություններ լսելով կամ կազմելով։ Միաժամանակ անբավարար են զբաղվում գիտահետազոտական աշխատանքների կազմակերպման հարցերով, շատ քիչ են հոգ տանում առանց այն էլ աննշան թիվ կազմող գիտական աշխատանքների ներդրման մասին։ Պետք է նկատենք, որ ընդհանրապես չափազանց թույլ է ծավալվում պայքարը

գիտահետազոտական աշխատանքների բնագավառում կոնկրետ արդյունքների հասնելու համար։

Առանձին ինստիտուտներում չի լիկվիդացված այն սխալ պրակտիկան, երբ այսպես կոչված փոխանցվող թեմաների շարքում տարիներով ձգձգվում են մեր ժողովրդական տնտեսության համար չափազանց կարևոր ու ակտուալ թեմաները։ Շատ օրինակներից բերենք միայն երկուսը։ Անասնապահական-անասնաբուժական ինստիտուտի գյուղատնտեսական ձեռնարկությունների կազմակերպման ամբիոնում ձգձգվում է այնպիսի կարևոր թեմայի մշակումը, ինչպիսին է «Հայկական ՍՍՌ շրջանների անասնապահության էկոնոմիկան և նրա հեռանկարային զարգացումը», Գյուղատնտեսական ինստիտուտի ընդհանուր հողագործության ամբիոնում՝ «Սևանի ավազանի շրջանների դաշտավարության և դաշտային կուլտուրաների բերքի բարձրացման միջոցառումները»։

Երևանի Բժշկական ինստիտուտի և Պետական համալսարանի աշխարհագրական ֆակուլտետի պրոֆեսոր-դասախոսական կադրերը սիրում են հաճախ քննադատել Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիային, թե ինչո՛ւ այդ գիտությունների գծով ակադեմիայի սիստեմում համապատասխան գիտահետազոտական հիմնարկներ չկան, և դրանով են պատճառաբանում մեր ռեսպուբլիկայում այդ գիտությունների անբավարար վիճակը, մոռանալով իրենց դերը այդ կարևոր գործում։

Չնայած Բժշկական և Գյուղատնտեսական ինստիտուտների երկարամյա գոյության, նրանց գիտական-հետազոտական գործունեության հետևանքներն անբավարար են։

Պետական համալսարանի, Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական, Բժշկական և մյուս ինստիտուտների շատ ամբիոններ և գիտական խորհուրդներ ակտիվություն չեն ցուցաբերում արդյունաբերական ձեռնարկությունների և մինիստրությունների գիտական խորհուրդների հետ մշտական կապ ստեղծելու գործում։ Հաճախ գիտության և արտադրության կապը զուտ ձևական բնույթ է կրում։

Հայտնի է, որ ուսանող երիտասարդության աշխարհայացքի ձևավորման գործում հսկայական դեր են կատարում հասարակական գիտությունների ամբիոնները։ Թվում է, թե բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունները, հատկապես պարտիայի XX համագումարից հետո, պետք է հատուկ ուշադրություն դարձնեին հասարակական գիտությունների դասախոսական կադրերի գաղափարական մակարդակի բարձրացման վրա։ Մինչդեռ այս ուղղությամբ քիչ բան է արվում։

Պարտիական կազմակերպությունները պետք է հաշվի առնեն, որ XX համագումարի որոշումների լույսի տակ հասարակական գիտությունների ամբիոնները թե՛ դասավանդման և թե՛ գիտահետազոտական աշխատանքների վերակառուցման ուղղությամբ լուրջ ու մտածված գործունեություն պետք է ծավալեին։ Առանձին ուսումնական հաստատություններում պարտիական կազմակերպությունները անցած տարվա ընթացքում բավարարվել են միայն պարտիական բյուրոներում և կոմիտեներում այդ ամբիոնների աշխատանքների վերակառուցման հարցերը քննելով, մինչդեռ լուրջ թերություններն ու բացերը մնում են չհաղթահարված։

Պարտիայի XX համագումարը վճռականապես հանդես եկավ մարքսիզմ-



լենինիզմի ոգուն խորթ՝ անձի պաշտամունքի դեմ։ Պատմության մեջ անհա-
տի և կոլեկտիվի դերի ճիշտ լուսաբանումը խոշոր նշանակություն ունի մեր
կադրերի ստեղծագործական ակտիվության զարգացման համար։ Անհատի
պաշտամունքի բացասական հետևանքների հաղթահարումը պահանջում է լուրջ
ու հետևողական աշխատանք երիտասարդության, և ընդհանրապես բոլոր
կադրերի գաղափարական դաստիարակության ուղղությամբ։ Այդ առումով
պետք է նշել, որ հասարակական գիտությունների գծով կարդացվող դասախո-
սություններում դեռ անբավարար է իրականացվում պարտիայի ցուցումը
մարքսիզմ-լենինիզմին խորթ՝ անհատի պաշտամունքը հաղթահարելու մասին։
Հայտնի է, որ վերջին 19 տարիների ընթացքում հասարակական գիտու-
թյունների դասավանդման հիմքում հիմնականում դրված է եղել ՀամԿ(բ)Պ
պատմության համառոտ դասընթացը, որի մեջ սխեմատիզացված է որոշ
նյութ, շարադրված են բոլշևիզմի պատմության և տեսության կարևոր հար-
ցեր։ Սակայն, պարտիայի պատմության շատ հարցեր, հատկապես հետհոկ-
տեմբերյան շրջանին վերաբերող, դասընթացում լուսաբանված են անհատի
պաշտամունքի սխալ դիրքերից։ Դասընթացի վերջին գլուխներում բացահայտ
կերպով նվաստացված է պարտիայի և ժողովրդի դերը։ Սովետական իշխա-
նության հաստատումից հետո մեր պարտիայի անցած ուղին նկարագրված է
հեշտ ու դյուրին, լռության են մատնված շատ դժվարություններ, որոնք պար-
տիան հաղթահարել է։ Այստեղից հասկանալի է, որ շատ դասախոսություննե-
րում թույլ է արտացոլվում պարտիայի և աշխատավոր մասսաների հերոսական
պայքարը սոցիալիստական հասարարգի կառուցման համար։ Սոցիալիս-
տական շինարարության մի շարք հարցեր լուսաբանվում են միակողմանի և ոչ
ճիշտ։ Անտեսվում են այն դժվարությունները, որոնք պարտիան և սովետական
ժողովուրդը հաղթահարել են սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքա-
րում։
Նման մոտեցմամբ նվաստացվում են Կոմունիստական պարտիայի ծառա-
յությունները, պարտիա, որը կարողացել և կարողանում է հերոսաբար հաղթա-
հարել իր ճանապարհին ընկած հսկայական դժվարությունները։
Հասարակական գիտությունների դասավանդման մեջ դեռևս չի հաղթա-
հարված ամենահիմնական թերությունը. մարքսիզմ-լենինիզմի հիմնական
դրույթների շարադրումը կտրված է պրակտիկ կյանքից, որպիսի հանգամանքը
խանգարում է երիտասարդության կոմունիստական գիտակցականության
բարձրացմանը։ Հասկանալի է, որ այս դրությունը թելադրում է առաջիկա ա-
միսներին արմատական բեկում մտցնել հասարակական գիտությունների ամ-
բիոնների աշխատանքներում։
Հասարակական գիտությունների ամբիոնների գործունեությունը պետք է
գտնվի բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազ-
մակերպությունների ուշադրության կենտրոնում, պետք է հետևողական ու
ամենօրյա աշխատանք կատարվի այդ առարկաների դասախոսական կադրերի
գիտական և քաղաքական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Ամենից
ավելի պարտիական վերահսկողությունը պետք է դրսևորվի հասարակական
գիտությունների ամբիոնների և նրանց դասախոսական կադրերի նկատմամբ։
Մինչդեռ չափազանց քիչ ուշադրություն են դարձնում այդ կադրերի ամենօրյա
գաղափարական աճի վրա։ Եթե կարելի է ասել, կարծեք՝ թե այդ կադրերի մի

մասը պարտիական վերահսկողությունից դուրս է մնացել, և դա հասցրել է այն բանին, որ որոշ ընկերներ չեն զբաղվում ինքնազարգացմամբ, հետ են մնացել կյանքից, չեն ըմբռնում այն երևույթները, որոնք տեղի են ունենում հասարակական կյանքում։ Ավելին, առանձին դասախոսներ չկարողացան հասկանալ պարտիայի XX համագումարի որոշումների խոր իմաստը և հակահարված չտվին քաղաքական խորթ հերյուրանքներին։ (Պետհամալսարան, Հեռակա մանկավարժական ինստիտուտ, Պոլիտեխնիկական ինստիտուտ և այլն)։

XX համագումարի որոշումների լույսի տակ, պարտիայի պատմության, քաղաքատնտեսության՝ հատկապես սոցիալիզմի բաժնի, պատմական մատերիալիզմի մի շարք հարցեր նոր լուսաբանում են պահանջում։ Խորը մարքսիստական լուսաբանում են պահանջում սոցիալիստական հասարակարգի ստեղծման համար հայ աշխատավորության հերոսական պայքարի պատմության, Հայաստանի բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն պայքարի պատմության, Հայաստանում հասարակական մտքի պատմության, ինչպես նաև ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն հարցերը։

Այս տեսակետից եթե գնահատենք բարձրագույն ուսումնական հաստատությունների հասարակական գիտությունների և ընդհանրապես հումանիտար առարկաների ամբիոնների գիտական արտադրանքը, կտեսնենք, որ այն միանգամայն անբավարար է։ Համարձակ կարելի է ասել, որ մինչև այժմ այս բնագավառում մենք չունենք դեռևս գիտականորեն լուրջ աշխատություններ։ Ավելին, համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկական մամուլում չեն հրապարակվել վերը նշված պրոբլեմներին ու հարցերին վերաբերող անգամ լրագրային լուրջ հոդվածներ, մինչդեռ մեր բարձրագույն ուսումնական հաստատություններում այդ կարևոր բնագավառում աշխատում են ավելի քան 150 գիտական-դասախոսական կադրեր։ Սխալ կլիներ ասել, թե դասախոսական կադրերը չեն գրում աշխատություններ։ Բայց բանն այն է, որ նրանք գրում են իրենց համար, կամ թե պլանների կատարման ու հաշվետվությունների համար։ Եթե պարտիական կազմակերպությունները ժամանակին խորանային այս հարցում, կտեսնեին, որ նման դրության պատճառները թաքնված են որոշ չափով թեմատիկայի ոչ ակտուալության, նրա մշակման ցածր մակարդակի, գիտական-դասախոսական կադրերի որոշ մասի անբավարար պատրաստականության մեջ։

Պարտիական կազմակերպություններին կարծես թե մինչև այսօր էլ չի անհանգստացրել այն հանգամանքը, թե ինչու մարդիկ տարիներ շարունակ զբաղվել են գիտական-հետազոտական աշխատանքներով, պաշտպանել են դիսերտացիաներ և գրել են աշխատություններ, սակայն, նրանցից հրատարակվել են միայն հատ ու կենտ գործեր։

Ելնելով այն բանից, որ ուսանողության գաղափարական դաստիարակության հիմքը մարքսիզմ-լենինիզմի խորը և բազմակողմանի իմացությունն է՝ պարտիական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն այդ ամբիոնների գործունեությանը։ Անհրաժեշտ է չափազանց մտածված և լուրջ օգնություն կազմակերպել նրանց՝ հաղթահարելու այն բոլոր դժվարությունները, որ կան հասարակական գիտությունների դասավանդման վերակառուցման գործում։ Պետք է հրավիրել այդ ամբիոնների



ընդլայնված նիստեր պարտիական ակտիվի մասնակցությամբ, դա զգալի չափով կօգնի դրության բարելավմանը։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում գիտահետազոտական գործունեության ակտիվացման և դասավանդման որակի բարձրացման ասպարեզում կարևոր դեր է խաղում գիտական առողջ քննադատության զարգացումն ու ծավալումը պրոֆեսոր-դասախոսական կազմի շրջանում։ Հայտնի է, որ գիտական աշխատանքի բախտը որոշվում է իսկական ստեղծագործական մթնոլորտում։ Սովետական գիտության աշխատողները կարող են հաջողությամբ իրենց խնդիրներն իրականացնել սկզբունքային, ստեղծագործական քննադատության և ինքնաքննադատության ծավալման և սիստեմատիկ գիտական դիսկուսիաների միջոցով, դիսկուսիաներ, որոնք հանդիսանում են սովետական գիտության զարգացման կարևորագույն պայմաններից մեկը։

Գիտության տարբեր բնագավառներում կարծիքների պայքարի ընթացքում բացահայտվում և դուրս են շպրտվում ամեն կարգի ոչ ճիշտ, սխալ հայացքներ, բացահայտվում և հաղթահարվում են կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «մարքսիստը պետք է հաշվի առնի կենդանի կյանքը, իրականության ճշգրիտ փաստերը և ոչ թե շարունակի կառչել երեկվա թեորիային, որը, ինչպես և ամեն մի թեորիա, լավագույն դեպքում միայն նշում է հիմնականը, ընդհանուրը, միայն մոտենում է կյանքի բարդությունները ընդգրկելուն»։ (Հատոր 24, էջ 33)։

Հաշվի առնելով գիտական դիսկուսիաների հսկայական դերը գիտության զարգացման մեջ՝ պետք է սիստեմատիկ կազմակերպել այդպիսիք։ Այդ դիսկուսիաներում անհրաժեշտ է քննարկել մեր էկոնոմիկայի, պատմության ու կուլտուրայի հարցերը, ինչպես նաև մի շարք գիտական պրոբլեմներ, որոնք բխում են մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման խնդիրներից։

Գիտական պրոբլեմների մշակման գործում խոշոր դեր ունեն կատարելու նաև գիտական սեմինարները։ Այդ սեմինարները պետք է լայնորեն կազմակերպվեն թե՛ գիտական խորհուրդների և թե՛ ամբիոնների գծով։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում վերջին երեք տարիների ընթացքում գիտության զարգացմանը խթանող այս կարևոր ձևերը շատ աննշան չափով են կիրառված։ Այնպիսի ուսումնական հաստատություններ, ինչպիսիք են Պետական համալսարանը, որը Գիտությունների ակադեմիայից հետո իրավամբ համարվում է ռեսպուբլիկայի գիտության երկրորդ օջախը, կամ Պոլիտեխնիկ ինստիտուտը, վերջին երկու տարիների ընթացքում չեն կազմակերպել և ո՛չ մի դիսկուսիա։ Մեզ մոտ, չգիտես ինչու, գիտական դիսկուսիաների, ինչպես և գիտական սեմինարների կազմակերպումը կամպանիոն բնույթ է կրում, շատ հաճախ նրանք անց են կացվում միայն այս կամ այն հոբելյանական տարեդարձի կապակցությամբ, ձևականության համար, և ոչ թե հասունացած գիտական առանձին պրոբլեմների լուծման նպատակով։ Հայտնի է, որ գիտական դիսկուսիաներն ու սեսիաները միայն այն ժամանակ են իրենց արդարացնում, երբ նրանք հարստացնում են գիտական աշխատողներին գիտական նոր նվաճումներով, խթանում են գիտության այս կամ այն բնագավառի հետագա զարգացմանը։

Մինչդեռ մեր պրակտիկայում հաճախ մոռացության է մատնվում հարցի այս կարևոր կողմը։ Պարտիական կազմակերպությունները գիտական դիսկու-

տիաների և սեմինարների նախապատրաստման ու կազմակերպման կողքով են
անցնում, այն չեն համարում իրենց անմիջական գործը, թողնում են ամբիոն-
ների և գիտական խորհուրդների հույսին: Քիչ է հոգ տարվում կազմակերպված
դիսկուսիաները և սեսիաները բարձր գաղափարայնությամբ ու գիտական խո-
րությամբ անցկացնելու ուղղությամբ, այն թողնվում է զեկուցողների խղճին,
լավագույն դեպքում՝ առանձին ամբիոնների ղեկավարների բարեխղճությանը:
Բացակայում է ֆակուլտետային և ինստիտուտային պարտիական բյուրոների
ամենօրյա աշխատանքը նման դիսկուսիաների, սեսիաների կազմակերպման
ուղղությամբ: Նախապատրաստվող դիսկուսիայի կամ սեսիայի շուրջը չի
ստեղծվում պահանջվող գիտական մթնոլորտ, հասարակական լայն կարծիք ու
անհրաժեշտ հետաքրքրություն: Այս բոլորի հետևանքը լինում է այն, որ դիս-
կուսիաներն ու սեսիաները չեն ծառայում իրենց նպատակին, չեն նպաստում
ոչ գիտության այս կամ այն բնագավառի զարգացման գործին և ոչ էլ դասա-
խոսական կադրերի գիտական մակարդակի բարձրացմանը:

Մեր կյանքում քիչ գիտական պրոբլեմներ ու հարցեր չկան, որոնց մշա-
կումն ու լուծումը վաղուց ավարտված կլինեին, եթե բարձրագույն ուսումնա-
կան հաստատությունների սկզբնական պարտիական կազմակերպություններն
անհրաժեշտ ուշադրություն դարձնեին այդ գործին: Գիտական քիչ հարցեր
չկան, որոնց մշակումը կամ պարզաբանումը ձգձգվում է միայն գիտական ա-
ռանձին կադրերի տարբեր, իրար հակասող կարծիքների առկայության պատ-
ճառով, հարցեր, որոնք գիտական դիսկուսիաների միջոցով վաղուց կարող էին
լուծվել, որը կնպաստեր գիտության առանձին ճյուղերի արագ զարգացմանը:
Այսպես, օրինակ, Երևանի Վ. Մ. Մոլոտովի անվան Պետական համալսարանի
գիտահետազոտական աշխատանքների պլաններում 1952 թվականից նշված է
մի կարևոր թեմա. «Հայոց լեզվի պատմա-համեմատական քերականությունը»:
Այդ թեմայի մշակումը ըստ պլանի պետք է ավարտվեր 1954 թվականին: Սա-
կայն, մինչև այսօր այն չի ավարտված միայն և միայն այն պատճառով, որ
հեղինակների կոլեկտիվը բաժանվել է երկու խմբի և առանձին հարցերում հա-
մակարծիք չլինելով, երկար ժամանակ վիճում են իրար հետ և չեն կարողա-
նում մի ընդհանուր կարծիքի գալ: Կամ, մի այլ օրինակ: Արդեն բավական ժա-
մանակ է, ինչ հրատարակվել է փիլիսոփայական գիտությունների դոկտոր-
պրոֆեսոր Ա. Կարապետյանի «Պատմական մատերիալիզմի մի քանի հարցերի
մասին» աշխատությունը: Այդ աշխատության մասին միանգամայն տարբեր
կարծիքներ ու խոսակցություններ կան, մինչդեռ, վաղուց կարելի կլիներ գի-
տական ստեղծագործական լայն մթնոլորտում լուծել վիճելի հարցերը:

Ինչպես ամեն մի բնագավառում, այնպես և գիտական հարցերի լուծման
ասպարեզում գիտական բարձր սկզբունքայնությունը որոշիչ դեր ունի և ան-
սկզբունքայնության ամենափոքր դրսևորումը չափազանց բացասաբար է անդ-
րադառնում ինչպես հարցերի լուծման, այնպես էլ կադրերի ճիշտ դաստիա-
րակման վրա:

Բարձրագույն ուսումնական հաստատությունների պարտիական կազմակեր-
պությունների առաջնահերթ խնդիրներից մեկն էլ գիտական-դասախոսական
կադրերին բարձր սկզբունքայնությամբ դաստիարակելու հարցն է: Պետք է
նկատենք, որ այս ուղղությամբ մեր պարտիական կազմակերպությունները
դեռևս անբավարար աշխատանք են կատարում, որի պատճառով էլ այդ աս-
պարեզում լուրջ թերություններ ու բացեր ունենք: Վերցնենք երկու կարևոր



հարց: Հայտնի է, որ վերջին տարիներս գիտական աստիճաններ ստանալը
բավական մասսայական բնույթ էր ստացել: Այդ շատ ցանկալի և ուրախալի
երևույթ է մեր կյանքում: Այդ ճանապարհով համալրվում է մեր գիտական
դասախոսական կադրերի բանակը երիտասարդ թարմ ուժերով:
Պարզ է, որ գիտական այն կոլեկտիվները, որոնց իրավունք էր տրված
գիտական կոչումներ շնորհել, ինչպես և ամբողջ գիտական հասարակությունը
պետք է բարձր պատասխանատվություն և սկզբունքայնություն հանդես բերեին
այդ կարևոր գործում: Սակայն, փաստերն ասում են, որ առանձին դեպքերում
որոշ գիտական կոլեկտիվների մոտ բացակայում է անհրաժեշտ պատասխա-
նատվությունն ու սկզբունքայնությունը, դրանց փոխարինում են լիբերալիզմն
ու այսպես կոչված՝ «ընկերականությունը», որի հետևանքով էլ որոշ մարդիկ
ձեռք են բերում գիտական կոչում և խցկվում գիտության կամ դասախոսական
աշխատանքի բնագավառը:
Յուրաքանչյուր դիսերտացիայի պաշտպանության կազմակերպման նա-
խապատրաստումն ու անցկացումը, մեր կարծիքով, պետք է հանդիսանա երի-
տասարդ գիտական կադրերի գաղափարական դաստիարակման, նրանց գի-
տական աճի դպրոց և միևնույն ժամանակ գիտության տվյալ ճյուղի զարգաց-
մանը խթանող հանգամանք, այն պետք է տեղի ունենա առողջ գիտական-
ստեղծագործական մթնոլորտում: Դժբախտաբար, մեզ մոտ դիսերտացիաների
պաշտպանման գործի դրվածքը միշտ այդպես չի լինում: Չափազանցություն
չի լինի, եթե ասենք, որ հատկապես հումանիտար գիտությունների գծով
պաշտպանվող շատ դիսերտացիաների պաշտպանության ժամանակ, բացի
պաշտոնական ընդդիմախոսներից, գիտական խորհրդի անդամները ծանոթ չեն
աշխատությանը, նրանք տպավորություն են ստանում պաշտպանության պրո-
ցեսում և կատարում իրենց գիտական խորհրդի անդամի պարտականությունը:
Հետևանքը լինում է այն, որ դիսերտացիաները պաշտպանվում են, մարդիկ
կոչում են ստանում և այդ դիսերտացիաները մնում են ինստիտուտների
պորտֆելներում, փոշու տակ:
Վերջին տասնամյակում մեր բարձրագույն ուսումնական հաստատություն-
ներում պաշտպանված դիսերտացիաների թիվն անցնում է մի քանի հարյու-
րից, նրանցից հրապարակվածների թիվը հասնում է հազիվ մեկ տասնյակի:
Նման դրության պատճառը առանձին գիտական կոլեկտիվների միանգամայն
անպատասխանատու վերաբերմունքն է: Այս կապակցությամբ նշենք նաև, որ
մեզ մոտ ընդհանրապես թույլ է զարգացած գրավոր և բանավոր գիտական-
քննադատական խոսքը: Վերջին երեք տարիների ընթացքում հրատարակված
աշխատանքների մասին գրեթե քիչ են տպագրվել լուրջ գրախոսականներ:
Հայտնի է, որ ամբիոնները բարձրորակ դասախոսական կադրերով կոմ-
պլեկտավորելու ամենալավ միջոցը կոնկուրսներն են: Թվում էր, թե բարձրա-
գույն ուսումնական հաստատությունների գիտական խորհուրդներն ու պար-
տիական կազմակերպությունները ամենայն լրջությամբ պետք է օգտագործեին
կադրերի ընտրության այդ միակ լավագույն ձևը: Սակայն, ցավոք սրտի պետք
է նկատենք, որ կադրերի ընտրության իրեն արդարացրած այդ ձևը մեզ մոտ
առանձին գիտական խորհուրդների, նրանց առանձին անդամների միանգա-
մայն անպատասխանատու վերաբերմունքի, անսկզբունքայնության ու ոչ օբ-
յեկտիվության հետևանքով փաստորեն վարկաբեկվում է և աղավաղվում կոն-
կուրսների իմաստը: Այդ են վկայում մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ամ-

բիոնների համար անցկացված կոնկուրսները 1954 թվականին Անասնապահական-անասնաբուժական ինստիտուտում, 1955 թվականին՝ Գյուղատնտեսական ինստիտուտում և այլն։

Պարտիական կազմակերպություններն անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում ինստիտուտային և ֆակուլտետային գիտական խորհուրդների աշխատանքներին, չի բարձրացված նրանց դերը գիտահետազոտական աշխատանքների կազմակերպման գործում, նրանք դեռևս չեն դարձել ուսումնական հաստատություններում ստեղծագործական, գիտահետազոտական մտքին ուղղություն տվող կենտրոններ։ Այսպես, Պետական համալսարանի, Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական, Բժշկական ինստիտուտների գիտական խորհուրդները վերջին երկու տարիների ընթացքում համարյա և ոչ մի լուրջ տեսական կամ պրակտիկ գիտական պրոբլեմ չեն քննարկել։ Գրեթե նույնն է և ֆակուլտետային գիտական խորհուրդների վիճակը։

Բարձրորակ մասնագիտական կադրեր պատրաստելու գործում կարևոր օղակ է հանդիսանում ուսանողությանը գիտահետազոտական աշխատանքների մեջ ընդգրկելը։ Ամբիոնները և գիտական խորհուրդներն այս ուղղությամբ քիչ բան են անում։ Գիտահետազոտական աշխատանքներում ընդգրկված ուսանողների թիվն աննշան է, կատարվող աշխատանքները չունեն անհրաժեշտ նպատակասլացություն։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումների կենսագործումը բարձրագույն ուսումնական հաստատությունների սկզբնական պարտիական կազմակերպություններից պահանջում է արմատապես բարելավել պրոֆեսոր-դասախոսական կադրերի հետ տարվող աշխատանքները, բոլոր միջոցները ձեռնարկել բարձրացնելու այդ աշխատանքների գաղափարական մակարդակը։

---

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ

Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Պրոպագանդիստական աշխատանքում տեղ գտած լուրջ սխալները և, մասնավորապես, նրա կտրվածությունը կոմունիստական շինարարության պրակտիկայից, վճռականորեն դատապարտվեցին ՍՄԿՊ XX համագումարի կողմից։ Համագումարը պահանջեց արմատապես բարելավել պրոպագանդիստական աշխատանքը, ընդգծելով, որ «անհրաժեշտ է մեր պրոպագանդան և ագիտացիան ավելի սերտորեն շաղկապել կոմունիզմի նյութական-արտադրական բազայի, նյութական ու կուլտուրական բարիքների առատության ստեղծման, քաղաքացիների կոմունիստական գիտակցականության աճի խնդիրների հետ, վերջ տալով մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական ոգուն խորթ դոգմատիզմին ու տիրացուականությանը»։

Հիրավի, Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքը հսկայական վնաս է հասցրել մեր ամբողջ իդեոլոգիական աշխատանքին։ Անձի կուլտի ազդեցության տակ մեր պրոպագանդիստական կադրերի որոշ մասի մոտ արմատացել էին պրոպագանդայի ռևոլյուցիոն տրադիցիաների հետ անհամատեղելի գծեր։ Դոգմատիզմն ու տիրացուականությունը լայն տարածում էին գտել պրոպագանդիստական աշխատանքի ամբողջ պրակտիկայում։ Դա պատճառ էր դառնում, որ թեորիան կտրվեր կյանքից, կոմունիստական շինարարության պրակտիկայից, խոչընդոտ էր հանդիսանում բուրժուական իդեոլոգիայի դեմ մղվող պայքարում։ Լավ պրոպագանդիստների հետ միասին ասպարեզ էին իջել և այնպիսիները, որոնք հանդես էին բերում դատապարտելի անտարբերություն հանդեպ այն ամենը, թե որքանով է նյութը հետաքրքրում ունկնդիրներին, ինչպիսի՛ հարցեր են նրանց մոտ ծագում, ի՛նչ է ավելի նրանց հուզում ու հետաքրքրում, ինչպիսի՛ն են նրանց խոհերն ու տրամադրությունները։ Այդպիսի պրոպագանդիստները հեղինակություն չունեին ո՛չ ունկնդիրների մոտ, ո՛չ էլ պարտիական կազմակերպություններում. նրանց պարապմունքները զուրկ էին նպատակասլացությունից։

Բնութագրելով պարտիական կազմակերպությունների դերը պրոպագանդիստական աշխատանքի ընթացիկ ուսումնական տարում և դատապարտելով պարտիական լուսավորության սիստեմում արմատավորված արատավոր պրակտիկան, ՍՄԿՊ Կենտկոմը իր՝ «Պարտիական լուսավորության սիստեմի ուսումնական տարում պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին» որոշման մեջ ընդգծեց պարտիական պրոպագանդայի այնպիսի սիստեմի ստեղծման անհրաժեշտությունը, որն ավելի լիովին բավարարի կոմունիստների գա-

ղափարական դաստիարակության պահանջները։ Կենտկոմը նշեց, որ կոմունիստների գաղափարական-տեսական պատրաստության հիմնական մեթոդը մարքսիստական-լենինյան թեորիայի ինքնուրույն ուսումնասիրությունն է։

Այս տեսակետից պարտիական կազմակերպությունները պետք է գործնական օգնություն ցույց տան թեորիան ինքնուրույն ուսումնասիրողներին, հաճախակի կազմակերպեն դասախոսություններ, սեմինարներ, զրույցներ, տեսական կոնֆերանսներ, խմբակային և անհատական կոնսուլտացիաներ՝ հաշվի առնելով կոմունիստների պահանջներն ու ցանկությունները։

Այժմ արդեն չի կարելի չտեսնել այն ուրախալի փոփոխությունները, որ կատարվում են իդեոլոգիական աշխատանքում, XX համագումարից հետո։ Ավելի ու ավելի են զգացվում այն սուր քննադատության պտուղները, որին համագումարում ենթարկվեցին մեր պրոպագանդան և ագիտացիան։ Այժմ պայքար է մղվում իդեոլոգիական աշխատանքում եղած դոգմատիզմի ու վերացականության դեմ, պարտիական լուսավորությունը մոտենում է կյանքին, դառնում է մասսայական, կենդանի։ Սերտ կապ է հաստատվում թեորիայի և կոմունիստական շինարարության պրակտիկայի միջև։

Մարքսիստական-լենինյան տեսության ինքնուրույն ուսումնասիրությունը կազմակերպելու գործում առկա են առաջին հաջողությունները։ Հատկապես արժեքավոր փորձ է ձեռք բերվել քաղաքատնտեսությունը, կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրելու բնագավառում։ Շատ տեղերում հաղթահարվել է շաբլոնն ու վերացականությունը, աճել է պարտիականների հետաքրքրությունը էկոնոմիկայի ուսումնասիրման նկատմամբ։ Հազարավոր պարտիականներ ձեռնամուխ են եղել այդ գործին։ Բազմաթիվ պարտիական կազմակերպություններ սիստեմատիկորեն սեմինարներ և կոնսուլտացիաներ են կազմակերպում նրանց համար։

Այդ գործում հատկապես դրական փորձ է կուտակել ՀՍՍՌ Պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրության պարտիական կազմակերպությունը (պարտբյուրոյի քարտուղար Պ. Խ. Խաչատրյան)։ Այստեղ քսան կոմունիստ ինքնուրույն կերպով ուսումնասիրում են սոցիալիզմի քաղաքատնտեսությունը։ Նրանց աշխատանքը ղեկավարում է ընկ. Գ. Գյուլմիսարյանը։ Նա նախօրոք քննարկվող թեմայից ռեֆերատներ է հանձնարարում, նշում է գրականությունը, ապա նշանակված օրը տեղի է ունենում ռեֆերատների ընթերցումը, որոնց քննարկմանը մասնակցում են մյուս ընկերները։

Դեկտեմբերի 21-ին հերթական ռեֆերատի թեման էր՝ «Սոցիալիզմի նյութական-արտադրական բազան»։ Թեմայի առանձին խնդիրների շուրջը ռեֆերատներ կարդացին ընկ. ընկ. Ռ. Լ. Կորզանովը, Դ. Բ. Մաթևոսովը և Խ. Վ. Քառուկյանը։ Ռեֆերատների քննարկմանն ակտիվ մասնակցություն ունեցան բոլոր ընկերները։ Վ. Այդինյանը խոսեց մեր ռեսպուբլիկայում էներգետիկայի զարգացման հարցերի մասին։ Վ. Փուրխաչյանը իր ելույթը նվիրեց ռեսպուբլիկայի պարենային ապրանքների արդյունաբերության ձեռնարկություններում կոոպերացիայի և ավտոմատիզացիայի խնդիրներին։ Նա մասնավորապես կանգ առավ Երևանի Կարամելի, Ջեթ-օճառի, Հացի, Գինու և Կոնյակի գործարաններում ներդրված ավտոմատ մեքենաների ու գծերի բնութագրման վրա, նշեց ձեռք բերված հաջողությունների և հետագա անելիքների մասին։

Պարապմունքը ամփոփեց և եզրափակեց ընկ. Գյուլմիսարյանը։ Նա ելույթ ունեցած ընկերներին արեց մի շարք լրացումներ, ճշտեց որոշ ձևա-



կերպումներ, ռեֆերատները ավելի հաջող կազմելու համար արեց մեթոդական տեղին դիտողություններ։

ՍՄԿՊ պատմությունն ինքնուրույն ուսումնասիրելու գործում ուսանելի շատ բան կա Հայէներգոյի պարտիական կազմակերպությունում։ Այստեղ 15 ընկերներ, կոնսուլտանտ ընկ. Ս. Խարմանդարյանի ղեկավարությամբ սկզբնաղբյուրներով ուսումնասիրում են «ՍՄԿՊ ագրարային ծրագիրը և նրա իրականացումը ՍՍՌՄ-ում» թեման։

Ինքնուրույն ուսուցման գործը ճիշտ կազմակերպելու ուղղությամբ հաջողության են հասել Երևանի բազմաթիվ հիմնարկ-ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններ։

Սակայն, մի շարք կազմակերպություններում դեռևս չեն հաղթահարված կազմակերպչական կարգի շատ էական թերություններ։ Ուսումնական տարվա սկզբից արդեն ամիսներ են անցել, բայց բազմաթիվ պարտիական կազմակերպություններ պատշաճ ուշադրության չարժանացնելով քաղուսուցման գործը, աչքաթող անելով այն, դեռ դոփում են տեղում։ Այսպես, Քաղաքային և գյուղական շինարարության մինիստրության կազմակերպությունում ինքնուրույն ուսումնասիրությունը դեռ չի սկսված միայն մեկ պատճառով... բացակայել է պարտբյուրոյի քարտուղարը։ Պարտլուսացանցի կոմպլեկտավորումը ճիշտ չի կատարված Ժամացույցի գործարանի պարտկազմակերպությունում. այստեղ ինքնուրույն ուսումնասիրողների մեծ մասը թերի միջնակարգ կրթություն ունի և, հետևաբար, կրթական այդպիսի մակարդակով նպատակաղուրկ է նրանց կողմից տեսական հարցերի ինքնուրույն ուսումնասիրությունը։

«Հայարդխորհրդի» կազմակերպությունում ինքնուրույն ուսումնասիրության գործը դեռևս կազմակերպչական ստադիայում է։ Այստեղ բարձրագույն կրթություն ունեցող մի շարք ղեկավար ընկերներ ոչ թե զբաղվում են տնտեսագիտական խնդիրների ինքնուրույն ուսումնասիրությամբ, այլ ներգրավված են ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակում։ Մինչդեռ կոնկրետ էկոնոմիկայի հարցերով զբաղվելը ավելի նպատակահարմար է այդ ընկերներին։

Նմանօրինակ բացասական երևույթներ տակավին կան մեր պարտիական կազմակերպությունների և ա՛յլ օղակներում։ Մեր նպատակը չէ խոսել այդ մասին, բայց նշենք ևս մեկ փաստ, որը ցույց է տալիս պարտիական կազմակերպության ոչ լուրջ մոտեցումը քաղուսուցման գործին։ Երևան քաղաքի «Գաստրոնոմ» խանութների սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոն միմիայն ամիս ու կես ուշացումով՝ նոյեմբերի 30-ին է քննարկել քաղուսուցման հարցը։ Սակայն, թե ինչպիսի լուծում է ստացել այն, երևում է բյուրոյի որոշման ձևակերպումից. «Ելնելով օբյեկտների ցրվածությունից, կոմունիստների ցանկությունից, տեղի պայմանների բացակայությունից (?), գտնել նպատակահարմար ինքնուրույն ուսուցումը»։ Սակայն, պարտբյուրոն որդյո՞ք հաշվի առել է կոմունիստների տեսական, քաղաքական մակարդակը, այդպիսի ոչինչ չասող որոշում ընդունելով, իհարկե ոչ։ Թե որքանով է նպատակահարմար ինքնուրույն ուսուցումը, երբ կոմունիստների մեծ մասը իր պատրաստականությամբ չի համապատասխանում դրան, երևում է հենց հետևյալ փաստից։ Երբ Գաստրոնոմիա № 8 խանութի բաժնի վարիչ կոմունիստ Մ. Սարգսյանին հարցնում են, թե ինչ եք ուսումնասիրում, նա պատասխանում է. «Թերթ, բան, կարդում եմ է՛լի»։

*Պարտիական կազմակերպությունների խնդիրն է. ամենայն հոգատարությամբ, հետևողականորեն առաջ տանել կոմունիստների ինքնուրույն ուսուցման գործը, հսկել, բոլոր միջոցներով օգնել նրանց։ Միմիայն պարտիական կազմակերպության կողմից սիստեմատիկ հսկողությունն ու ուշադրությունը հնարավոր կդարձնի ինքնուրույն ուսուցման նպատակասլացությունը։*

***

*Այժմ մեր հիմնարկ-ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին կից, ինքնուրույն ուսուցմանը զուգընթաց գործում են ընթացիկ քաղաքականությունը, պարտիայի պատմությունը, քաղաքատնտեսությունը, մարքսիստական փիլիսոփայությունը, էկոնոմիկայի՝ արդյունաբերության, գյուղատնտեսության պրոբլեմներն ու հարցերը ուսումնասիրող խմբակներ։*

*Այս խմբակների պարապմունքները ճիշտ կազմակերպելու համար հարկավոր է ստեղծագործական մեծ նախաձեռնություն, որը հնարավորություն կընձեռնի պրոպագանդայի սերտորեն զուգակցելու տվյալ հիմնարկության ու ձեռնարկության խնդիրների հետ, պարապմունքները դարձնելու բովանդակալից ու հետաքրքիր։ Պրոպագանդիստական ճիշտ աշխատանքը մարդկանց մոտ քաղաքական ակտիվություն կառաջացնի, կօգնի ճիշտ լուծելու տնտեսական ու կուլտուրական շինարարության գործնական խնդիրները և հաջողությամբ պայքարելու մարքսիզմին թշնամի հայացքների դեմ։ Վ. Ի. Լենինը դեռևս 1920 թվականին խոսելով պրոպագանդիստական աշխատանքի կոնկրետ առնչությունների մասին, նշում էր, որ «հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպես պետք է կառուցել սոցիալիզմ։ Ամբողջ պրոպագանդան,— ասում է Լենինը,— պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա» (Երկեր, հ. 31, էջ 465)։*

*Պրոպագանդիստական աշխատանքի հաջողությունը առաջին հերթին կախված է այն բանից, թե աշխատանքի տվյալ բնագավառում ում է վստահված մարքս-լենինյան թեորիան մասսաներին մատուցելու գործը։*

*Ընդհանրապես պրոպագանդիստի մասին դատում են միայն նրա կրթական ցենզով, կոչումով կամ գրաված պաշտոնով։ Սակայն, դա բավական չէ։ Պրոպագանդիստների ընտրության հարցում պետք է ղեկավարվել և այն բանով, թե որքանով են ունկնդիրները հարգում պրոպագանդիստին՝ կյանքը խորը լավ ճանաչելու ու հասկանալու, մարդկանց հանդեպ անկեղծ, հոգատար վերաբերմունքի համար, մարդկանց գիտակցության մեջ կոմունիստական շինարարության գործի նկատմամբ հաղթանակի համոզմունք սերմանելու ու ամրացնելու և վերջապես գաղափարական կայունության համար։*

*Պարտիական կազմակերպությունների խնդիրն է ամեն կերպ հոգ տանել ապահովելու պրոպագանդիստի հեղինակությունը, հասնելու այն բանին, որպեսզի նա իրոք գրավի իր արժանի տեղը պարտիական աշխատանքում։ Սակայն, դա անհնարին է իրագործել միայն բարի ցանկություններով, վարչարարությամբ կամ կոչերով։ Անհրաժեշտ է վերջին տարիներում մեր պրոպագանդիստական աշխատանքում տեղ գտած կազմակերպչական և այլ արատների հետ միաժամանակ հրաժարվել մեթոդական կարգի սխալներից ու թերություններից։ Այժմ պրոպագանդիստներից պահանջվում է համարձակորեն գնալ նոր ուղիներով, լրիվ օգտագործել պրոպագանդայի լենինյան ավանդույթները, պրոպագանդան դիտել որպես պարտիական աշխատանքի բաղկացուցիչ մասը, որպես պարտիայի կողմից տրվող առաջադրանքների կատարման համար մասսաներին մոբիլիզացնող մարտական զենք։*



*Պրոպագանդիստական աշխատանքի հաջողության նախապայմանը ճիշտ մեթոդի գործադրումն է։ Մեթոդական ձևերի լավ ընտրությունն ու կիրառումը կանխորոշում է պրոպագանդիստի աշխատանքի նպատակասլացությունը, նրա հաջողությունը։ Ճիշտ մեթոդի խնդիրը, «յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը»,— ասում է Լենինը,— «հենց այն է, որպեսզի լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող» (Երկեր, հատ. 17, էջ 418)։*

*Հարցերի ճիշտ ընտրությունն ու ձևակերպումները, պարապմունքի համապատասխան պլանի կազմումը պրոպագանդիստի աշխատանքի կարևոր օղակներն են։ Պրոպագանդիստը պետք է տա տվյալ թեմայի ուսումնասիրման նշանակությունն ու նպատակները, առանձնացնի և ճիշտ կերպով լուսաբանի թեմայի հիմնական հարցերը, ուսումնասիրվող նյութը խելացի կերպով կապի այժմեական հրատապ խնդիրների, կոմունիզմի կառուցման խնդիրների հետ։ Մեթոդական ճկուն ձևեր օգտագործելու դեպքում պրոպագանդիստին հաջողվում է պարապմունքը տանել իր հունով, հասնել նպատակին՝ բացահայտել ու լուսաբանել այն էականը, որ կա ուսումնասիրվող թեմայում։*

*Խելացի են կազմակերպվում քաղաքատնտեսությունն ուսումնասիրող խմբակի պարապմունքները «էլեկտրաճշգրիտ սարքերի» գործարանի պարտիական կազմակերպությունում։ Պրոպագանդիստ ընկ. Բ. Միրզոյանը նախօրոք պատմում է թեման, բացատրում հիմնական հանգուցային հարցերը, ապա հերթական պարապմունքում ունկնդիրների հետ միասին ամփոփում այն՝ ակտիվ զրույցի ձևով։ Դեկտեմբերի 10-ի պարապմունքում թեման «արժեքի», «փողի», «հավելյալ արժեքի», «ապրանքային ֆետիշիզմի» հարցերն էին։ Այս խնդիրների շուրջն սկսված մտքերի փոխանակությանը մասնակցեց ունկնդիրների մեծ մասը։ Առանձին դեպքերում երբ արտահայտվողը դժվարանում էր տալ հարցի ճիշտ բացատրությունը, միջամտում էր պրոպագանդիստը, կոնկրետ օրինակներով, պարզ ու հստակ ձևով բացատրում և վերլուծում այս կամ այն խնդրի էությունը։ Ընկ. Բ. Միրզոյանի աշխատանքում դրականն այն է, որ նա կարողանում է իր ակտիվ միջամտությունը զուգակցել ունկնդիրների ելույթների ու պատասխանների ավելի լայն ծավալման հետ։*

*Պարապմունքի ժամանակ ծագեցին բազմաթիվ հարցեր՝ կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի աղքատացման, մոնոպոլիաների կառուցվածքի, նրանց դերի և այլնի մասին, որոնք, իհարկե, անմիջապես չէին վերաբերում քննարկվող թեմային։ Սակայն, դրանք հետաքրքրում են ունկնդիրներին, նրանք պատասխան են փնտրում, իսկ պրոպագանդիստը պետք է պատրաստ լինի պատասխանելու ամենաանսպասելի հարցին։ Չէ՞ որ պրոպագանդիստը կոչված է համոզիչ կերպով բացատրելու այն, ինչ պարզ չէ ունկնդիրներին։ Ավելին, նա պետք է շահագրգռված լինի, որպեսզի նրա ունկնդիրները լինեն առավել ակտիվ, վիճեն, ձգտեն հասու լինել հարցը խորը կերպով հասկանալուն։ Պրոպագանդիստ ընկ. Միրզոյանի հաջողությունը հենց այն էր, որ նա կարողացավ պարապմունքը տանել իր ընտրած հունով, պար-*

զարանել այն հիմնականը, որ կար ուսումնասիրված թեմայում և միաժամանակ այն հարցերը, որոնք հետաքրքրեցին խմբակի մասնակիցներին։

Կանոնավոր ու հետաքրքիր են ընթանում պարապմունքները նաև կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակում։ Ի տարբերություն Բ. Միրզոյանի, այստեղ պրոպագանդիստ Գ. Սարգսյանը նախօրոք այս կամ այն հարցի վերաբերյալ թեմա է հանձնարարում առանձին ունկնդիրների, որոնք հաջորդ պարապմունքի ժամանակ ելույթ են ունենում։ Այս անգամ մտքերի փոխանակությունը ծավալվում է առանձին ելույթի շուրջը։ Վերջին պարապմունքի ժամանակ «ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը» թեմայի շուրջը ելույթ ունեցան ցեխի վարպետ Ա. Չիչակյանը և Վ. Լալազարյանը։ Սակայն, պրոպագանդիստի աշխատանքում բացն այն էր, որ նա պարապմունքի ժամանակ չօգտագործեց դիագրամներ, աղյուսակներ և ցուցադրական այլ նյութեր։

Այժմ, քան երբևիցե, մեծ է պրոպագանդիստների դերը ընթացիկ քաղաքականությունը ճիշտ բացատրելու ու մասսաներին մատուցելու գործում։ Համաշխարհային ռեակցիայի ոտնձգությունների, Հունգարիայում տեղի ունեցած կոնտրռևոլյուցիոն դեպքերի կապակցությամբ, երբ այդ դեպքերի էությունը խեղաթյուրող մեկնաբանություն են տալիս, երբ առանձին ոչ կայուն մարդիկ կարող են ընկնել բուրժուական իդեոլոգիայի ազդեցության տակ՝ պրոպագանդիստները պետք է հանգամանորեն պատասխանեն աշխատավորների մոտ ծագող հարցերին, բացատրական աշխատանք տանեն։ Անհրաժեշտ է սիստեմատիկորեն մերկացնել բուրժուական հայացքների մնացուկները և արձագանքները մեր կյանքում։ Չպետք է հանդես բերել մեծահոգություն այնտեղ, որտեղ պետք է հակահարված տալ դեմագոգիային, խորթ հայացքներին։

Կարի առաջին ֆաբրիկայի պարտիական կազմակերպությանը կից գործող ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակի պրոպագանդիստ ընկ. Ռ. Դալլաքյանը բավարար հմտություն հանդես չբերեց վերջին պարապմունքը ճիշտ ուղիով տանելու գործում։ Առաջին իսկ պահից աչքի էր զարնում պրոպագանդիստի կուռ պլանի, զրույցի հիմնական հարցերի մշակման պակասությունը, պարապմունքի մակերեսայնությունը։ Պարապմունքի թեման էր՝ իմպերիալիստների ագրեսիան Եգիպտոսում և կոնտրռևոլյուցիան Հունգարիայում։ Պարապմունքին պրոպագանդիստը փորձեց տալ զրույցի տեսք, սակայն ունկնդիրները պասսիվ էին և դրա համար էլ հիմնականում խոսեց ինքը՝ ընկ. Դալլաքյանը, ընդ որում առանց սիստեմի, ամեն ինչի մասին։ Նա ոչ այնքան ձգտում էր հնարավորին չափ իր կենդանի խոսքով ունկնդիրներին մատուցել գլխավորը, էականը, որքան տարվում էր ուղղակի հայտարարություններով։ Զգացվում էր, որ ունկնդիրներից շատերը, որոնք թերի միջնակարգ կրթություն ունեն, չեն հասկանում բազմաթիվ տերմիններ՝ «ագրեսիա», «ինտերվենցիա», և այլն, իսկ պրոպագանդիստը սահում էր դրանց վրայով, առանց բացատրելու այդ տերմինների իմաստը։

Խմբակում պարապմունքը ավելի շուտ ագիտացիոն բնույթ էր կրում։ Իսկ եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ խմբակում պարապմունքները տեղի են ունենում ամիսը երկու անգամ, ապա ակներև կդառնա նման ագիտացիոն աշխատանքի անբավարար լինելը։ Ճիշտ մեթոդների ընտրությունը, պահանջկոտությունը, հետևողականությունն ու դիֆերենցված մոտեցումը առանձին



ընկերների նկատմամբ, կօգնեն պրոպագանդիստ ընկ. Դալլաքյանին բարելավելու խմբակի աշխատանքը, այն տանելու ճիշտ ուղիով։

Պրոպագանդիստական աշխատանքն իր իսկ բնույթով յուրաքանչյուր պրոպագանդիստին պարտավորեցնում է մշտապես սովորել, աճել ու կատարելագործվել։ Ամեն մի պարապմունքի ժամանակ պրոպագանդիստն իր առջև տեսնում է բազմաթիվ ուշիմ, փնտրող աչքեր. նրա ամեն մի խոսքը լսում և ստուգում են ունկնդիրները։ Ինչպե՞ս անել, որպեսզի պրոպագանդիստի արտահայտած մտքերը իրոք լինեն պարզ, նպատակասլաց, հասկանալի և մատչելի, հետաքրքրություն առաջացնեն։ Այս հարցը պետք է հուզի ամեն մի պրոպագանդիստի, դառնա նրա ուշադրության առարկան։

Այս տեսակետից, պրոպագանդիստի ելույթի հաջողությունը մեծ չափով կախված է այն բանից, թե որքանով պրոպագանդիստը լավ է տիրապետում լեզվին, բանավոր խոսքի առանձնահատկություններին։ Պարզ, համոզիչ և խելոք խոսքը, կենդանի մտքերի ճիշտ շարադրումը—ահա այն կարևորագույն պահանջները, որ անհրաժեշտ են ամեն մի պրոպագանդիստի համար։

Սակայն, լեզուն ինքնանպատակ չէ, այլ խնդրի լուծմանը, նպատակին հասնելու միջոց։ Եվ երբ պրոպագանդիստը խոսում է, բայց չի մտածում, հեռանում է իրականությունից, կյանքից, ապա նրա ելույթը՝ նույնիսկ ամենաակտուալ թեմայի մասին, կդառնա մեռած, չոր, սխեմատիկ։ Սա նշանակում է, որ նախ և առաջ հարկավոր է ապահովել ելույթի բովանդակությունը, որովհետև լավ և պարզ է խոսում միայն նա, ով տիրապետում է մտքին և լավ գիտի նյութը։

Բայց պատահում է, երբ պրոպագանդիստը հույսը դնելով իր հիշողության և գիտելիքների վրա, լսարան է մտնում առանց բազմակողմանիորեն մշակելու նյութը։ Այդպիսի պրոպագանդիստի խոսքը պարզ չի լինում, կցկտուր է դառնում, նա հաճախ ուղղում է իրեն, վերապահումներ է անում և բանը հասնում է այնտեղ, որ ունկնդիրները դադարում են լսել նրան։ Դա հետևանք է այն բանի, որ պրոպագանդիստը ստիպված է լինում լսարանում, ունկնդիրների ներկայությամբ աշխատել ելույթի թե՛ բովանդակության և թե՛ լեզվի վրա, ոտքի վրա ձևակերպելով այս կամ այն դրույթը կամ միտքը։

Այդպիսի անհաջողությունից խուսափելու համար, պրոպագանդիստը պետք է նախօրոք, ելույթին պատրաստվելու ժամանակ լրջորեն մտածի և հղկի իր մտքերը։ Գնալով պարապմունքի, նա արդեն պետք է պարզ պատկերացնի, թե ինչ է ասելու ունկնդիրներին և այն ժամանակ կլուծվի խնդիրը՝ ինչպես խոսել։ Սա նշանակում է, որ լավ ելույթի գլխավոր պայմանը՝ թեման, քննարկվող հարցը խորը իմանալն է։

Միայն մեթոդական ճիշտ ձևեր օգտագործելու դեպքում մեր պրոպագանդիստներին կհաջողվի ցույց տալ մարքսիզմ-լենինիզմի գաղափարների իրական, մոբիլիզացնող նշանակությունը, կոմունիստների քաղաքական ուսուցումը սերտորեն կկապվի տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների հետ։ Քաղաքական ուսուցումը պետք է օժանդակի ունկնդիրների քաղաքական-արտադրական ակտիվության վերելքին։ Պրոպագանդիստները պետք է ձգտեն, որպեսզի սովետական մարդիկ պարզ հասկանան կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրները և դրանց լուծմանը մասնակցեն գիտակցաբար և համոզված։

---

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԼՈՒՐՋ ՄԻՋՈՑՆԵՐԻՑ ՄԵԿԸ

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

Էջմիածնի շրջանի Սամաղարի մեքենա-տրակտորային կայանի աշխատողները սիրով են կարդում իրենց պատի թերթը՝ «Մեխանիզատոր»-ը և նրա երգիծական հավելվածը՝ «Մեղուն»: Պատի թերթի խմբկոլի նախագահը՝ փորձված հողաշինարար Աբել Գրիգորյանը կարողացել է թերթի շուրջը համախմբել ՄՏ կայանի բոլոր մեխանիզատորներին. Հեղինակային ակտիվի ջանքերով պատի թերթն ու երգիծական հավելվածը մեծ համբավ են ձեռք բերել կոլեկտիվում, նրանց յուրաքանչյուր համարի լույս տեսնելը կարևոր իրադարձություն է այստեղ:

— Ոչ մի հրաման այնքան ուժ ու ներգործություն չունի, որքան մեր թերթը,— ասում է ՄՏ կայանի դիրեկտոր Ն. Նազարյանը:

Նա այդ համոզմանն է եկել փորձից: Ինչպիսի՜ հաջող ելույթներ են ունեցել պատի թերթն ու նրա հավելվածը, ինչպիսի՜ թերություններ ասես, որ չեն հայտաբերել և օգնել պարտակազմակերպությանը, դիրեկցիային:

Պատի թերթի երգիծական հավելվածի հերթական համարներից մեկում կարդում ենք ներքոհիշյալ ոտանավորը.

### ԿՈՂՄՆԱԿԻ ԳՈՐԾԸ ՀԱՄՈՎ Է

Ես միշտ այդպես գործ կուզեմ,
Որ փողիս պակասը դզեմ,
Կողմնակի գործը համով
Վճարը կանխիկ դրամով:
Կարգապահությունս ո՞րն է,

Գլխավորը՝ նպըդ փողն է,
Թող գործ լինի ես անեմ,
Ինչ էլ ասեն՝ կտանեմ:
Փափախս գործի սիրահար,
Ահա, Միհրան ինչ դառար...

Այս երգիծական ոտանավորը քննադատում է խառատ Միհրանի արատները: Այդ քննադատության հետևանքները դրական են թե՛ Միհրանի և թե՛ կոլեկտիվի մյուս անդամների համար: Ոչ ոք չի մոռացել, թե ինչպես անցյալ տարի «Մեղու»-ի «Պլանային ջուրը» վերնագրով փոքրիկ ֆելյետոնը Սամաղար բերեց ռեսպուբլիկայի երկու մինիստրների:

Այդպիսին են «Մեխանիզատոր»-ն ու «Մեղուն»-ն: Սամաղարի ՄՏ կայանի գոտու գծով պարտշրջկոմի քարտուղարը և ՄՏ կայանի պարտբյուրոն՝ դիրեկտորի հետ միասին պաշտպանում են պատի թերթի ամեն մի նախաձեռնություն, արձագանքում և ժամանակին ընթացք են տալիս նրա յուրաքանչյուր քննադատական ելույթին: Ահա այս է պատճառը, որ մեխանիզատորները սիրով են աշխատակցում իրենց թերթին, նրան գրում, դիմում են իրենց հուզող հարցերի մասին, վստահ լինելով, որ իրենց խոսքը ապարդյուն չի անցնի:

Այսպիսի պատի թերթեր քիչ չկան մեր ռեսպուբլիկայում: Ահա Սիսիանի շրջանի Բազարչայի կոլտնտեսության «Բարձր մթերատվության համար» պա-



տի թերթը: Նա բազմակողմանիորեն է լուսաբանում կոլտնտեսության կյանքը: Նրա էջերում կոլտնտեսականները կարդում են հացահատիկի արտադրության, անասնաբուծական մթերքների ավելացման, առաջավոր փորձի, սոցիալիստական մրցության տարածման և այլ հարցերի մասին հետաքրքրական շատ նյութեր: «Բարձր մթերատվության համար» թերթը միաժամանակ համարձակ քննադատում է շարքային կոլտնտեսականներին, բրիգադիրներին, ֆերմաների վարիչներին, մասնագետներին, երբ նրանք թերանում են իրենց գործում: Պատի թերթը ճաշակով է ձևավորվում, լեզուն հստակ է, պատկերավոր: Ահա մի քանի թևավոր խոսքեր, որոնք զարդարում են թերթը. «Առաջ պլանդ կատարիր, հետո տոնդի պարիր», «Գործդ յոթ անգամ չափի ու ձևի, կովը կաթ չի տա բստ բանաձևի»:

Պատի թերթի խմբկոլի նախագահ Գր. Գրիգորյանը խելացիորեն է կատարել աշխատանքի բաժանումը խմբագրական կոլեգիայի անդամների միջև: Թերթը դարձել է կոլտնտեսային արտադրությունն առաջ մղող միջոցներից մեկը, դարձել է ներգործող, մարտունակ: Նրա յուրաքանչյուր համարին սպասում են մեծ սիրով: Բազարչայի կոլտնտեսությունը անցյալ տարի լավ ցուցանիշների է հասել և այդ բանում, անկասկած, մեծ է պատի թերթի ծառայությունը:

Երևանի Ավտոդողերի գործարանում լույս է տեսնում «Երևանի շիննիկ» ամենօրյա պատի թերթը և նրա հավելված «Կրոկոդիլ»-ը: Նրանց մասին շատ է գրվել մեր մամուլում: Հայպետհրատը լույս է ընծայել պատի թերթի խմբագիր Տ. Կարապետյանի գրքույկը՝ խմբկոլի աշխատանքի փորձի մասին: Այնտեղ նա պատմում է, թե ռուսերեն և հայերեն լեզուներով լույս տեսնող այս պատի թերթը ինչպես է դարձել բանվորական ամբիոն, ինչպես բանվորները, ինժեներները, ծառայողները սիստեմատիկաբար աշխատակցում են պատի թերթին, համոզված լինելով, որ անհետևանք չի մնա նրանց և ոչ մի քննադատական ելույթ: Պատի թերթի հեղինակությունը մեծանում է նրանով, որ գործարանի պարտկազմակերպությունն ու դիրեկցիան ամեն կերպ աջակցում են թերթին, ընթացք տալիս նրա բարձրացրած հարցերին: Թե ինչպես է պատի թերթը թափանցում արտադրական կյանքի մեջ, ինչպես է օժանդակում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, կարելի է տեսնել հետևյալ օրինակից. անցյալ տարի Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը պարտավորություն էր ստանձնել գոյություն ունեցող արտադրական տարածություններում ավտոդողերի արտադրությունն ավելացնել 50 տոկոսով: Պատի թերթի խմբկոլը իր առաջնահերթ խնդիրը համարեց օգնել գործարանի կոլեկտիվին՝ այդ պարտավորությունը հաջողությամբ կենսագործելու: Իր բանթղթակիցների միջոցով պատի թերթը ամեն օր պատմում էր մրցության առաջավորների, բարձր արտադրողականության առաջամարտիկների մասին և դրական օրինակի ուժով գործարանում բորբոքում էր աշխատանքային նոր եռանդ: Պատի թերթը և նրա հավելվածը միաժամանակ ահազանգում են գոյություն ունեցող թերությունների մասին, ցույց տալիս դրանց վերացման ուղիները: Օրինակ, հավաքման ցեխը աշխատում էր անհամաչափ, լինում էին պարապուրդներ: Թերթի խմբկոլի առանձնացրած բանթղթակիցների բրիգադան եղավ ցեխում: Թերությունների բացահայտման և դրանց վերացման համար շատ արժեքավոր առաջարկությունների կենսագործման միջոցով հավաքման ցեխը դուրս եկավ ճեղքվածքից, սկսեց աշխատել անընդմեջ և կատարել պետական առաջադրանքը:

Ամենօրյա պատի թերթ լույս ընծայելը խրախուսելի երևույթ է: Այդ մա-

սին հիացմունքով են խոսում բոլոր գործարաններում։ Ափսոս, որ «Երևանի շիննիկ»-ին ընդօրինակելու փորձերը քիչ են, անվճռական։

Կոլտնտեսային գյուղի աշխատավորության մեջ լավ համբավ ունի Սպիտակի շրջանի Կաթնաջուր գյուղի կոլտնտեսության պատի թերթը։ Պարտիական կազմակերպության ղեկավարության շնորհիվ «Կաթնաջրի կոլտնտեսական»-ը վերջերս սկսել է լույս տեսնել տասն օրը մեկ անգամ. (քիչ կոլտնտեսություններում կարելի է գտնել տասնօրյա պատի թերթ)։ Նա իր գլխավոր խնդիրն է համարում հանրային տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ բարձրացումը։ Թերթի առաջ քաշած բազմաթիվ կենսական խնդիրներից առանձնապես ուշադրավ էր այն հարցը, թե ինչու Կաթնաջրի կոլտնտեսությունը տարիներ շարունակ շաքարի պլանտացիաներից ցածր բերք էր ստանում, քան հարևան Լեռնավան, Արտագյուղ, Սարահարթ գյուղերի կոլտնտեսությունները։ Խմբագրական կոլեգիան իր ակտիվի հետ ուսումնասիրեց այդ հարցը, ապա լույս ընծայեց թերթի հատուկ համար, ուր հանգամանորեն վերլուծության ենթարկվեց ճակնդեղի պլանտացիայի մշակության վիճակը։ Թերթի այդ համարը քննության առնվեց սկզբնական պարտկազմակերպության ժողովում։ Այնուհետև «Կաթնաջրի կոլտնտեսական»-ը քայլ առ քայլ հետևեց, որպեսզի կենսագործվի պարտկազմակերպության որոշումը, վերացվեն թերությունները։ Արդյունքը եղավ այն, որ Կաթնաջրի կոլտնտեսությունն անցյալ տարի աճեցրեց շաքարի ճակնդեղի բարձր բերք։

Լավ պատի թերթեր են լույս տեսնում Լենինականի Տեքստիլ կոմբինատում, Շամշադինի շրջանի Այգեձոր, Միկոյանի շրջանի Աղավնաձոր, Գորիսի շրջանի Ցայչի գյուղերում, Արթիկ-տուֆում, Հոկտեմբերյանի շրջանի «Արաքս» սովետական տնտեսությունում։

Վերոհիշյալ պատի թերթերի աշխատանքի փորձը ցույց է տալիս, թե ինչեր կարող է անել ստորին մամուլը, եթե նրան լավ է ղեկավարում սկզբնական պարտիական կազմակերպությունը։

Ստորին մամուլը՝ պատի թերթերը, ուլիչովկաները, «Կայծակ» թերթիկները, երգիծական հավելվածները, սովետական տարիների ծնունդ են և ամուր մտել են մեր կենցաղի մեջ։ Այժմ դժվար է պատկերացնել գործարան, ֆաբրիկա, կոլտնտեսություն, մեքենա-տրակտորային կայան, ուսումնական հաստատություն և հիմնարկ՝ առանց պատի թերթի։

Ստորին մամուլը նկատելիորեն աշխուժացավ Հայաստանի բանգյուղթղթակիցների համագումարի նախապատրաստության և անցկացման շրջանում։ Բանվոր և գյուղացի թղթակիցների, մամուլի և ռադիոյի աշխատողների, ինչպես նաև ընթերցողների ժողովներում և շրջանային կոնֆերանսներում հանրագումարի բերվեցին պատի թերթերի կատարած աշխատանքը մեր պարտիայի XX համագումարի պատմական որոշումների կենսագործման ուղղությամբ։ Այդ բուռն ժողովներից ու կոնֆերանսներից հետո սկզբնական պարտկազմակերպությունները, պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները ավելի հաճախակի են անդրադառնում ստորին մամուլին, ավելի շատ են քննարկում նրա բարելավման հարցերը։

Պատի թերթերի այս աշխուժացումը ոչ թե նվազեցնում, այլ ավելի է բարձրացնում պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը։ Եթե այժմ ավելի լայն հնարավորություններ կան ստորին մամուլի զարգացման համար, ապա շատ տեղերում դեռևս պարտիական կազմակերպությունները



լավ չեն օգտագործում այդ հնարավորությունները։ Ավելին, առանձին սկզբնական պարտկազմակերպություններ թերագնահատում են ստորին մամուլի ուժը, չեն մտահոգվում նրա բախտով։ Ուրիշ ինչո՞վ կարելի է բացատրել, որ Իջևանի շրջանի Ջողազ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպությունը չունի իր պատի թերթը, կամ՝ Գետաշենի կոլտնտեսությունում պատի թերթն ամիսներով լույս չի տեսնում։ Այսպիսի շատ թերություններ արձանագրվեցին Իջևանի շրջանի գյուղթղթակիցների կոնֆերանսում։ Արթիկի Հացի գործարանում արդեն մեկ տարի է, որ պատի թերթը լռել է, իսկ այդ չի անհանգստացնում սկզբնական պարտկազմակերպությանը։

Կոտայքի շրջանի Գողթ, Հացավան, Էլար, Քանաքեռ գյուղերում, անասնապահական սովետական տնտեսությունում պատի թերթերը լույս են տեսնում շատ անկանոն, իսկ սկզբնական պարտկազմակերպությունները մատը մատի չեն տալիս։ Բազմաթիվ ահազանգումներ կան, որ պատի թերթերը հաճախ ասես կապալով են տրվում ակումբի վարիչներին և գրադարանային աշխատողներին, որի հետևանքով խմբկոլների անունից պատի թերթերը լույս են ընծայում ակումբա-գրադարանային աշխատողները։ Այսպիսով, թերթը կոլեկտիվ օրգանից դառնում է անհատի օրգան։ Այդպես է վիճակը, օրինակ, Միկոյանի շրջանի Շատին, Մալիշկա, Գնդևազ գյուղերում։

Ինչպես ցույց տվին բանգյուղթղթակիցների շրջանային կոնֆերանսները, հատկապես այդ առիթով կազմակերպված պատի թերթերի ցուցահանդեսները (իսկ այնտեղ ցուցադրվում էին համեմատաբար լավ համարները), շատ թերթեր լույս են տեսնում ցածր մակարդակով։ Նրանցում զետեղված նյութերը հաճախ ընդհանուր են, ձանձրույթ են պատճառում, լեզուն ճապաղ է, գրվում են տառասխալներով։ Իջևանի շրջանի Ծաղկավան գյուղի կոլտնտեսության պատի թերթի անցյալ տարվա սեպտեմբեր ամսվա համարը կազմված էր երկարաշունչ երեք հոդվածներից, որոնցից մեկը կոչվում էր առաջնորդող։ Երեքն էլ խոսում էին աշնանացանի, ծխախոտի, եգիպտացորենի նշանակության մասին։ Դրանք ընդհանուր դատողություններ էին և ոչինչ չէին պատմում կոլտնտեսության իրական գործերից։ Մի՞թե պարզ չէ, որ Ծաղկավանում պատի թերթը լույս է տեսնում ձևականության համար։ Նույնը կարելի է ասել Աղինի շրջանի Սառնաղբյուր, Քարաբերդ, Սարակապ գյուղերի կոլտնտեսություններում լույս տեսնող պատի թերթերի մասին։ Դրանց էջերը լցվում են ամեն տեսակ նյութերով, բայց այնտեղ ընթերցողը ոչինչ չի գտնի կոլտնտեսության առաջավորների փորձի, կամ աշխատանքում տեղ գտած թերությունների մասին։

Ստորին մամուլից պահանջվում է ավելի կոնկրետություն տեղական փորձի, մանրունքների, պրակտիկայի ուսումնասիրության մեջ, ավելի խորամուխ լինել կյանքի մեջ, վերլուծել այն և ցույց տալ, թե որտեղ և ինչ եղանակով են հասել հաջողության։ Գաղտնիք չէ, որ ամենից շատ դատողություններ, հազար անգամ ասված, հայտնի մտքեր կրկնվում է հենց առաջավոր փորձի մասին գրած նյութերում։ Դրանք ընդհանուր շաբլոնով գրված թղթակցություններ են, որոնք ոչ թե օգնում, այլ հոգնեցնում են ընթերցողներին։ Առաջավոր փորձի անվան տակ պատի թերթերում բազմաթիվ անգամ թվարկվում են առաջավոր բանվորների ու կոլտնտեսականների անունները, նշվում առանձին փաստեր։ Այդպես գրելու համար առանձին եռանդ, գիտելիք հարկավոր չէ։ Բայց ինչպե՞ս, ի՞նչ միջոցով են առաջավոր-

ները հասնել այդ բարձր ցուցանիշներին: Այս հարցի պատասխանն է, որ հաճախ չեն տալիս մեր պատի թերթերը:

Ստորին մամուլը պետք է համարձակորեն բացահայտի նաև գոյություն ունեցող թերությունները: Այստեղ նույնպես կոնկրետություն է պահանջվում: Ի՞նչ արժեք ունի անհասցե, անդեմ քննադատությունը: Այսպես, Սիսիանի շրջանի Շաղաթի կոլտնտեսության պատի թերթը ընդհանուր առմամբ անդրադառնալով ծխախոտի տերևաքաղի և աշխօրերի գրանցման գործում եղած թերություններին, գրել է.

«Դեռևս շատ վատ է բոլոր օղակներում ծխախոտի քաղից և շարից ստացվող աշխօրերի հաշվառման դրվածքը, հաճախ օղակավարը սխալ գրանցում է կատարում, աշխօրերը շռայլում է իր մարդկանց վրա»: Ովքե՞ր են այդ մարդիկ, որ աշխօրերը շռայլում են, գրանցում յուրայինների հաշվին: Այս հարցը մնացել է անպատասխան, որովհետև հեղինակը ջուր է առել բերանը:

Երբեմն պատի թերթը քննադատում է, բայց արդյունքը չի տեսնում: Այսպես, օրինակ, Արտաշատի շրջանի Մասիս գյուղի կոլտնտեսության «Բարձր բերքի համար» պատի թերթի քննադատական շատ ելույթներ մնացել են «ձայն բարբառո հանապատի»:

Հետաքրքրական է Շահումյանի շրջանում լույս տեսնող երկու երգիծական պատի թերթերի բախտը: Մեկը լույս է տեսնում Լենինի անվան մետաքսագործվածքային ֆաբրիկայում և կոչվում է «Ոզնի», մյուսը՝ ՄՏ կայանում և կոչվում է «Խարտոց»: Առաջինում զետեղվում են սուր քննադատական բնույթի նյութեր, ծաղրանկարներ, որոնցով խարազանվում են աշխատանքից խուսափողները, գլուխ պահողները, խոտանարարները: Ուրիշ է «Խարտոցը»: Մի ժամանակ նա նույնպես քննադատում էր: ՄՏ կայանի պարտկազմակերպությունն ուշադրություն չդարձրեց և, ինչպես մեխանիզատորներն են ասում, «Խարտոցը» ժանգոտեց, երկար ժամանակ է, լույս չի տեսնում:

Մի շարք պարտիական կազմակերպություններ ժամանակին չեն արձագանքում ստորին մամուլի քննադատությանը: Ավելին, նրանք ժամանակին չեն պատժում քննադատությունը ճնշողներին: Ինչպես Աղինի շրջանի բանգյուղթղթակիցների կոնֆերանսում, այնպես էլ Հայաստանի բանգյուղթղթակիցների համագումարում ելույթ ունեցավ Աղինի շրջանի Ջիթհանքով գյուղի կոլտնտեսության պատի թերթի նախկին խմբագիր Ա. Մկրտչյանը: Նա պատմեց, որ դեռ անցյալ տարի նրան հալածեցին մի ծաղրանկարի համար: Դրանից հետո պատի թերթը լույս է տեսնում շատ անկանոն, իսկ երգիծական «Շնաճանճ»-ը հանձնվեց արխիվին: Մի՞թե այս բոլորից հետո Աղինի պարտշրջկոմը չպետք է զբաղվի գյուղթղթակից Ա. Մկրտչյանի հարցով:

Հայաստանի բանգյուղթղթակիցների համագումարը հատուկ սրությամբ առաջ քաշեց ստորին մամուլի բարելավման հարցը: Բանվոր և գյուղացի թղթակիցներին ուղղած իր դիմումով համագումարը կոչ արեց ավելի լրջորեն և խորը կերպով լուսաբանել մեր կյանքը:

Ստորին մամուլը կարող է կատարել իր խնդիրը, եթե նրա շուրջը համախմբվեն ավելի շատ բանվորներ և գյուղացիներ, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետներ: Դեռևս 1925 թվականին մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բանգյուղթղթակցային շարժման մասին ընդունած որոշման մեջ նշել է, որ պարտիայի հիմնական խնդիրն է՝ քաղաքականապես



դաստիարակել բանվորական ու գյուղական թղթակցին, նրան դարձնելով պարտիայի գործարար օգնականը՝ սովետական ապարատի բարելավման աշխատանքում եղած թերությունների, բյուրոկրատական խեղաթյուրումների դեմ մղվող պայքարում:

Ստորին մամուլի ղեկավարությունը դրված է սկզբնական պարտկազմակերպությունների վրա: Յուրաքանչյուր պարտկազմակերպություն պետք է հոգ տանի, որ պատի թերթը լույս տեսնի բովանդակալից, նրա նյութերը լինեն նպատակասլաց, օգնեն՝ հաջողությամբ լուծելու ժողովրդա-տնտեսական կարևոր հարցերը: Որպեսզի պատի թերթը հեղինակություն վայելի, ներգործոն լինի, անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունն ապահովի խմբագրական կոլեգիայի ակտիվ աշխատանքը, թերթի շուրջը համախմբի բանգյուղթղթակիցներին: Այդ դեռ քիչ է: Պարտիական կազմակերպությունը պարտավոր է պաշտպանել, խրախուսել ստորին մամուլի ամեն մի խելացի առաջարկություն, ուշադիր քննարկել նրա ամեն մի ահազանգում:

Ճիշտ է ասված, որ մամուլի ուժը պարտիական ղեկավարության մեջ է: Այնինչ, երբեմն պատի թերթերի նկատմամբ կենդանի, գործնական ղեկավարությունը փոխարինվում է ընդհանուր խոսակցությամբ, ձևական կերպով պատի թերթի հարցը քննվում է միայն քննելու և արձանագրության մեջ գրելու համար: Այդպես են վարվում Գորիսի Տեղարդկոմբինատում: Դեռ անցյալ տարվա փետրվարին կոմբինատի պարտբյուրոն մի որոշում ընդունեց, որով «Հարվածային արտադրող» պատի թերթի կոլեգիային առաջարկվեց պարտադիր կարգով ամսական մեկ անգամ, իսկ տոնական օրերին հերթից դուրս լույս ընծայել պատի թերթը: Բայց հակառակ պարտկազմակերպության բյուրոյի քարտուղարի համոզման՝ այդ որոշումը մոգական ուժ չունեցավ և խմբկոլը ոչ ամիսը մեկ, ոչ էլ հերթից դուրս թերթի համար չտվեց: Վերջապես, սեպտեմբերին կոմբինատի պարտբյուրոն նորից անդրադարձավ այդ հարցին և ընդունեց մի նոր, ավելի «գործնական» որոշում: Դա էլ չփոխեց դրությունը: Հաշիվը մնաց նույնը՝ ինն ամսում պատի թերթի երեք համար: Այնինչ Տեղարդկոմբինատում ընկած է աշխատանքային կարգապահությունը, շարունակվում է խոտան արտադրանքը: Իսկ պատի թերթը ինչե՞ր ասես, որ չէր կարող անել այնտեղ կարգ ու կանոն ստեղծելու համար:

Հայաստանի բանգյուղթղթակիցների համագումարի ամբիոնից շատ խոսվեց պարտիայի քաղաքային և շրջանային մի շարք կոմիտեների, ռեսպուբլիկական, քաղաքային, շրջանային մամուլի մասին: Նշվեց, որ նրանք անհրաժեշտ օգնություն չեն ցույց տալիս ստորին մամուլին: Պարտիական կոմիտեները հազվադեպ են հրավիրում պատի թերթերի խմբկոլի նախագահների սեմինարներ ու կոնսուլտացիաներ, դրեթե չեն հրավիրվում սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների և պատի թերթերի խմբագիրների միացյալ խորհրդակցություններ, որոնցում կարելի կլիներ քննության առնել ստորին մամուլի զարգացման ճանապարհին ընկած շատ հարցեր:

Ռեսպուբլիկական թերթերն ու ամսագրերը քիչ բան են անում լավագույն պատի թերթերի հարուստ փորձն ընդհանրացնելու, բարձրորակ տեսություններ, կոնսուլտացիաներ տպագրելու ուղղությամբ: Ստորին մամուլին շատ բանով կարող են օգնել քաղաքային և շրջանային թերթերը: Ինչո՞ւ նրանք չեն փորձում արտատպել պատի թերթերի լավագույն նյութերը: Շրջանային թերթերի խմբ-

բագրությունները հաճախ բողոքում են խմբագրական հաստիքների պակասության, խմբագրության աշխատողների ծանրաբեռնվածության մասին։ Եթե շրջանային թերթի խմբագրությունները կարողանան խելացիորեն օգտագործել պատի թերթերի և նրանց շուրջ համախմբված թղթակիցների ուժը, ապա նրանց գործը շատ բանով կհեշտանա։ Գործարանում ու կոլտնտեսությունում, դպրոցում ու մեքենա-տրակտորային կայանում պատի թերթը պետք է հանդիսանա տպագիր թերթի հսկիչ պոստը, աչքն ու ականջը։ Եթե բանվոր և գյուղացի թղթակիցները, գործարանի ինժեները, գյուղական բժիշկն ու ագրոնոմը, դպրոցի ուսուցիչը զգան, որ պատի թերթի թիկունքին կանգնած են ռեսպուբլիկական, քաղաքային, շրջանային թերթերը, պարտիական կազմակերպությունները, նրանք ավելի սերտորեն կկապվեն ստորին մամուլի հետ, ավելի շատ կգրեն տեղական կյանքի նվաճումների ու հոգսերի մասին։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պայքարում է ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման, սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման համար։ Սովետական մամուլը, այդ թվում նաև պատի թերթերը պետք է միշտ գտնվեն այդ պայքարի առաջավոր գծի վրա։ Մեր պարտիան պահանջում է բարձրացնել ժողովրդական մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը։ Այդ ակտիվության ու ինքնագործունեության վառ արտահայտություններից է բանգյուղթղթակիցների պանծալի շարժումը, մեր մասսայական մամուլը։

Ուսումնասիրելով և պրոպագանդելով առաջավոր մարդկանց, առաջավոր գործարանների ու կոլտնտեսությունների աշխատանքի հարուստ փորձը՝ պատի թերթը բոլոր հնարավորություններն ունի նաև խիզախորեն բացահայտելու գոյություն ունեցող թերությունները, մերկացնելու հնի մնացորդները կրողներին՝ բյուրոկրատներին, կաշառակերներին, հասարակական համակեցության կանոնները խախտողներին, լոդրերին, գործալիքներին։

Երկարամյա փորձը ցույց է տալիս, թե ներգործելու ինչպիսի զորեղ զենք է պատի թերթը, թե ինչպիսի հզոր միջոց է այն աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում։ Ահա թե ինչու մեր պարտիան այդքան մեծ ուշադրություն է դարձնում ստորին մամուլի վրա, ահա թե ինչու նա պահանջում է պարտիական կազմակերպություններից ամենօրյա ղեկավարություն և օգնություն։ Ստորին մամուլը պարտիական աշխատանքի բաղկացուցիչ մասն է և պահանջում է մշտական ուշադրություն ու հոգատարություն։ Եթե մեր ռեսպուբլիկայի տպագիր թերթերն ու ամսագրերը հաշվվում են տասնյակներով, ապա պատի թերթերը հազարներ են։ Նրանք լրացնում են տպագիր մամուլին, իրենց արթուն աչքով թափանցում մեր կյանքի բոլոր ոլորտները և օգնում պարտիական կազմակերպություններին՝ հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության խնդիրները։

---

## ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՆԵՐՊԱՐՏԻԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Համարձակ քննադատությունը և ինքնաքննադատությունը Կոմունիստական պարտիայի ամբողջ գործունեության բնորոշ առանձնահատկությունն է։ Քննադատական, ռևոլյուցիոն ոգին դրված է մարքսիզմ-լենինիզմի, այսինքն՝ այն ուսմունքի մեթոդի հիմքում, որով հետևողականորեն առաջնորդվում է պարտիան։ Առանց իրականության նկատմամբ ցուցաբերած քննադատական վերաբերմունքի պարտիան չէր կարող հաջողությամբ լուծել հասարակական կյանքի վերափոխման խնդիրները, առաջնորդել ժողովրդին։

Ուսատի և պարտիական շինարարության սկզբունքներին, պարտիական աշխատանքի պրակտիկային նվիրված իր բազմաթիվ աշխատություններում Վ. Ի. Լենինը մշտապես ընդգծում է քննադատության և ինքնաքննադատության նշանակությունը պարտիայի կյանքում, ցույց է տալիս, թե ինչպես պետք է օգտվել կյանքի ճանաչողության այդ միջոցից, թերությունների շտկման և կադրերի ճիշտ դաստիարակության այդ սուր զենքից։ Վ. Ի. Լենինի ամբողջ գործունեությունը օրինակ է այն բանի, թե ինչպես պետք է համարձակորեն բացահայտել սխալների արմատները, մերկացնել բոլոր թշնամական պարտիաներին և միևնույն ժամանակ ինչպես պետք է հոգատարությամբ ուղղել մոլորվողներին, քննադատության միջոցով օգնել նրանց ճիշտ ուղու վրա կանգնելու համար։

Պարտիայի, նրա գործի օգտին, պարտիականության ամրապնդման համար արվող քննադատությունը — ահա թե ինչով է տոգորված լենինիզմի թեորիան և պրակտիկան։

Դեռևս պարտիայի ստեղծման առաջին տարիներին Վ. Ի. Լենինը գրում էր. «...Ինքնաքննադատությունն անպայման անհրաժեշտ է ամեն մի կենդանի ու կենսունակ պարտիայի համար։ Ինքնագոհ օպտիմիզմից ավելի գռեհիկ բան չկա» (Երկեր, հ. 8, էջ 575)։ Ո՞վ չի հիշում «Ի՞նչ անել»-ի լենինյան այն տողերը, որոնք նվիրված են այս դարի սկզբներին գործող սոցիալ-դեմոկրատական բազմաթիվ խմբակների կազմակերպական թափթփվածության, տնայնագործականության քննադատությանը։ «... Ներեցե՛ք. այդ ռևոլյուցիոներ չէ, այլ ինչ-որ ողորմելի տնայնագործ»,— ասում էր Վ. Ի. Լենինը այն մարդկանց մասին, որոնք տատանվում էին թեորիայի հարցերում, նեղ մտահորիզոն ունեին և իրենց դանդաղկոտությունը արդարացնելու համար վկայակոչում էին մասսաների տարերայնությունը։ Բայց հենց այդ սուր քննադատությունը օգնեց իսկական ռևոլյուցիոներներ դաստիարակելու, կադրերին իրենց սեփական սխալների վրա սովորեցնելու գործին։

Պարտիայի ամբողջ պատմությունը լեցուն է այդպիսի օրինակներով, որովհետև քննադատությունը և ինքնաքննադատությունը ինչ-որ էպիզոդիկ,

վաղանցիկ բան չէ,— դա մշտապես գործող միջոց է, պարտիական աշխատանքի մեթոդ։ Վ. Ի. Լենինը կանգ չէր առնում այն բանի առջև, որ թշնամիները կարող են օգտագործել մեր աշխատանքի թերությունները և բացերը, որոնք ինքը՝ պարտիան է բացահայտել։ «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ» գրքում նա գրում էր այն մասին, որ հակառակորդները թող չարախնդան ու ծամածռություններ անեն, տեսնելով մեր վեճերը, իրենց նպատակների համար առանձին տեղեր պոկեն մեր թերությունների մեր քննադատությունից, «... ռուսական սոցիալ-դեմոկրատները արդեն բավականաչափ կոփված են ճակատամարտերում, որպեսզի չշփոթվեն այդ կսմթոցներից, որպեսզի հակառակ դրանց, շարունակեն իրենց ինքնաքննադատության և սեփական այն մինուսների անողոք մերկացման աշխատանքը, որոնք անպատճառ և անխուսափելիորեն կհաղթահարվեն բանվորական շարժման աճման հետևանքով» (Երկեր, հ. 7, էջ 255)։

Այն բանից հետո, երբ պարտիան կանգնեց իշխանության ղեկի մոտ, քննադատության և ինքնաքննադատության դերը անսահման աճեց նրա ներքին կյանքում։ Պարտիայի ուսերի վրա դրվեց հսկայական պատասխանատվություն երկրի բախտի համար, սոցիալիզմի ուղիով նրա զարգացման համար։ Ռուսաստանում գործող մյուս բոլոր պարտիաները չկարողացան պատմական ստուգմանը դիմանալ։ Նրանք իրենց վարկաբեկեցին ժողովրդի աչքում, և աշխատավորները երեսը շուռ տվեցին նրանցից։ Կոմունիստական պարտիան դարձավ երկրի միակ պարտիան, իսկ այդպիսի մենաշնորհ դիրքը հղի է մեծ վտանգներով պարտիայի համար, եթե նա ինքը չքննադատի իրեն և աններկյուղ չուղղի սեփական սխալները։ Բայց պարտիան միշտ էլ հետևում է Վ. Ի. Լենինի ցուցումներին, որը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից քիչ առաջ գրում էր. «Մենք մշտապես պետք է ստուգենք մեզ, ուսումնասիրելով քաղաքական անցքերի շղթան իրենց ամբողջությամբ, իրենց պատճառական կապակցությամբ, իրենց արդյունքներով։ Վերլուծելով երեկվա սխալները, մենք դրանով իսկ սովորում ենք խուսափել սխալներից այսօր և վաղը» (Երկեր, հ. 26, էջ 44)։

Եվ կարծես թե ընդհանրացնելով պարտիական շինարարության փորձը մինչռևոլյուցիոն ժամանակաշրջանում և Սովետական իշխանության առաջին տարիներին, Վ. Ի. Լենինը գրում էր. «Մինչև այժմ կործանված բոլոր ռևոլյուցիոն պարտիաները կործանվել են այն բանից, որ մեծամտել են և չեն կարողացել տեսնել, թե ինչումն է իրենց ուժը և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին։ Իսկ մենք չենք կործանվի, որովհետև չենք վախենում խոսել մեր թուլությունների մասին, և կսովորենք հաղթահարել այդ թուլությունները» (Երկեր, հ. 33, էջ 367)։

Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ պարտիան մշակեց իր կյանքի այնպիսի նորմաներ, որոնք ապահովում էին քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացում, օգնում էին թերությունների բացահայտման և ուղղման գործում բոլոր կոմունիստների ներգրավելուն։ «Կոմունիստների պարտականությունն է լռության չտալ իրենց շարժման թուլությունները, այլ բացահայտորեն քննադատել դրանք, որպեսզի շուտով և արմատականորեն ազատվեն դրանցից» (Երկեր, հ. 31, էջ 216),— ահա թե ինչի մեջ էր տեսնում Վ. Ի. Լենինը պարտիայի հաջող գործունեության կարևորագույն պայմանը։

ՌԿ(բ)Պ 9-րդ Համառուսաստանյան կոնֆերենցիայի բանաձևում՝ «Պարտիական շինարարության հերթական խնդիրների մասին», որը գրվել է Վ. Ի. Լենինի անձնական մասնակցությամբ, մատնանշված է. «Անհրաժեշտ է պարտիայի ներքին կյանքում իրագործել պարտիայի ինչպես տեղական, այնպես էլ կենտրոնական հիմնարկների ավելի լայն քննադատություն։ Հանձնարարել Կենտկոմին շրջաբերականի միջոցով ցույց տալ ներպարտիական քննադատությունը ընդհանուր ժողովներում ընդլայնելու եղանակները»։ Պարտիայի X համագումարի որոշումներում խոսվում է այնպիսի միջոցառման նշանակության մասին, ինչպիսին է «համապարտիական, ընդհանուր-քաղաքական և տեղական կյանքի բոլոր կարևորագույն հարցերի լայն քննարկումը պարտիայի անդամների ընդհանուր ժողովներում, ընդհուպ մինչև բջիջները», նշվում է, որ պարտիական աշխատանքի մեթոդներն են «ամենից առաջ բոլոր կարևորագույն հարցերի լայն քննարկումների մեթոդները, այդ հարցերի վերաբերյալ դիսկուսիաները՝ ներպարտիական քննադատության լիակատար ազատությամբ հանդերձ, համապարտիական որոշումները կոլեկտիվորեն կազմելու մեթոդները, քանի դեռ այդ հարցերի առթիվ ընդհանուր-պարտադիր պարտիական որոշումներ չեն ընդունվել»։

Քննադատության և ինքնաքննադատության վերաբերյալ լենինյան դրույթները մարմնավորված են ՍՄԿՊ Կանոնադրության մեջ, որը պարտիայի յուրաքանչյուր անդամի պարտականությունն է համարում՝ «զարգացնել ինքնաքննադատությունը և ներքևից եկող քննադատությունը, երևան հանել աշխատանքում եղած թերությունները և հասնել դրանց վերացմանը, պայքարել պարադային բարեհաջողության և աշխատանքում ձեռք բերված հաջողություններով արբենալու դեմ։ Քննադատության ճնշումը ծանր չարիք է։ Նա, ով խլացնում է քննադատությունը, այն փոխարինում է պարադայնությամբ և գովերգությամբ, չի կարող գտնվել պարտիայի շարքերում»։ Եվ այնուհետև Կանոնադրության մեջ ասվում է. «Առանձին կազմակերպությունների կամ ամբողջ պարտիայի մեջ պարտիական քաղաքականության հարցերի ազատ և գործարար քննարկումը պարտիայի յուրաքանչյուր անդամի անկապտելի իրավունքն է, որը բխում է ներպարտիական դեմոկրատիայից։ Միայն ներպարտիական դեմոկրատիայի հիման վրա կարող է ծավալվել ինքնաքննադատությունը և ամրապնդվել պարտիական կարգապահությունը, որը պետք է լինի գիտակցական, և ոչ թե մեխանիկական»։

Հոգ տանելով այն մասին, որ պարտիայի ներսում ապահովվեն ազատ քննարկումը և քննադատությունը, առանց որի չի կարող լինել գործողությունների գիտակցական միասնություն, Վ. Ի. Լենինը դրա հետ մեկտեղ մշտապես պարզաբանում էր, թե ի՛նչ պետք է հասկանալ պարտիայի ներսում քննադատության ազատություն ասելով և ինչպես պետք է օգտվել այդ ազատությունից։ Չի կարելի հաշվի չառնել այն, որ պարտիայի թշնամիները, նրա սեփական շարքերում եղած հակապարտիական տարրերը միշտ էլ ձգտել են իրենց նպատակների համար օգտագործել «քննադատության ազատության» լոզունգը, քննադատությունը— պարտիայի ուժի այդ աղբյուրը— դարձնել նրա շարքերի խախտման, նրա գաղափարական և կազմակերպական միասնության քայքայման միջոց։

Պարտիան իր գործունեության արդեն առաջին քայլերի ժամանակ հանդիպել է այդ գործելակերպին, որը հետագայում սովորական դարձավ լենինիզմին թշնամի տարրերի համար։ Հայտնի է, որ «էկոնոմիստները» աշխա-

տում էին «քննադատության ազատության» դրոշի ներքո բանվոր դասակարգին շեղել ռևոլյուցիոն ուղուց դեպի համաձայնողականության ուղին, մարքսիզմը նենգափոխել բուրժուական իդեոլոգիայով։ Այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը «Ի՞նչ անել»-ում գրում էր. «Ազատությունը մեծ խոսք է, բայց արդյունաբերության ազատության դրոշի տակ մղվել են ամենաավազակային պատերազմներ, աշխատանքի ազատության դրոշի տակ թալանել են աշխատավորներին։ Նույնպիսի ներքին կեղծիք է պարունակվում «քննադատության ազատություն» խոսքի ժամանակակից գործածության մեջ...

Մենք ստվար խմբով, ամուր բռնած միմյանց ձեռքերից, գնում ենք զառիթափ և դժվար ուղիով։ Մենք բոլոր կողմերից շրջապատված ենք թշնամիներով և գրեթե միշտ հարկադրված ենք գնալ նրանց կրակի տակով։ Մենք միացել ենք ազատ ընդունած վճռով՝ հենց նրա համար, որ պայքարենք թշնամիների դեմ և չսայթաքենք-չընկնենք հարևան ճահիճը, որի բնակիչները հենց սկզբից պախարակում էին մեզ նրա համար, որ մենք ջոկվել, առանձին խումբ ենք կազմել և ընտրել ենք պայքարի ուղին, և ոչ թե հաշտեցման ուղին։ Եվ ահա մեզնից ոմանք սկսում են ճչալ՝ գնա՜նք այդ ճահիճը։— Իսկ երբ նրանց սկսում են ամաչեցնել, նրանք առարկում են. ի՜նչ հետամնաց մարդիկ եք դուք և ինչպես դուք չեք ամաչում ժխտել ձեզ դեպի լավագույն ճանապարհ կանչելու մեր ազատությունը։— Օ՜, այո՛, պարոննե՛ր, դուք ազատ եք ո՛չ միայն կանչելու, այլև գնալու ուր որ կամենաք, թեկուզ ճահիճը. մենք նույնպես գտնում ենք, որ ձեր իսկական տեղը հենց ճահիճն է, և մենք պատրաստ ենք ձեզ աջակցություն ցույց տալու մեր ուժերի չափ, որպեսզի դուք տեղավորվեք այնտեղ։ Բայց միայն թողե՛ք այն ժամանակ մեր ձեռքերը, մի՛ կառչե՛ք մեզ և մի՛ ապականեք ազատություն մեծ խոսքը, որովհետև չէ՞ որ մենք էլ «ազատ» ենք գնալու, ուր որ ցանկանում ենք, ազատ կռվելու ոչ միայն ճահճի դեմ, այլև նրանց դեմ, ովքեր շուռ են գալիս դեպի ճահիճ» (Երկեր, հ. 5, էջ 467—468)։

Հետագա տարիներին ևս Վ. Ի. Լենինը բազմիցս անդրադարձել է քննադատության ազատության հարցին։ «Քննադատության ազատությունը հիանալի բան է,—ասում էր Վլադիմիր Իլյիչը 1920 թվականին, երբ այդ լոզունգին առանձնապես մոլեռանդորեն կառչեցին բոլոր հակապարտիական ուժերը— բայց այն բանից հետո, երբ մենք բոլորս նրա տակ ստորագրել ենք, մեղք չէ զբաղվել նաև քննադատության բովանդակության հարցով։ Քննադատության ազատությամբ մեզ երկար ժամանակ վախեցնում էին մենշևիկները, էսեռները և այլ մարդիկ, բայց մենք դրանից չվախեցանք։ Եթե քննադատության ազատությունը նշանակում է կապիտալիզմի պաշտպանության ազատություն, ապա մենք կճզմենք այն» (Երկեր, հ. 31, էջ 534—535)։

Վ. Ի. Լենինը ցույց է տալիս «քննադատության ազատության» վերաբերյալ խոսակցությունների ներքին կեղծիքը, եթե այդ խոսակցությունների ժամանակ չէր բացահայտվում, թե ի՛նչի դեմ պետք է ուղղված լինի քննադատությունը, թե ի՛նչ նպատակների համար պետք է ծավալել այն։ «Չէ՞ որ, ընկերնե՛ր, պետք է խոսել ոչ միայն բառերի մասին, այլև նրանց բովանդակության մասին,— նախազգուշացնում էր Վ. Ի. Լենինը պարտիայի X համագումարում,— «Քննադատության ազատություն» բառերի նման խոսքերով մեզ չեք խաբի» (Երկեր, հ. 32, էջ 243)։



Պետք է դնել ոչ միայն քննադատության ազատության, այլ նրա բովանդակության հարցը— ահա թե ինչ է ուսուցանում Լենինը։ Իսկ ո՞րտեղ է այն ջրբաժան գիծը, որը օգնում է տարբերելու պարտիական, գործին օգուտ բերող քննադատությունը խորթ կամ օտարներին ձայնակցող քննադատությունից։ Այս հարցի սպառիչ պատասխանը Վ. Ի. Լենինը տվել է դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին։ «Պարտիական կազմակերպությունը և պարտիական գրականությունը» հոդվածում նա գրում էր.

«Ամեն ոք ազատ է գրելու ու խոսելու այն բոլորը, ինչ նա կամենում է, առանց ամենափոքր սահմանափակումների։ Բայց ամեն մի ազատ միություն (որոնց թվում՝ պարտիան) նմանապես ազատ է դուրս քշելու այնպիսի անդամներին, որոնք պարտիայի ֆիրմայից օգտվում են հակապարտիական հայացքներ քարոզելու համար... Պարտիան մի կամավոր միություն է, որն անխուսափելիորեն կկազմալուծվեր, սկզբում գաղափարապես, իսկ հետո նաև նյութապես, եթե որ նա իրեն չմաքրեր այն անդամներից, որոնք հակապարտիական հայացքներ են քարոզում։ Իսկ պարտիականի և հակապարտիականի միջև սահմանը որոշելու համար ծառայում է պարտիական ծրագիրը, ծառայում են պարտիայի տակտիկական բանաձևերն ու նրա կանոնադրությունը» (Երկեր, հ. 10, էջ 42—43)։

Միայն այն քննադատությունը կարելի է պարտիական համարել, որը ելնում է պարտիայի ծրագրից, նրա կանոնադրությունից, սկզբունքային հարցերի շուրջը ընդունած նրա որոշումներից։ Իսկ եթե քննադատությունը ուղղված է այդ հիմունքների ջլատման, աշխատանքի կազմալուծման նպատակին, ապա հենց այդպիսի քննադատությունն էլ պետք է հակապարտիական համարել՝ այստեղից բխող բոլոր հետևություններով։ Այդ, իհարկե, չի նշանակում, թե պարտիայի անդամը չի կարող իր կարծիքն ունենալ պարտիական աշխատանքի այս կամ այն հարցի մասին։ Բոլշևիկյան կարգապահությունը յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է անվերապահորեն կատարել պարտիական որոշումները, բայց նրան ամենևին չի զրկում այդ որոշումների առթիվ արտահայտվելու, իր առաջարկությունները մտցնելու իրավունքից։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ անհրաժեշտ համախմբվածությունը և միասնությունը պետք է միացնել քննարկման անհրաժեշտ ազատության հետ։ Լենինյան այս պահանջը իր արտացոլումը գտավ պարտիայի 9-րդ կոնֆերենցիայի որոշման մեջ, որտեղ ասված է. «Ամեն մի ռեպրեսիա այն ընկերների դեմ, որոնք պարտիայի կողմից որոշված այս կամ այն հարցի վերաբերմամբ այլ կարծիք ունեն, անթույլատրելի է»։

Պարտիական քննադատության հատկանշական գիծը նրա գործարար բնույթն է, երբ սխալները ոչ միայն քննադատվում են, այլև բացահայտվում են այդ սխալների արմատները, մտցվում են առաջարկություններ թերությունները վերացնելու համար։ Վ. Ի. Լենինը մեծագույն անհանդուրժողականությամբ էր վերաբերվում այն քննադատությանը, որը նպատակ ուներ ոչ թե այս կամ այն միջոցառումները ձեռք առնել, այլ արվում էր «գիտակցությունը սրելու» համար։ «Որոշակի դրական որոշման հետ չկապված «բացասական» լոզունգը ոչ թե «սրում է», այլ բթացնում է գիտակցությունը, որովհետև

*այդպիսի լոզունգը փուչ բան է, դատարկ աղաղակ, անբովանդակ դեկլամա-
ցիա» (Երկեր, հ. 23, էջ 83)։*

Քննադատության համար արվող քննադատությունը առանձնապես ան-
հանդուրժելի է այն ժամանակ, երբ հարցը վերաբերում է մեր պարտիային,
նոր հասարակության կառուցման հարցերին։ Վ. Ի. Լենինը շատ օրինակներով
ցույց էր տալիս, թե ինչ է նշանակում քննադատության բովանդակությունը
այն պայմաններում, երբ պարտիան գտնվում է իշխանության ղեկի մոտ։
Վերցնենք թեկուզ և բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարը։ Երբ այս հարցը
դրվեց օրակարգում, Վ. Ի. Լենինը ասում էր, որ այն կարելի է և պետք է
դնել, «բայց դնել ո՛չ թե քննադատություն քննադատության համար տեսակե-
տից, այլ այդ պայքարի մեթոդների գործնական ցուցումների տեսակետից,
իսկ է՛լ ավելի լավ՝ իսկական պայքարի տեսակետից այն հիմնարկներում,
որտեղ աշխատում են քննադատող ընկերները, և այդ պայքարի արդյունք-
ների ու դասերի վերաբերյալ հաղորդումների տեսակետից» (Երկեր, հ. 31, էջ
547—548)։

Քննադատության համար արվող քննադատությունը միայն վնաս կարող
է բերել, և Վ. Ի. Լենինը գիտակից բանվորներին կոչ էր անում մերկացնել
աղմկարարներին, ցույց տալ, որ նրանք իրականում ոչ թե օգնում են, այլ
խանգարում են տնտեսության շինարարությանը, չեն օգնում, այլ խանգա-
րում են սոցիալիստական ռևոլյուցիային, իրականացնում են ոչ թե պրոլե-
տարական, այլ մանր բուրժուական ձգտումներ (Երկեր, հ. 33. էջ 9)։ Վ. Ի.
Լենինը անուշադիր չի թողել նաև քննադատության ձևի հարցը։ Նա գրում էր,
որ քննադատությամբ հանդես եկող ամեն ոք պարտավոր է «... քննադատու-
թյան ձևի տեսակետից հաշվի առնել պարտիայի դրությունը նրան շրջապա-
տող թշնամիների մեջ, իսկ քննադատության բովանդակության տեսակետից
պետք է, իր անմիջական մասնակցությամբ սովետական ու պարտիական աշ-
խատանքին, փորձի գործնականում ուղղել պարտիայի կամ նրա առանձին
անդամների սխալները» (Երկեր, հ. 32, էջ 299)։

Վ. Ի. Լենինը մատնանշում է, որ հարկավոր է միշտ էլ տարբերել գոր-
ծարար քննադատությունը այն քննադատությունից, որն ամենից ավելի քիչ է
հետապնդում թերությունների իրական ուղղման նպատակը։ Ընդսմին նա
կոմունիստներին նախազգուշացնում էր. «... Երբ դուք կլսեք այդպիսի քըն-
նադատություն, անբովանդակ քննադատություն, քննադատություն քննադա-
տության համար, զգաստ եղե՛ք, տեսե՛ք, գուցե քննադատող ընկերոջ ինք-
նասիրությունը որևէ բանով խոցված է, գուցե նա անձամբ վիրավորված կամ
գրգռված է որևէ բանից...» (Երկեր, հատ. 31, էջ 549)։

Կոչ անելով զարգացնել ներքևից եկող քննադատությունը, այս կամ այն ներե-
վույթները կամ առանձին աշխատողների գործողությունները գնահատելիս
ունկնդրել մասսաների ձայնին, Վ. Ի. Լենինն ասում էր, որ մենք, իհարկե,
մասսայի ոչ բոլոր ցուցումներին կենթարկվենք, որովհետև երբեմն մասսան
ևս ենթարկվում է ամենևին էլ ոչ-առաջավոր տրամադրությունների։ «Բայց
մարդկանց գնահատելու գործում «քսվողներին», «կոմիսարացածներին»,
«բյուրոկրատացածներին» բացասաբար վերաբերվելու գործում անպարտիա-



կան պրոլետարական մասսայի ցուցումները, իսկ շատ դեպքերում նաև ան-
պարտիական գյուղացիական մասսայի ցուցումները, վերին աստիճանի ար-
ժեքավոր են։ Աշխատավոր մասսան մեծագույն դյուրազգացությամբ որսում է
այն տարբերությունը, որը կա ազնիվ ու անձնվեր կոմունիստների և այնպիսի-
ների միջև, որոնք զզվանք են ներշնչում ճակատի քրտինքով իր հացը ճարող
մարդուն, ոչ մի արտոնություն, ոչ մի «ճանապարհ դեպի իշխանավորությունը»
չունեցող մարդուն» (Երկեր, հ. 33, էջ 25)։

Քննադատության և ինքնաքննադատության զարգացման կապակցու-
թյամբ ծառացած բազմաթիվ հարցերի պատասխանները կան Վ. Ի. Լենինի
աշխատություններում։ Նա նախազգուշացնում էր շատ սխալներից և հատկա-
պես այն բանից, որ քննադատությունը չօգտագործվի ի վնաս պարտիայի։
«Չկա չարիք առանց բարիքի»,— հաճախ կրկնում էր Վ. Ի. Լենինը։ Կյանքում
երբեք այնպես չի եղել, որ սոսկ միայն թերություններ լինեն, ինչպես և այն-
պես չի լինում, որ ամեն ինչ բարեհաջող լինի։ Դրական և բացասական
կողմերը միշտ էլ զուգընթաց են լինում, և շատ կարևոր է, քննադատությու-
նը զարգացնելիս, չկորցնել ծառերի ետևից անտառը, առանձին թերություն-
ների ետևից ընդհանուր պատկերը տեսնելու ընդունակությունը։ Վ .Ի. Լենինն
ասում էր. «Մեր ամեն մի հարյուր սխալին, որոնց մասին ամբողջ աշխարհով
մեկ ճչում են բուրժուազիան և նրա լակեյները (նրանց թվում մեր մենշևիկ-
ները ու աջ էսեռները), ընկնում են 10.000 մեծ և հերոսական ակտեր, որոնք
առավել ևս մեծ ու հերոսական են այն պատճառով, որ նրանք պարզ են, ան-
նկատելի, թաքնված են ֆաբրիկային թաղամասի կամ ետ ընկած գյուղի առ-
օրյա կյանքում, կատարվել են այնպիսի մարդկանց կողմից, որոնք սովոր
չեն (և հնարավորություն չունեն) իրենց ամեն մի հաջողության մասին ճչալ
ամբողջ աշխարհով մեկ։

Բայց եթե նույնիսկ դրա հակառակը լիներ— թեև ես գիտեմ, որ այդպի-
սի ենթադրությունը ճիշտ չէ,— եթե նույնիսկ մեր 100 ճիշտ ակտին ընկներ
10.000 սխալ, այնուամենայնիվ մեր ռևոլյուցիան համաշխարհային պատմու-
թյան առջև կլիներ և նա կլինի մեծ ու անպարտելի, քանի որ առաջին անգամ
ո՛չ թե փոքրամասնությունը, ո՛չ թե միայն հարուստները, ո՛չ թե միայն
կրթվածները, այլ իսկական մասսան, աշխատավորների հսկայական մեծա-
մասնությունը իրենք են նոր կյանք կառուցում, իրենց փորձով են լուծում
սոցիալիստական կազմակերպման դժվարագույն հարցերը» (Երկեր, հ. 28, էջ
71—72)։

Իսկական բոլշևիկյան քննադատությունը և ինքնաքննադատությունը
միշտ էլ տոգորված է հոգատարությամբ գործը բարելավելու մասին, եռկրում
և պարտիայի ներսում տեղի ունեցող ամեն ինչի համար իսկական, տըն-
տեսատիրական պատասխանատվության զգացումով։ Քննադատությունը ուղ-
ղել դեպի չլուծված հարցերի լուծումը, դեպի թերությունների ուղղումը, քըն-
նադատությունն օգտագործել պարտիական կազմակերպությունների մարտու-
նակությունը բարձրացնելու համար— ահա թե ինչ է ուսուցանում Վ. Ի.
Լենինը։

«Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ» հոդվա-
ծում Լենինը գրում էր.

«Թող մեռնող բուրժուազիայի և նրա հետևից քարշ եկող մանրբուրժուական դեմոկրատիայի շներն ու խոզերը մեզ վրա անեծքի, հայհոյանքի, ծաղրի կույտեր թափեն մեր սովետական հասարակարգի կառուցման անհաջողությունների և սխալների համար։ Մենք ոչ մի րոպե չենք մոռանում այն, որ անհաջողություններ ու սխալներ մենք իրոք շատ ենք ունեցել և շատ ենք անում։ Չէ՞ մի, խուսափել անհաջողություններից ու սխալներից այնպիսի նոր, ամբողջ համաշխարհային պատմության համար նոր գործում, որպիսին է դեռ չտեսնված տիպի պետական կառուցվածքի ստեղծումը։ Մենք անշեղ պայքարելու ենք մեր անհաջողություններն ու սխալները ուղղելու համար, կյանքում սովետական սկզբունքների մեր կիրառումը լավացնելու համար. կիրառում, որը շատ ու շատ հեռու է կատարելությունից։ Բայց մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք նրանով, որ մեզ երջանկություն բաժին ընկավ սկսելու սովետական պետության կառուցումը, սկսելու դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան, այն նոր դասակարգի տիրապետության դարաշրջանը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի մարդկության ազատագրումը կապիտալի լծից, իմպերիալիստական պատերազմներից» (Երկեր, հ. 33, էջ 41—42)։

«ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ» № 23, 1956 г.

---



# ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՈՒՄԸ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՇՐՋԱՆԻ ՄԵՏԱՂԻ ԿՈՄԲԻՆԱՏՈՒՄ

Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը ժողովրդական տնտեսության մեջ գլխավոր բացառիկ նշանակություն ունի։ Դա սոցիալիստական կուտակման աղբյուրներից մեկն է, որ անհրաժեշտ է ինչպես ընդհանուր արտադրության հետագա զարգացման, այնպես էլ աշխատավորության բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար։ Այդ իսկ պատճառով մեր պարտիան և կառավարությունը միշտ էլ հատուկ ուշադրություն են դարձրել արտադրանքի ինքնարժեքի իջեցման վրա։

ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսված է արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը վեցերորդ հնգամյակի ընթացքում՝ առնվազն 17 տոկոսով։ Արդյունաբերության աշխատողների առջև դրված է կարևոր խնդիր. յուրաքանչյուր ձեռնարկությունում ապահովել արտադրական պլանի կատարումը բոլոր ցուցանիշներով, այդ թվում նաև որակական օբյեկտի տնտեսական գործունեության այնպիսի մի կարևոր ցուցանիշ, ինչպիսին է արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։ Որպեսզի ձեռնարկությունում արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար ավելի արդյունավետ պայքար ծավալվի, նախ և առաջ անհրաժեշտ է իմանալ, թե այն ինչից է բաղկացած և ինչ կարևոր հանգամանքներ են ազդում նրա վրա։

Հայտնի է, որ ինքնարժեքը ձեռնարկության այն բոլոր ծախսերի դրամական արտահայտությունն է, որոնք կատարվում են արտադրանքի թողարկման և իրացման համար։

Արդյունաբերության մեջ ներկայումս ընդունված է, այդ ծախսերն ըստ տնտեսական էլեմենտների խմբավորել հետևյալ ձևով՝ հում նյութ, հիմնական նյութեր, օժանդակ նյութեր, էներգիա, հիմնական միջոցների ամորտիզացիա (մաշվածք), աշխատավարձ, սոցիալական ապահովագրման մասնահանում և այլ դրամական ծախսեր։

Այստեղ անհրաժեշտ է նկատի ունենալ, որ նշված առանձին ծախսերի տեսակարար կշիռն ընդհանուր ծախսերի մեջ արդյունաբերության տարբեր ճյուղերում տարբեր է։ Այսպես, եթե հում և հիմնական նյութերի արժեքը ամբողջ արդյունաբերության մեջ միջին հաշվով կազմում է ինքնարժեքի 61,5 տոկոսը, ապա ըստ առանձին ճյուղերի պատկերը միանգամայն այլ է։ Օրինակ՝ մեքենաշինության մեջ այն կազմում է մոտ 50 տոկոս, ածխահանման արդյունաբերության մեջ՝ զերո, իսկ տեքստիլ արդյունաբերության մեջ հասնում է մինչև 80—85 տոկոսի։ Արդյունաբերության այս ճյուղում այլ պատկեր ունեն մյուս ծախսերը՝ աշխատավարձը, օժանդակ նյութերը և այլն, որոնց տեսակարար կշիռն ընդհանուր ինքնարժեքի մեջ անհամեմատ ցածր է, քան վերոհիշյալ արդյունաբերական ճյուղերում։ Այսպիսով, արտադրական

ծախսերի կազմը և առանձին տնտեսական տարրերի հարաբերական չափը ընդհանուրի մեջ կոնկրետ կերպով ցույց են տալիս այն ուղիները, որոնցով պետք է ընթանա ինքնարժեքի իջեցումը։

Խնայողության ռեժիմի խստիվ պահպանումը, տեխնիկական պրոգրեսը, աշխատանքի և արտադրության կազմակերպումը, աշխատանքի և սարքավորման արտադրողականության բարձրացումը հանդիսանում են արտադրանքի ինքնարժեքի իջեցման երաշխիքը։ Այժմ անհրաժեշտ է կոնկրետ կերպով կանգ առնել այն ուղիների և միջոցառումների վրա, որոնք պետք է ապահովեն արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը ինքնարժեքի իջեցման հիմնական ուղիներից մեկն է։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման հետևանքով աճում է արտադրանքի ծավալը, որը հնարավոր է դարձնում իջեցնել ինքնարժեքը ցեխային և ընդհանուր գործարանային ծախսերի մշտական (անփոփոխ) մասի հաշվին։ Այս դեպքում թողարկվող արտադրանքի ավելացման հետևանքով արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա կատարված ցեխային և ընդհանուր գործարանային ծախսերը նվազում են, հետևապես ավելանում է ձեռնարկության շահութաբերությունը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հնարավոր է ինչպես նոր, առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման, նույնպես և արտադրական պրոցեսների կատարելագործման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման շնորհիվ։ Այստեղ անհրաժեշտ է նշել, որ տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործման միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները արտադրության մեջ պրակտիկորեն անսպառ են։ Սակայն պետք է ասել, որ նորագույն տեխնիկան և առաջավոր տեխնոլոգիան ինքնին չեն կարող բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, եթե արտադրության մեջ աշխատողները չեն տիրապետում տեխնիկային։ Դրա համար անհրաժեշտ է ձեռնարկությունում, որպես արտադրողականության բարձրացման ամենակարևոր պայմաններից մեկը, սիստեմատիկորեն զբաղվել բանվորների և ինժեներա-տեխնիկական կադրերի գիտելիքների բարձրացումով ինչպես պրակտիկորեն, նույնպես և թեորիապես։

Տեխնիկական պրոգրեսի արագացման և նոր տեխնիկայի ներդրման գործում զգալի աշխատանք է կատարված Շահումյանի շրջանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում։ Միայն 1956 թվականի ընթացքում կոմբինատի №1 ցեխում ավելի քան 50 հնացած կոնստրուկցիայի ցածր արտադրողականությամբ գործող հաստոցներ փոխարինվել են նորերով։

Ներկայումս տեղադրված նոր հաստոցները աշխատում են 40 տոկոսով ավելի բարձր արտադրողականությամբ, քան նախկինները։ Արտադրված մետաքսյա կտորների որակը անհամեմատ բարձրացել է։

Յուրաքանչյուր հաստոցից այժմ մեկ ժամվա ընթացքում 1 մետր 10 սմ. ավելի կտոր է ստացվում։ Արտադրողականության բարձրացման, որակի բարելավման, հում նյութի տնտեսման և արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա ցեխային և ընդհանուր գործարանային ծախսերի նվազեցման շնորհիվ այդ հաստոցներից ստացված մետաքսյա գործվածքի մեկ մետրի ինքնարժեքն իջել է 51 կոպեկով։ Կոմբինատի տարեկան շահութաբերությունը միայն այդ



տեխնիկական միջոցառման շնորհիվ ավելացել է 200 հազար ռուբլով։ 1957 թվականի ընթացքում նույն ցեխում կտեղադրվեն ևս 50 նոր հաստոցներ։

Կատարելագործված են արտադրական պրոցեսները ներկման-վերամշակման ցեխերում։ Այստեղ գործվածքեղենի ներկման և դաջման առաջավոր տեխնոլոգիայի կիրառման շնորհիվ զգալիորեն աճել է աշխատանքի և սարքավորման արտադրողականությունը, բարձրացել է որակը, բարելավվել է մետաքսյա կտորների ձևավորումը և իջել է ինքնարժեքը։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել նաև մյուս ցեխերից։

Նոր տեխնիկան ճշգրիտ գործի դնելու, սարքավորումները տեխնիկապես բարձր մակարդակով սպասարկելու համար հատուկ ուշադրություն է դարձվում կադրերի որակավորման վրա։ Հայտնի է, որ գործվածքային արտադրության մեջ վարպետի օգնականը, կամ ինչպես ընդունված է անվանել՝ ենթավարպետը, հանդիսանում է կենտրոնական և որոշող դեմքը։

Այս տարի կոմբինատում կազմակերպվեց ենթավարպետների հատուկ դասընթաց, որտեղ նրանք, բացի տեսական ուսուցումից, ձեռք բերին նաև պրակտիկ գիտելիքներ։ Ուսուցումը կատարվում էր նոր տեխնիկայի և առաջավոր փորձի հիման վրա, որը հնարավորություն տվեց նրանց սպասարկելու ավել արագ գործող մեծ թվով հաստոցներ։ Աշխատանքի և սարքավորման արտադրողականությունը միջին հաշվով գործվածքային ցեխերում բարձրացավ 5—10 տոկոսով, իսկ առանձին կոմպլեկտներում (բրիգադաներում) 20—30 տոկոսով։

Կոմբինատում աշխատանքի արտադրողականությունը անցյալ տարվա համեմատությամբ միջին հաշվով բարձրացել է 13,4 տոկոսով։ Որպեսզի հասկանալի լինի, թե այդ ինչ նշանակություն ունի ձեռնարկության համար, բավական է ասել, որ ճշգրիտ հաշիվներով սահմանված է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման յուրաքանչյուր մեկ տոկոսը արտադրանքի ինքնարժեքն իջեցնում է 83 հազար ռուբլով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում որոշիչ դեր է խաղում առաջավոր փորձի ներդրումը արտադրության մեջ։ Բանվորների ուսուցումը կատարվում է ինչպես կոմբինատի առաջավորների, նույնպես և միութենական մյուս կենտրոնական ձեռնարկությունների նորարարների փորձի հիման վրա։ Այդ նպատակով կոմբինատից սիստեմատիկաբար այլ ձեռնարկություններ են ուղարկվում առաջնակարգ մասնագիտությունների բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Այս գործում ուսանելի է գործող ցեխերի աշխատանքի օրինակը։ Այստեղ մի շարք բրիգադաների աշխատանքը վերակառուցվեց Մոնինի նուրբ բրդյա կոմբինատի նորարար վարպետի օգնական Մ. Կ. Կապրալովի աշխատանքի փորձի հիման վրա, որի հիմնական առավելությունն այն է, որ աշխատանքի պրոցեսում հատուկ հաշվիչների միջոցով հայտնաբերվում են ցածր արտադրողականությամբ աշխատող հաստոցներ, ստուգվում և վերացվում են նրանց ետ մնալու պատճառ հանդիսացող արգելքները։ Սրան զուգընթաց, վարպետի օգնականը ուսումնասիրելով բարձր արտադրողականությամբ աշխատող հաստոցների աշխատանքի պայմանները, հասավ այն բանին, որ սպասարկած կոմպլեկտի բոլոր հաստոցների աշխատանքը հավասարվում է բարձր արտադրողականությամբ աշխատողների մակարդակին։

Կոմբինատի № 2 գործող ցեխի վարպետի օգնականներ Հ. Տադևոսյանի

և Մ. Վարոնցյանի կոմպլեկտների յուրաքանչյուր հաստոցից, ինչպես անցած տարվա երրորդ եռամսյակում, այնպես և հոկտեմբեր ու նոյեմբեր ամիսների ընթացքում մեկ ժամում միջին հաշվով ստացվել է 3 մետր 22 սմ. շոտլանդական մետաքսյա կտոր, պլանով նախատեսված 2 մետր 70 սմ.-ի փոխարեն: Նույն ցեխում առաջավոր վարպետի օգնական Գ. Աղաբաբյանի բրիգադան ներկայումս յուրաքանչյուր մեքենայի վրա բնական մետաքսից հյուսում է 2 մ. 17 սմ. կրեպժորժետ, պլանով նախատեսված 1 մ. 82 սմ.-ի դիմաց, իսկ առաջին ցեխից Խ. Սաքալյանի կոմպլեկտի ամեն մի հաստոց յուրաքանչյուր մեկ ժամվա ընթացքում պլանից ավել է արտադրում 41 սմ. պատրաստի գործվածք:

Արտադրողականության բարձրացման համար կոմբինատում դեռևս կան խոշոր ռեզերվներ, որոնց օգտագործումն է՛լ ավելի կբարելավի արտադրական ցուցանիշները: Այսպես, օրինակ, աշխատանքի լավագույն կազմակերպման միջոցով հնարավոր է ոչ միայն վերացնել արտապլանային պարապուրդները, որոնց առկայությունը որոշ ցեխերում բացատրվում է աշխատանքի և տեխնոլոգիական պրոցեսների անբավարար կազմակերպմամբ, այլև նույնիսկ այն իջեցնել պլանով նախատեսվածից: Անհրաժեշտ է նշել, որ պարապուրդի մեկ տոկոսի իջեցման դեպքում ինքնարժեքը տնտեսվում է 61 հազար ռուբլու չափով:

Տեքստիլ արդյունաբերության մեջ ինքնարժեքի իջեցման գործում որոշիչ նշանակություն ունի յուրաքանչյուր մեկ միավոր արտադրանքի վրա հումքի և նյութերի ծախսերի կրճատումը: Ինչպես վերևում նշվեց, հում նյութը տեքստիլ արդյունաբերության մեջ կազմում է ինքնարժեքի գերակշռող մասը, հետևապես, նրա յուրաքանչյուր միավորի տնտեսումը շեշտակի կերպով անդրադառնում է ինքնարժեքի և կուտակումների ցուցանիշների վրա: Բավական է ասել, որ Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում հումքի մեկ տոկոսի տնտեսումը ինքնարժեքը իջեցնում է մեկ միլիոն 650 հազար ռուբլու չափով:

Ձեռնարկությունները հումքի տնտեսման մեծ հնարավորություններ ունեն: Այդ գործով պետք է զբաղվել հումքի հենց մատակարարման սկզբից մինչև արտադրական բոլոր պրոցեսների ավարտումը: Հումքի և նյութերի արժեքի մեջ զգալի չափեր են կազմում փոխադրման հետ կապված վերադիր ծախսերը: Մինիստրությունները և գերատեսչություններն այս կամ այն ձեռնարկության համար հումք և նյութեր առանձնացնելիս պետք է հաշվի առնեն ոչ միայն մատակարարման օբյեկտի հեռավորությունը արտադրական ձեռնարկություններից, այլև փոխադրման հնարավորությունները:

Օրինակ, ոչնչով չի հիմնավորված այն փաստը, երբ Անդրկովկասի մետաքսաթելի ֆաբրիկաներից № 429 բնական մետաքսի թելեր են ուղարկում մետաքսի արդյունաբերության գլխավոր վարչության Մոսկվայի բազան, այն դեպքում, երբ պլանավորվում է Հայաստանի մետաքսի կոմբինատ ուղարկել այդ նույն բազայից միևնույն համարի թելը: Այս կարգի պլանավորումը ոչ միայն ավելացնում է վերադիր ծախսերը և թանկացնում ինքնարժեքը, այլև աննորմալ մատակարարման հետևանքով առիթ է տալիս պարապուրդների, հետևապես և ձեռնարկության ռիթմիկ աշխատանքի խանգարման, որը իր հերթին շատ բացասաբար է անդրադառնում ինքնարժեքի իջեցման վրա:

Դժբախտաբար այս կարգի թերություններ մինչև այժմ գոյություն ունեն գերատեսչությունների մատակարարումը պլանավորող բաժիններում:



Հում նյութը նախքան արտադրության բաց թողնելը ձեռնարկության
տեխնիկական վերստուգման բաժնի կողմից պետք է ստուգման ենթարկվի
և վերամշակվի ըստ նրա ֆիզիկական և որակական ցուցանիշների: Այստեղ
վճռական նշանակություն ունի տեխնոլոգիական պրոցեսների ճշգրիտ մշա-
կումը և խստիվ կիրառումը ըստ արտադրական առանձին-առանձին պրոցես-
ների, որը հնարավորություն է տալիս արտադրանքը բաց թողնել որակով,
առանց խոտանի: Արտադրական պրոցեսների լավագույն կազմակերպումը,
բանվորների կողմից արտադրական օպերացիաների ճշգրիտ կատարումը
հնարավոր են դարձնում հում և օժանդակ նյութի խնայողաբար ծախսումը,
արտադրական մնացորդների կրճատումը, հետևապես նաև ինքնարժեքի
իջեցումը:
Հում նյութի ծախսման հարցում անհրաժեշտ է կանգ առնել մի կարևոր
հարցի վրա: Դա վերաբերում է հատկապես մանվածք մատակարարող ձեռ-
նարկություններին: Բանն այն է, որ գործող արտադրությունները հաճախ
մանվածքը ստանում են ավելի ցածր համարի, այսինքն՝ պետական ստան-
դարտով նախատեսված միջին ցուցանիշից ավելի հաստ: Դրա հետևանքը լի-
նում է այն, որ թելի յուրաքանչյուր քաշի միավորից ստացվում է ավելի քիչ
չափով գործվածքեղեն, որպիսին բացասաբար է անդրադառնում արտադրան-
քի ինքնարժեքի վրա: Այս հանգամանքի վրա դժբախտաբար կարևոր ուշա-
դրություն չի դարձվում: Անհրաժեշտ է նախ և առաջ վերանայել տեքստիլ
արդյունաբերության որոշ ճյուղերում գոյություն ունեցող արդեն հնացած և
ներկայիս պահանջներին չհամապատասխանող ստանդարտները, որոնք թույլ
են տալիս այս կարգի խախտումներ, իսկ մյուս կողմից՝ խիստ կարգապա-
հություն և պատասխանատվություն սահմանել մանվածք արտադրող ձեռնար-
կություններում: Որպեսզի ավելի ցայտուն լինի այս հարցի կարևորությունը,
բավական է ասել, որ 1955 թվականի ընթացքում Ստեփանակերտի և Երևանի
մետաքսաթելի ֆաբրիկաների կողմից թելի միջին համարները խախտելու հե-
տևանքով Լենինի անվան կոմբինատում արտադրանքի ինքնարժեքի և օգուտ-
ների գծով կորուստները կազմել են մոտ մեկ միլիոն ռուբլի:
Ինքնարժեքի իջեցման համար կարևոր նշանակություն ունի նաև այն
ծախսերի կրճատումը, որոնք արվում են արտադրության սպասարկման և վար-
չատնտեսական ապարատի համար:
Արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա այս ծախսերի նվազեցումը
հնարավոր է ոչ միայն արտադրանքի ծավալի ավելացման դեպքում, այլև
նրանց բացարձակ իջեցման շնորհիվ, որը պետք է կատարվի ի հաշիվ վար-
չական-ավարչական ապարատի պարզեցման, էժանացման և վարչա-տնտե-
սական ծախսերի կրճատման:
Արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում մեծ դեր է խաղում ձեռ-
նարկությունների մասնագիտացումը, որը հնարավորություն է ստեղծում ար-
տադրությունն ավելի ռացիոնալ կազմակերպելու:
Չի կարելի հաշտվել այն բանի հետ, երբ ձեռնարկությանը ասորտիմեն-
տի պլան է իջեցվում, առանց հաշվի առնելու նրա արտադրական հնարավո-
րությունները մի կողմից, և սարքավորման ռացիոնալ օգտագործումը՝ մյուս
կողմից: Ասորտիմենտի բազմազանությունը ձեռնարկության մեջ հաճախակի
ստեղծում է այնպիսի պայմաններ, որ աշխատանքի որոշ տեղամասերում,
ինչպես, օրինակ, գործվածքային արտադրության մեջ հենքի կամ ոլորման

*բաժիններում, որտեղ անհամեմատ ավելի քիչ մեքենաներ են տեղադրված, քան գործվածքային ցեխերում, ստիպված են լինում այդ մեքենաների վրա նույնիսկ մեկ շաբաթվա ընթացքում մի քանի անգամ փոփոխել թելերի տեսակները և համարները։ Դա առաջացնում է շատ պարապուրդներ, տալիս է մանվածքի կտրվածքներ ու մնացորդներ, իջնում է կիսաֆաբրիկատի, այսինքն՝ հենքի և մասրայի որակը, իջնում է աշխատանքի արտադրողականությունը։ Այդ է պատճառներից մեկը, որ տեքստիլ արդյունաբերության մի շարք ֆաբրիկաներում գործվածքի հենք արտադրող մեքենաների աշխատանքի օգտակար գործակիցը նվազում է, հասնելով մինչև 0,15—0,3։*

*Տեքստիլ ձեռնարկությունների մասնագիտացումը պայմաններ է ստեղծում արագացնելու արտադրության ավտոմատացումը, արտադրական պրոցեսների շաղկապումը, նեղ տեղերի վերացումը, աշխատանքի և սարքավորման արտադրողականության բարձրացումը, որակի բարելավումը և խոտանի նվազեցումը։*

*Ինքնարժեքի իջեցման այս միջոցառումներն ավելի հաջող իրագործելու հարցում մեծ դեր է խաղում արտադրության մեջ տնտեսական հաշվարկի կազմակերպումը։ Այս տարվա սկզբից կոմբինատի բոլոր ցեխերն անցել են տնտեսական հաշվարկի, որը հնարավորություն է տվել ինքնարժեքի իջեցման հարցում ավելի խիստ հաշվառում սահմանել արտադրության յուրաքանչյուր տեղամասում և պրոցեսում, բարձրացնել ցեխերի ղեկավարների պատասխանատվությունը ինքնարժեքի պլանների կատարման գործում։ 1956 թ. 11 ամիսների ընթացքում կոմբինատում արտադրանքի ինքնարժեքը իջել է 10,5 տոկոսով՝ պլանով նախատեսված 10 տոկոսի դիմաց, իսկ պլանից դուրս ընդհանուր ինքնարժեքը իջեցված է 731 հազար ռուբլով, օգուտների պլանը գերակատարված է 414 հազար ռուբլով։ Կոմբինատը ինքնարժեքի բոլոր հոդվածներով ունի տնտեսում։*

*Սակայն, պետք է նշել, որ այս ցուցանիշները կոմբինատի կոլեկտիվի համար չեն կարող հանդիսանալ հանգստացուցիչ հանգամանք, որովհետև արտադրական ռեզերվների օգտագործման խնդրում մեզ մոտ դեռ գոյություն ունեն լուրջ թերություններ, որոնց լիկվիդացումը անհամեմատ ավելի կբարելավի արտադրական ցուցանիշները։*

*Խոսելով տեխնիկական պրոգրեսի արագացման և արտադրության մեջ նոր տեխնիկայի ներդրման մասին, անհրաժեշտ է նշել, որ մեր նվաճումները միայն մեծ գործի սկիզբն են։*

*Չի կարելի նորմալ համարել այն փաստը, որ մինչ այժմ այնպիսի աշխատատար պրոցես, ինչպիսին է գործվածքային ցեխերում հենքի հանգույցներ կապելը, կատարվում է ձեռքով, այն ժամանակ, երբ կոմբինատն արդեն մեկ տարուց ավելի է, ինչ ստացել է հանգույց կապող 2 մեքենա։ Սա տեխնիկական ղեկավարության բացերից մեկն է, որը պետք է վերացվի արագ կերպով։*

*Անբավարար վիճակում են գտնվում ներքին տրանսպորտի, հումքի, կիսաֆաբրիկատի և պատրաստի արտադրանքի տեղափոխումները արտադրության մեջ։ Կոմբինատի ղեկավարությանը դեռևս չի հաջողվել այս կարգի աշխատատար պրոցեսները մեքենայացնել, իսկ Հայկական ՍՍՌ ԹեԹև արդյունաբերության շին-մոնտաժային վարչության կողմից անհիմն կերպով մինչև*



*այժմ ձգձգվում է նախապատրաստական ցեխից գործվածքային ցեխը հենքեր տեղափոխող Մոնո գծերի ավարտումն ու շահագործման հանձնումը։*

*Լուրջ թերություն գոյություն ունի հումքի օգտագործման ասպարեզում։ Աշխատանքի որոշ տեղամասերում տեխնոլոգիական պրոցեսները խախտելու, և աշխատանքը վատ կազմակերպելու հետևանքով մանվածքի և պատրաստի արտադրանքի կտրվածքները շատանում են. այդ առաջացնում է հումքի, կիսաֆաբրիկատի և պատրաստի արտադրանքի փչացում։ Չի կարելի անտեսել այն փաստը, որ 1956 թվականի 11 ամիսների ընթացքում միայն այդ պատճառով արտադրանքի ինքնարժեքը բարձրացել է 0,3 տոկոսով։*

*Չնայած արտադրողականության բարձրացմանը, որոշ ասորտիմենտների գծով բնական կրեպդեշինի, արհեստական պիկե գործվածքների արտադրողականությունը կոմբինատում դեռևս ետ է մնում Սովետական Միության առաջավոր ձեռնարկություններից, այդ իսկ պատճառով կոլեկտիվը ձգտում է հասնել առաջավոր ձեռնարկությունների աշխատանքի մակարդակին նաև այդ ուղղությամբ։*

*Այս կարգի ռեզերվները արտադրության մեջ շատ են։ Միայն լավագույն աշխատանքի կազմակերպումը հնարավոր կդարձնի նրանց օգտագործումը։*

*Շահումյանի շրջանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի կոլեկտիվը սոցիալիստական մրցության մեջ մտնելով Թբիլիսիի Թոփուրիձեի անվան մետաքսագործվածքային ֆաբրիկայի հետ, պատվով կատարեց իր ստանձնած պարտավորությունները։ 1956 թվականի տարեկան արտադրական պլանները կատարեց ժամկետից 10 օր շուտ՝ դեկտեմբերի 20-ին։ Կոմբինատում ստեղծված են բոլոր պայմանները է՛լ ավելի բարձր ցուցանիշներով կատարելու վեցերորդ հնգամյակի հետագա տարիների առաջադրանքները։*

Գ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

## ՀՈՒՇԵՐ ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ՄԱՍԻՆ

Ավելի քան քառասուն տարի է անցել այն օրից, երբ դադարեց բաբախել ռևոլյուցիայի բոցաշունչ մարտիկ Սուրեն Սպանդարյանի սիրտը, որն իր կարճատև կյանքն ամբողջովին ի սպաս դրեց ժողովրդին։

Սուրեն Սպանդարյանի մասին, որը Տիմոֆեյ մականունն էր կրում, ես առաջին անգամ տեղեկություն իմացա 1906 թվականի սկզբներին, հնագույն բոլշևիկ Մելիք Մելիքյանի նամակից, որ գրել էր Թիֆլիսից։ «Մեր հորիզոնում բոլշևիկյան մի նոր աստղ է երևացել»,— նշում էր նա և ապա պատմում, թե դիսկուսիաներում ու բանվորական ժողովներում լենինյան գաղափարներով տոգորված ինչպիսի խանդավառ ելույթներ է ունենում Սուրենը։

Այդ նամակից հետո շատ չանցած մենք՝ Բաքվի պարտիական կազմակերպության անդամներս, մամուլից ծանոթացանք Ս. Սպանդարյանի ելույթներին և համոզվեցինք, որ նրա խոսքը մեծ ուժ ունի։ Լինելով «Կայծ» և «Նոր խոսք» թերթերի խմբագիրներից մեկը, որոնք այն ժամանակներում լույս էին տեսնում Թիֆլիսում, Ս. Սպանդարյանը սիստեմատիկաբար հանդես էր գալիս նրանց էջերում՝ պրոպագանդելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարները։ Նրա հոդվածները հաճախ բանավեճի բնույթ էին կրում։ Նա անդադրում պայքար էր մղում բոլշևիկների կատաղի հակառակորդների՝ նացիոնալիստների, մենշևիկների, սպեցիֆիկների, դաշնակների, էսեռների դեմ։

Ինչպես նրա հետ միասին խմբագրությունում աշխատող ընկերներն էին պատմում, իր խմբագրական աշխատանքի սկզբում Ս. Սպանդարյանը հայերեն վատ գիտեր, նա հոդվածները գրում էր ռուսերեն, հետո դրանք հայերենի էին թարգմանում Ռուբեն Դաշտոյանը և Բենո Սահակյանը։ Բայց հետագայում նա արդեն կատարելապես տիրապետում էր իր մայրենի լեզվին։

Ս. Սպանդարյանի հետ մենք անձամբ ծանոթացանք 1907 թվականի սկզբին, Բաքվում։ Պարտիայի Բաքվի Կոմիտեի հրավերով Սպանդարյանը Ռ. Դաշտոյանի ու Բ. Սահակյանի հետ եկել էր մասնակցելու այն ժամանակ Բաքվում լույս տեսնող «Օրեր» թերթի խմբագրման աշխատանքին։ Բացի Սուրենից, խմբագրության մեջ էր Սարգիս Կասյանը, որ Թիֆլիսից եկել էր ավելի առաջ, «Կայծ» և «Նոր խոսք» թերթերի փակվելուց անմիջապես հետո։

Առաջին իսկ հանդիպումներին Ս. Սպանդարյանը նվաճեց մեր ամբողջ խմբի համակրանքը։ Աչքի ընկնելով իր ճկուն մտքով, կարողանալով սրությամբ և թեթև հումորով շարադրել իր մտքերը, ունենալով վիթխարի եռանդ և ռևոլյուցիոն պայքարի փորձված մեթոդներ, կոփված լինելով մարքսիստական թեորիայով, Ս. Սպանդարյանը շուտով անփոխարինելի աշխատող դարձավ խմբագրության մեջ։ Իսկ երբ 8 համար լույս ընծայելուց հետո թերթի հրատարակությունը դադարեց, Սպանդարյանը պրոպագանդիստական-ագիտատորական աշխատանքի լծվեց Բաքվի բանվորական շրջաններում (Սև քաղաքում, Բալախանիում, Բիբի-Հեյբաթում)։

Սուրենը մեր շրջանում աչքի էր ընկնում ոչ միայն իր վառ լավատեսությամբ ռևոլյուցիայի հաղթության նկատմամբ, այլև զարմանալի պայծառամտությամբ. նրա մտածողությանը խորթ էր որևէ մշուշապատություն և անորոշություն։ Թե բանավոր և թե գրավոր խոսքում նրա արծարծած մտքերը հուզումնալի կրքից բացի, տոգորված էին պայծառ ճշմարտությամբ։

Անձնուրաց, անսահման գաղափարանվեր մեր Սուրենը ոչ միայն լավ տիրապետում էր մարքսիզմին, այլև քաջատեղյակ էր ռուսական և համաշխարհային գրականությանը։ Նրա ընթերցասիրության ծարավն անհագուրդ էր։ Իր աշխարհայացքի և գիտելիքների կատարելագործման նպատակով նա վատնում էր իր առանց այն էլ տկար մարմնի անսպառ կորովը։ Այդ կորովի աղբյուրը՝ նրա անսասան հավատն էր բանվոր դասակարգի վերջնական հաղթանակի նկատմամբ։

Պայծառ, հույժ պայծառ դեմք էր մեր անմոռանալի Սուրենը։

Բանվորական ժողովներում նրա ելույթներն ուղղված էին ցարական լծի դեմ և մերկացնում էին բուրժուական պարտիաների քաղաքականությունը։ Նա անողոք քննադատությամբ հանդես էր գալիս մեզ թշնամի պարտիաների դեմ, պատռում էր նրանց դիմակը, մերկացնում բանվորների մեջ բուրժուական ազդեցության տարածողներին։ Տարածելով լենինյան գաղափարները, Ս. Սպանդարյանը բանվորների մեջ անդուլ աշխատանք էր կատարում՝ բացատրելով պրոլետարիատի դերը ռևոլյուցիոն պայքարում։

Այդ ժամանակ Բաքվում սկսեցին լույս տեսնել «Բակինսկի ռաբոչի» և պրոֆմիութենական «Գուդոկ» թերթերը։ Ս. Սպանդարյանը դարձավ այդ թերթերի խմբագիրներից մեկը։

Ս. Սպանդարյանի ակտիվ գործունեությունը և ռևոլյուցիոն պայքարը Բաքվի բանվորների շրջանում շատ շուտով ցարական ախրանկայի ուշադրությունը գրավեց։ Սուրենն ստիպված էր թաքնվել ժանդարմերիայի հետապնդումներից։ Արժե պատմել մի փոքրիկ դեպք, որ տեղի ունեցավ Բալախանում։ Բանվորական ժողովում իր հերթական մի ելույթից հետո Սուրենը նկատում է, որ իր հետևից մի լրտես է քայլում։ Քայլերն արագացնելով նա սկսում է աննպատակ շրջել փողոցներում, որպեսզի խույս տա իրեն հետևող լրտեսից։ Պատահաբար ընկնում է այն փողոցը, որտեղ այդ ժամանակ ապրում էր Ստ. Շահումյանը։ Շահումյանի որդին՝ 5—6 տարեկան Լևոնը իրենց տան մոտ խաղալիս է լինում փողոցում։ Տեսնելով Սուրենին (Տիմոֆեյին), որին նա շատ անգամ էր տեսել իրենց տանը, իր հոր մոտ, Լևոնը կարծում է, թե էլի իրենց տուն է գալիս։ Բայց Տիմոֆեյն անցնում է նույնիսկ առանց խոսելու երեխայի հետ։ Լևոնը նրա հետևից գնում է։ «Տիմոֆեյ, ո՞ւր ես գընում, Տիմոֆեյ»։ Վերջինս էլ ավելի է արագացնում քայլերը, շտապ թեքվում փողոցի անկյունը, որպեսզի խույս տա նրա հետ հանդիպելուց, որը կարող էր ճակատագրական լինել ոչ միայն իր, այլև Ստեփան Շահումյանի համար։ Այսպիսով, Սուրենին հաջողվում է թաքնվել լրտեսից և բարեհաջող հասնում է քաղաք։ Նա բավական հուզված վազել էր ինձ մոտ և պատմեց այդ ամբողջ դեպքը։

Ս. Սպանդարյանը վերին աստիճանի ազնիվ մարդ էր, համեստ կյանք էր վարում։ Վաղ ամուսնացած լինելով՝ այդ ժամանակ նա արդեն չորս երեխա

տմներ։ Ինքը լինելով սակավապետ, միշտ պատրաստ էր օգնելու իր ամեն մի ընկերոջը, առանց ուշադրություն դարձնելու իր կարիքներին։ Ոչ մի պարագայում Սուրենը չէր վհատվում և իր ուրախ բնավորությամբ միշտ քաջալերում էր շրջապատի ընկերներին։ Բաքու գալուց հետո իմ ու նրա միջև այնպիսի մտերմություն էր ստեղծվել, որ մեր հանդիպումները ոչ միայն գործնական, այլև մտերմական բնույթ էին կրում։ Հաճախ մենք հենց այնպես հավաքվում էինք նրա տանը, կամ իմ տանը։ Հիշում եմ 1908 թվականի տարեմուտը։ Որոշել էինք նոր տարին դիմավորել Սուրենի մոտ։ 1907 թ. դեկտեմբերի 31-ի երեկոյան նրա տանը հավաքվեցին Ստ. Շահումյանի և իմ ընտանիքները։ Սուրենն առանձնապես ուրախ էր, նա ծիծաղաշարժ պատմություններ էր անում, հիանալի բաժակաճառեր էր ասում և շատ ջերմ մթնոլորտ էր ստեղծել։ Նոր տարվա բաժակաճառում նա արտահայտեց լավատեսությամբ լի, երդվյալ թշնամու դեմ պայքարի մեջ չնահանջող ռևոլյուցիոների զգացմունքները։ Այդ լավատեսությունը նրա մեջ ապրում էր և հետագա տարիներին, ռեակցիայի դաժան տարիներին, չնայած կրկնվող կալանքներին և աքսորներին։

1909 թվականին Ս. Սպանդարյանը ձերբակալվեց և Բաքվից աքսորվեց։ Երկու-երեք տարի մենք իրար չհանդիպեցինք, թեև պարտիական ընկերների միջոցով միշտ կապ էի պահպանում նրա հետ։

Վերջին անգամ ես նրան հանդիպեցի 1912 թվականին։ Սուրեն Սպանդարյանը և Սերգո Օրջոնիկիձեն Պրագայի կոնֆերենցիայից վերադարձել էին Կովկաս։

Մի քանի օր նրանք մնացին Բաքվում։ Սպանդարյանը մեր կազմակերպության անդամներին ծանոթացրեց Պրագայի կոնֆերենցիայի աշխատանքներին։ Պրագայից երկուսն էլ եկել էին «Կատելոկ» կոչվող գլխարկով։ Այդ գլխարկները կարող էին ոստիկանության ուշադրությունը գրավել, որովհետև աչքի էին ընկնում իրենց արտասահմանյան ծագումով։ Գալով մեր տուն՝ Ս. Սպանդարյանը և Ս. Օրջոնիկիձեն այդ գլխարկները փոխարինեցին կեպիով, իսկ «կատելոկ»-ները թողին մեզ մոտ։ Տասնչորս տարի անց, երբ Ս. Օրջոնիկիձեն Երևան էր եկել Երգէսի բացմանը, հանկարծ այդ «կատելոկ»-ները հիշեց և մասնավոր զրույցի ժամանակ ինձ հարցրեց. «Սերգո, որտե՞ղ են մեր «կատելոկ»-ները»։ Ես պատասխանեցի, որ նրանք վաղուց իմ երեխաների խաղալիքն են դարձել։ Օրջոնիկիձեն ափսոսանք հայտնեց, որ չի կարող տեսնել այդ գլխարկները և վերհիշել այն անմոռանալի ընդհատակյա օրերը։

Թիֆլիս վերադառնալուց հետո շատ չանցած Ս. Սպանդարյանը ձերբակալվեց և աքսորվեց Տուրուխանսկի երկրամաս։ Դրանից հետո ես այլևս նրան չտեսա։ Աքսորից նա ինձ մի նամակ էր գրել, որով խնդրում էր չորացրած միրգ ուղարկել իրեն։ Դժբախտաբար նրա այդ խնդիրքը անկատար մնաց, որովհետև շուտով մեզ տխուր լուր հասավ, թե արդեն մեռել է մեր բոլորիս սիրելի ընկեր ու բարեկամ Սուրենը։ Այդ 1916 թ. սեպտեմբերին էր։

Սպանդարյանի, այդ իսկական լենինյան բոլշևիկ-ռևոլյուցիոների կերպարը երբեք չեն կարող մոռանալ նրան անձամբ ճանաչողները։ Իսկ երիտասարդության համար նա կծառայի որպես կոմունիզմի գաղափարներին անձնվիրաբար ծառայողի հիանալի օրինակ։

ՍԵՐԳՈ ՄԱՐՏԻԿՅԱՆ

---



# Ի՞ՆՉ Է ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԸ

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Մարդիկ, ապրելով բնության գրկում, նկատելով նրա զարմանալի երևույթների ծագումն ու զարգացումը, դեռ անհիշելի ժամանակներից, սեփական գոյավիճակը բարելավելու համար, ձգտել են հասկանալ ընկալվող երևույթների շարժառիթները և դրանց հարափոփոխության պատճառները։ Այդ ամենը մարդկանց հուզել է այն ժամանակ, երբ մարդկությունը տակավին գտնվում էր իր զարգացման մանկական հասակում, դրանով զբաղվել են միջին դարերում, երբ իշխում էր աշխարհի ստեղծագործության մասին եկեղեցական կրոնական պատկերացումը։ Այդ հարցը կանգնած է եղել մարդկանց առաջ, երբ արտադրության և բուրժուական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց արագ թափով զարգացան բնական գիտությունները։ Այդ հարցը այժմ էլ դեռ չի դադարել հուզել մարդկությանը։

Դարեր շարունակ փիլիսոփաները վիճել են այն բանի շուրջը, թե ո՞րն է առաջնայինը՝ մտածողությո՞ւնը, թե՞ կեցությունը, ոգի՞ն, թե՞ բնությունը. ի՞նչն է ինչին նախորդում՝ գիտակցությունը կեցությա՞նը, թե՞ ընդհակառակը, կեցությունը՝ գիտակցությանը։ Այսինքն՝ այլ կերպ ասած, ամբողջ մեզ շրջապատող աշխարհը, բնությունը, տիեզերքը դա ոգու, աստծո ստեղծագործությո՞ւն է, թե՞ գոյություն է ունեցել անկախ, հանդիսացել է ու հանդիսանում է ամեն ինչի պատճառ, ամեն ինչի սկիզբ ու նախապայման, իսկ մեր գիտակցությունն էլ ածանցվել է նրանից։

Փիլիսոփայության մեջ այս հարցը կոչվում է գոյի և գիտակցության փոխհարաբերության հարց, կեցության հանդեպ մտածողության ունեցած վերաբերմունքի հարց։ Էնգելսն այս հարցը անվանում է փիլիսոփայության հիմնական, գերագույն հարց։

Ահա, նայած թե փիլիսոփաներն ինչպես են պատասխանում այս հիմնական հարցին, ըստ այնմ էլ նրանք բաժանվել են երկու իրար հակադիր ուղղությունների՝ իդեալիստների և մատերիալիստների։

Իդեալիստական ուղղության ներկայացուցիչները պնդում են, որ առաջնայինը ոգին է, թե այն գոյություն է ունեցել բնությունից առաջ, իսկ բնությունը երկրորդային է, ածանցված։ Իդեալիստական այս մտքը, որի հիմքում վերջին հաշվով ընկած է աշխարհի մասին կրոնական պատկերացումը, փիլիսոփայության պատմության ընթացքում իր տարատեսակ արտահայտություններն է ունեցել։ Իդեալիստական փիլիսոփայության ականավոր սկզբնավորողներից մեկը՝ Պլատոնը (մոտ 427—347 թ. թ.), օրինակ, գտնում էր, որ ռեալ աշխարհը դա գաղափարների աշխարհն է, իսկ զգայական աշխար-

*հը՝ բնությունը, երկրորդային է, ածանցված է գաղափարների աշխարհից, նրա ստվերն է։ Նոր ժամանակներում իդեալիզմի մյուս խոշորագույն ներկայացուցիչը՝ Հեգելը (1770—1831 թ. թ.), մտածողությունը բացարձակ ոգու անվան տակ դարձնում էր ամեն ինչի հիմք, ամեն ինչի սկիզբը։ Հեգելը բնությունը դիտում էր որպես բացարձակ ոգու այլակեցություն, որպես նրա ներքին զարգացման, ինքնագիտակցության մի աստիճան։ Ելնելով սրանից, Հեգելը բնության և հասարակության օրինաչափությունները նույնացնում էր մտածողության տրամաբանական օրենքների հետ։*

*Պլատոնն ու Հեգելը օբյեկտիվ իդեալիստներ էին։ Նրանց իդեալիզմը օբյեկտիվ է կոչվում այն պատճառով, որ նրանք ոգու, գաղափարի գոյությունը մարդու գիտակցությունից անկախ էին դիտում։ Օբյեկտիվ իդեալիզմի ուսմունքի հիմքում, ինչպես դժվար չէ տեսնել, վերջին հաշվով, ընկած է կրոնական, բոլորին հայտնի այն պատկերացումը, թե ինչ-որ գերբնական մի էակ, աստված, ստեղծել է աշխարհը։*

*Հայտնի է, որ իդեալիզմն ունի նաև մի այլ հիմնական տարատեսակ՝ սուբյեկտիվ իդեալիզմը։ Սուբյեկտիվ իդեալիզմի ներկայացուցիչները ողջ գոյի հիմքն են համարում մեր զգայությունները, պատկերացումը։ Սուբյեկտիվ իդեալիզմը գտնում է, որ արտաքին աշխարհը, առարկաները գոյություն ունեն որպես մեր զգայությունների կոմպլեքս։ Այս պատճառով նրանք պնդում են, որ առարկաները գոյություն ունեն այնքանով, որքանով նրանք ընկալվում են։ Փիլիսոփայական այս ուղղությունը սերտ կապվում է անգլիական փիլիսոփա Ջորջ-Բերկլիի (1684—1753 թ. թ.) անվան հետ։*

*Ի հակադրություն իդեալիստական ուղղության, մատերիալիզմը ելնում է այն բանից, որ առաջնայինը բնությունն է, մատերիան, որ մատերիալ, նյութական աշխարհը միշտ օբյեկտիվորեն գոյություն է ունեցել և անկախ է իդեայից, ոգուց, և մեր իսկ զգայություններից։*

*Մատերիալիստական այս ուսմունքն ունի իր դարավոր պատմությունը։ Այն տարբեր դարաշրջաններում տարբեր ձև է ընդունել, որովհետև մատերիալիզմը սերտ կապված է հասարակական պրակտիկայի, արտադրության և գիտությունների զարգացման հետ։ Էնգելսը նշում է, որ բնագիտության ամեն մի նոր, մեծ, դարաշրջան կազմող հայտնագործության հետ մատերիալիզմը ընդունում է նոր ձև։*

*Մատերիալիզմի հին ձևերից մեկը՝ հին հույների մատերիալիզմն է։ Հին հույները, յուրացնելով և ամփոփելով Արևելքի ժողովուրդների փիլիսոփայական մտքի նվաճումները, VI—V դարերում մ. թ. ա. մշակեցին աշխարհի մասին իրենց նաիվ մատերիալիստական ըմբռնումը։ Այն ժամանակ դեռ առաջին քայլերն էին արվում բնության երևույթների բացատրության ուղղությամբ, ուստի, հին հույների մատերիալիզմը համապատասխանում էր իր ժամանակի գիտության մակարդակին։ Հին հունական մատերիալիզմի պատմական ծառայությունն այն է, որ նա աշխարհի առաջացման դիցաբանական, կրոնական բացատրության փոխարեն առաջ քաշեց նյութի, բնության հավերժական, անստեղծելի լինելու մասին ուսմունքը։ Հին հունական մատերիալիստները գտնում էին, որ աշխարհը մատերիայի, նյութի փոփոխության արդյունք է։ Այսպես, հին հունական առաջին փիլիսոփաներից մեկը՝ Թալեսը (VII—VI դ. դ. մ. թ. ա.) ենթադրում էր, որ աշխարհի առաջացման համար*



*որպես նախասկզբնական մատերիա է հանդիսացել ջուրը, Անաքսիմենը (VI դ. մ. թ. ա.)՝ օդը, Անաքսիմանդրը (VI դ. մ. թ. ա.) համարում էր անորոշ մատերիան, որը նա «ապեյրոն» էր անվանում։ Հերակլիտը (V դ. մ. թ. ա.) գտնում էր, որ այդպիսի նախասկզբնական մատերիա հանդիսացել է կրակը։ Հին աշխարհի մի այլ խոշոր փիլիսոփա՝ Դեմոկրիտը (մոտ 460—370 թ. թ. մ. թ. ա.), որին բարձր է գնահատել Լենինը, գտնում էր, որ աշխարհը առաջացել է փոքրիկ, անտեսանելի, իրարից ձևով և մեծությամբ տարբերվող մասնիկների՝ ատոմների միացումից։*

*Մատերիալիզմն իր հետագա բուռն զարգացումն է ունեցել XVI—XVII դարերից սկսած, կապիտալիստական արտադրաեղանակի, գիտությունների զարգացման և ֆեոդալիզմի ու նրա կրոնական սխոլաստիկ գաղափարախոսության դեմ բուրժուազիայի մղած պայքարի հետ զուգընթաց։ Նոր ժամանակների մատերիալիզմը հենվում էր բնության մասին գիտությունների նորագույն, ռևոլյուցիոն նվաճումների վրա։ Իր զարգացումն ապրելով անգլիական փիլիսոփաներ Ֆրանցիսկ Բեկոնի (1561—1626 թ. թ.) և Թոմաս Հոբսի (1588—1679 թ. թ.), Հոլանդական փիլիսոփա Սպինոզայի (1632—1677) մոտ, նոր ժամանակի մատերիալիզմը բարձր զարգացման հասցվեց XVIII դարի ֆրանսիական մատերիալիստների՝ Դիդրոյի, Լամետրիի, Հոլբախի և Հելվեցիուսի կողմից։ XVII—XVIII դարի մատերիալիզմը մատերիալիզմի զարգացման նոր, անհամեմատ բարձր աստիճան էր։ Այն, հիմնվելով ժամանակի գիտության տվյալների վրա, գտնում էր, որ ամբողջ բնությունը նյութական է և բնության մեջ տեղի ունեցող բոլոր պրոցեսները, երևույթները, մատերիայի փոփոխման, շարժման արդյունք են։ Սակայն, ընդունելով այն փաստը, որ մատերիան փոփոխվում, շարժվում է, XVIII դարի մատերիալիստները շարժումը հանգեցնում էին սոսկ մեխանիկական շարժման և չէին կարողանում բացատրել բնության որակական բազմազանությունը։ Այդ բացատրվում է նրանով, որ այն ժամանակ մեխանիկան ավելի զարգացած գիտություն էր, իսկ մյուս գիտությունները, որոնք գործ ունեին շարժման ավելի բարձր ձևերի հետ (քիմիան, օրգանական աշխարհի մասին գիտությունները և այլն), դեռևս նոր էին դուրս գալիս սաղմնային վիճակից։ Պայքարելով իդեալիզմի դեմ, XVIII դարի մատերիալիստներն ապացուցում էին մատերիայի առաջնությունը, սակայն, նրանք չէին կարողանում բացատրել մեր գիտակցության առաջացման ու զարգացման պատճառները և առանձնահատկությունները։*

*Խոշոր մատերիալիստ էր գերմանական փիլիսոփա Ֆոյերբախը (1804—1872), որը քննադատեց Հեգելի իդեալիստական փիլիսոփայական սիստեմը, ցույց տվեց, որ նրա իդեալիզմը թեոլոգիայի նրբացված ձևն է։ Սակայն Ֆոյերբախի մատերիալիզմը, ինչպես և XVIII դարի մատերիալիզմը, մետաֆիզիկական և մեխանիկական էր։ Բացի այս, նրա մատերիալիզմը ևս միակողմանի էր, այն վերաբերում էր միայն բնության երևույթներին։ Հասարակական երևույթների բացատրության հարցում, ինչպես անցյալի բոլոր մատերիալիստները, նա ևս իդեալիստ էր։*

*Մատերիալիզմի պատմության մեջ մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը մատերիալիզմի զարգացման բարձրագույն ձևն է։ Այն որակապես տարբերվում է նախորդ բոլոր մատերիալիստական ուսմունքներից։ Մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը դա դիալեկտիկական մա-*

տերիալիզմն է, որը արմատապես տարբերվում է ամբողջ անցյալի մետաֆի-զիկական մատերիալիզմից:

Եթե մետաֆիզիկ մատերիալիստները կանգնած էին այն տեսակետի վրա, թե մատերիան որակական փոփոխության չի ենթարկվում, թե նոր որակներ չեն առաջանում, այսինքն՝ նրանք փոփոխությունը հանգեցնում էին սոսկ քանակական փոփոխությունների գումարի, ապա մարքսիստական դիալեկտիկական մատերիալիզմը գտնում է, որ մատերիան անընդհատ որակական փոփոխություններ է ապրում, զարգանալով ցածր աստիճանից դեպի ավելի բարձր աստիճանը, բարձրից՝ բարձրագույնը:

Մարքսիստական դիալեկտիկական-մատերիալիզմը, ի տարբերություն մետաֆիզիկական մատերիալիզմի, գիտակցությունը դիտում է որպես բարձր զարգացման հասած մատերիայի հատկություն: Դիալեկտիկական մատերիալիզմը միաժամանակ գիտակցությունը չի նույնացնում մատերիայի հետ: Գիտակցությունը, ուսուցանում է մարքսիստական մատերիալիզմը, թեև սերտ կապված է մատերիայի հետ և հանդիսանում է նրա արդյունքը, սակայն գիտակցությունը մատերիա չէ, այլ հանդիսանում է սոսկ բարձրագույն զարգացման հասած մատերիայի հատկություն: Մատերիալիստական փիլիսոփայության այս կարևորագույն թեզը հաստատվում է ֆիզիոլոգիայի, հոգեբանության և այլ գիտությունների, էվոլյուցիոն թեորիայի տվյալներով:

Անցյալ մատերիալիզմի ամենամեծ թերություններից մեկն էլ այն է եղել, որ նա միայն աշխատել է բացատրել աշխարհը, հայեցողական բնույթ է ունեցել, մինչդեռ, ինչպես նշում է Մարքսը Ֆոյերբախի մասին իր գրած թեզիսներում, խնդիրը այն վերափոխելն է:

Այսպիսով, մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը մատերիալիզմի զարգացման բարձրագույն աստիճանն է, որը հաղթահարել է անցյալի մատերիալիստական ուսմունքների թերությունները: Այն հիմնվում է գիտության նորագույն տվյալների վրա և հարստանում է նրանով:

Մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմի ըմբռնմամբ մատերիան օբյեկտիվ ռեալականություն է, որը գոյություն ունի մարդու գիտակցությունից անկախ: Էնգելսը գրում է, որ մատերիա հասկացողությունը փիլիսոփայական առումով դա հավաքական հասկացողություն է: Մատերիան կարճ արտահայտություն է, որի մեջ, ըստ իրենց ընդհանուր հատկանիշների, բազմաթիվ զգայապես ըմբռնելի իրեր ենք ամփոփում: Լենինն իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» հանրահռչակ աշխատության մեջ, զարգացնելով մատերիայի փիլիսոփայական ըմբռնման մասին մարքսիստական դրույթը, գրում է. «Մատերիան փիլիսոփայական կատեգորիա է, որն օբյեկտիվ ռեալականություն է և տրված է մարդուն նրա զգայությունների մեջ: Մատերիան պատճենվում է, լուսանկարվում, արտապատկերվում է մեր զգայությունների միջոցով, գոյություն ունենալով նրանցից անկախ» (Երկեր, հ. 14, էջ 161):

Լենինյան այս բնորոշման մեջ ընդգծվում է երկու հիմնական մոմենտ, նախ այն, որ օբյեկտիվ նյութական աշխարհը գոյություն ունի գիտակցությունից անկախ և ապա այն, որ մատերիան ազդում է մեր զգայարանների վրա առաջացնելով զգայություն: Լենինյան այս բնորոշումն ուղղված է իդեալիզմի



դեմ, որն այս կամ այն կերպ ժխտում է մատերիայի օբյեկտիվ ռեալականությունը կամ ժխտում է այն ճանաչելու հնարավորությունը:

Մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը տարբերություն է դնում մատերիայի փիլիսոփայական հասկացողության և նրա կառուցվածքի մասին բնագիտական պատկերացման միջև: Մատերիայի փիլիսոփայական բնորոշման մեջ չեն մտնում մատերիայի բիոլոգիական, քիմիական, ֆիզիկական ըմբռնումները: Փիլիսոփայական բնորոշումը ավելի ընդհանուր բնորոշում է, որը վերաբերվում է մատերիայի և՛ բիոլոգիական, և՛ քիմիական, և՛ ֆիզիկական կառուցվածքին: Մատերիայի փիլիսոփայական ըմբռնումը անփոփոխ է, իսկ բնագիտականը՝ փոփոխական, որովհետև մատերիայի հատկությունները անսպառ են և մատերիայի կառուցվածքի մասին մեր գիտելիքները, իմացումը հարաբերական: Օրինակ՝ ատոմի կառուցվածքի մասին մարդու գիտելիքները, սկսած Դեմոկրիտից մինչև մեր օրերը, հսկայական փոփոխություն են ապրել: Այսօր մեր պատկերացումներն ատոմի մասին երբեք չի կարելի համեմատել դեմոկրիտյան ժամանակաշրջանի հետ: Ավելին, այսօրվա մեր գիտելիքները ատոմի կառուցվածքի մասին չի կարելի համեմատել նույնիսկ ատոմի մասին մարդու պատկերացման հետ մի կես դար առաջ: Այժմ գիտությունը ատոմի մասին շատ ավելի բազմակողմանի և խոր պատկերացում ունի, քան մի քանի տասնամյակ առաջ: Եթե մինչև 1932 թվականը կարծում էին, թե ատոմը բաղկացած է երկու մասնիկից՝ պրոտոնից և նրա շուրջը պտտվող էլեկտրոնից, ապա այժմ գիտությանը հայտնի են նեյտրոնը, պոզիտրոնը, մեզոնը, նեյտրինոն, ֆոտոնը: Ֆիզիկայի նորահայտ տվյալների հիման վրա գիտնականներն առաջադրում են ատոմի կառուցվածքի մասին նոր սխեմաներ: Սակայն, այսօրվա մեր գիտելիքները ատոմի մասին ևս վերջնական չեն: Մատերիան, ատոմը, ասում է Լենինը, անսպառ է: Գիտությունն աստիճանաբար խորանում է նրա գաղտնիքների մեջ և մատերիայի կառուցվածքի, նրա շարժման ձևերի մասին բնագիտական մեր գիտելիքները գնալով խորանում են: Գիտության զարգացման ամեն մի նոր նշանակալից քայլ բացահայտում է մատերիայի նորանոր հատկանիշներ, հարստացնում է մատերիա հասկացության մասին մեր ըմբռնումները, պատկերացումները: Սակայն, մատերիայի մասին մեր գիտելիքները խորանալով, չի փոխվում մատերիայի փիլիսոփայական առավել ընդհանուր հասկացողությունը, այն է, որ մատերիան գոյություն ունի որպես օբյեկտիվ ռեալականություն, անկախ է մեր գիտակցությունից և ազդում է մեր զգայարանների վրա:

Ըստ մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմի՝ աշխարհի, բնության երևույթների բազմազանության հիմքը շարժվող, փոփոխվող, զարգացող մատերիան է: Սրանից հետևում է, որ աշխարհի միասնականությունը նրա նյութական լինելու մեջ է: Քննադատելով Դյուրինգին, որն աշխարհի միասնականությունը տեսնում էր նրա գոյության մեջ, Էնգելսը գրում է. «Աշխարհի միասնությունը նրա կեցության մեջ չէ, թեպետ նրա կեցությունը նրա միասնության նախադրյալն է, որովհետև միասնական լինելու համար աշխարհը պիտի նախ գոյություն ունենա: ...Աշխարհի իրական միասնությունը նրա նյութականությունն է, իսկ այս վերջինն ապացուցվում է ո՛չ թե մի քանի շինծու ֆրազներով, այլ փիլիսոփայության ու բնագիտության

*երկարատև ու դժվար զարգացմամբ» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, Հայպետհրատ, 1952 թ., էջ 55—56):*

*Ժամանակակից գիտությունը, օգտվելով սպեկտրալ անալիզի և հետազոտության այլ մեթոդներից, ցույց է տվել, որ մեր երկիրը և տիեզերքի բոլոր մարմինները նույն քիմիական բաղադրությունն ունեն, որ երկնային մարմինների վրա գտնվող բոլոր քիմիական էլեմենտները կան նաև երկրի վրա: Մի ժամանակ ենթադրում էին, որ արևի վրա գոյություն ունի մի գազ՝ հելիում, որը չկա երկրի վրա: Սակայն, կարճ ժամանակից հետո հելիումը գտնվեց նաև երկրի վրա: Տիեզերական հեռավոր մարմիններից երկրի վրա ընկած օդաքարերի բաղադրության ուսումնասիրությունը ևս ցույց է տվել, որ այդ օդաքարերը բաղկացած են այնպիսի էլեմենտներից, որոնք գոյություն ունեն նաև երկրի վրա և գիտությունը նրանց մեջ դեռևս չի հայտնաբերել մի էլեմենտ, որը չլինի երկրի վրա:*

*XIX դարում Շվանի և Շլայդենի կողմից օրգանիզմների բջջային կառուցվածքի հայտնագործումը ապացուցեց, որ բուսական և կենդանական օրգանիզմները ևս միասնական են:*

*Աշխարհի նյութական, մատերիալ միասնականությունը արտահայտվում է նաև այն բանում, որ քիմիական էլեմենտները ամենուրեք ենթարկվում են հիմնականում նույն օրինաչափություններին: Իհարկե քիմիական էլեմենտների գոյության պայմանները երկնային մարմինների վրա այլ են, քան երկրում, բայց նույն պայմաններում նրանք ենթարկվում են միևնույն օրինաչափություններին: Ատոմի կազմության մասին ժամանակակից գիտության նվաճումներն ապացուցում են, որ քիմիական մի էլեմենտ կարող է փոխարկվել մի այլ էլեմենտի: Գիտության այս նվաճումը ևս հաստատում է աշխարհի նյութական միասնականության մասին մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմի ուսմունքը: Ժամանակակից գիտության նվաճումները համոզիչ կերպով ապացուցում են փիլիսոփայական մատերիալիզմի աշխարհի նյութական միասնականության մասին ուսմունքը և խորտակիչ հարված են հասցնում կրոնին ու աշխարհի մասին ամեն տեսակ իդեալիստական պատկերացումներին: Այժմ գիտությունը հարուստ նյութ է տալիս այն մասին, որ բնության բոլոր երևույթները, բնության ամենափոքրիկ մասնիկներից մինչև աստղերը, անօրգանական մատերիայից մինչև բարձր զարգացման հասած օրգանական մատերիան ենթարկվում են իրենց սպեցիֆիկ օրինաչափություններին և այդ օրինաչափությունները ամենուրեք հանդիսանում են մատերիայի զարգացման օրինաչափությունները:*

*Մատերիան, ուսուցանում է դիալեկտիկական մատերիալիզմը, չի կարող գոյություն ունենալ առանց շարժման, առանց փոփոխության ու զարգացման: Շարժումը մատերիայի գոյության ձև է, այն ներքնապես հատուկ է մատերիային: Մատերիայի շարժումը մարքսիստական փիլիսոփայության ըմբռնմամբ «...հենց միայն կոպիտ մեխանիկական շարժում չէ, հենց միայն տեղափոխություն չէ, այլ՝ և ջերմություն և լույս, էլեկտրական և մագնիսային լարվածություն, քիմիական միացություն և տարրալուծում, կյանք և, վերջապես, գիտակցություն» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, Հայպետհրատ, 1950 թ., էջ 25): Այսինքն՝ շարժումը ամենաընդհանուր իմաստով, երբ այն ըմբռնվում է որպես նյութի ատրիբուտ, մատերիայի գոյության ձև, ընդգրկում է տիեզերքի մեջ գոյություն ունեցող բոլոր փոփոխություններն ու պրոցեսները, սկսած ամենահասարակ տեղափոխությունից մինչև մտածողություն: Քանի որ շարժումը հանդիսանում է մատերիայի գոյության ձև և ներքնապես հատուկ է մատերիային, ապա դրանից հետևում է, որ շարժումը անստեղծելի ու անոչնչանալի է. այն հավերժ է, ինչպես հավերժ է ինքը մատերիան:*



*Մեզ շրջապատող աշխարհի և նրա երևույթների բազմազանությունը հանդիսանում է մատերիայի շարժման արդյունք: Մատերիան անսահմանորեն բազմազան է, նրա այդ բազմազանությունն առաջանում է մատերիայի անընդհատ շարժման, զարգացման հետևանքով: Եվ այդ բազմազանությունը չէր առաջանա, եթե մատերիան չգտնվեր անընդհատ շարժման մեջ: Մատերիայի զարգացումը տեղի է ունենում վերընթաց գծով՝ ցածրից դեպի բարձր, բարձրից՝ բարձրագույնը: Այսպես, օրգանական մատերիան իր երկարատև զարգացման ընթացքում որակական փոփոխությունների ենթարկվելու ճանապարհով առաջ բերեց օրգանական բնությունը: Դարվինն ապացուցեց, որ երկրի վրա գոյություն ունեցող կենդանիների ու բույսերի բազմաթիվ տեսակները առաջացել են ոչ բազմաթիվ պարզ օրգանիզմներից բնական ընտրության և նրանց էվոլյուցիոն զարգացման ճանապարհով: Դարվինը գիտականորեն հիմնավորեց նաև այն, որ մարդը առաջացել է կենդանական աշխարհից և ոչ թե ստեղծված է աստծո կողմից:*

*Մատերիան ունի շարժման բազմաթիվ ձևեր: Դրանցից են, օրինակ, մեխանիկական շարժումը, որը շարժման ձևերից ամենապարզն է, ֆիզիկական շարժումը, որն ընդգրկում է ատոմա-մոլեկուլային շարժումը, էլեկտրո-մագնիսական պրոցեսները, ներատոմային և ներմիջուկային շարժումները և այլն: Քիմիական շարժման բնագավառին են պատկանում ատոմների և մոլեկուլների միացումն ու բաժանումը: Շարժման ավելի բարդ ձև է օրգանական կյանքը, որտեղ տեղի են ունենում ֆիզիկո-քիմիական շարժման բարդ պրոցեսները: Ուսումնասիրել շարժման այս ձևերը նշանակում է ուսումնասիրել հենց մատերիայի գոյության զանազան ձևերը:*

*Շարժման ձևերը սերտ կապված են իրար հետ և կարող են փոխանցվել մեկը մյուսի: Այսպես, մեխանիկական շարժումը կարող է փոխանցվել ֆիզիկական շարժման՝ լույսի, ջերմության, էլեկտրականության, մագնիսականության և այլն: Շարժման բազմաթիվ ձևերը, նրանց կապն ու մի ձևից մյուսին փոխադարձ անցումը չի ժխտում շարժման յուրաքանչյուր ձևի որակական տարբերությունը մյուսից: Շարժման յուրաքանչյուր ձև ունի իր օրինաչափությունները և չի կարելի, օրինակ, լոկ մեխանիկական շարժման օրենքներով բացատրել էլեկտրոնային շարժումը և այլն: Մատերիայի շարժման աղբյուրը գտնվում է հենց մատերիայի մեջ: Այդ աղբյուրը հակադրությունների պայքարն է, որը կազմում է շարժման ներքին բովանդակությունը:*

*Մատերիայի շարժումը, ուսուցանում է դիալեկտիկական մատերիալիզմը, տեղի է ունենում ժամանակի ու տարածության մեջ: Ժամանակն ու տարածությունը ևս մատերիայի գոյության ձև են: «...Ամեն մի կեցության հիմնական ձևերը,— գրում է Էնգելսը,— տարածությունն ու ժամանակն են. կեցությունը ժամանակից դուրս նույնպիսի մեծագույն անմտություն է, որքան և կեցությունը՝ տարածությունից դուրս» (Անտի-Դյուրինգ, էջ 66): Մատերիան երբեք չի կարելի պատկերացնել առանց տարածականության: Աշխարհում*

չկա ոչ մի մատերիա, օբյեկտ, լինի այն հսկայական մեծության, կամ չափազանց փոքր, որը չունենա տարածականություն, ինչպես և չկա տարածություն, որը, որպես այդպիսին, կտրված լինի մատերիայից։

Ժամանակն ու տարածությունն իրենց էությունը բացահայտում են մատերիայի շարժման ընթացքում։ Ժամանակն անպայմանորեն ենթադրում է մատերիայի շարժում։ Առանց մատերիայի շարժման ժամանակ գոյություն չունի։

Ժամանակն ու տարածությունը գոյություն ունեն օբյեկտիվորեն, այնպես, ինչպես օբյեկտիվորեն գոյություն ունի մատերիան։ Մատերիան տարածության մեջ անսահմանափակ է։ Տիեզերքը սահման չունի ոչ մի ուղղությամբ։ Այժմ աստղաբաշխության տվյալներից հայտնի է, որ մեր արեգակնային համակարգությունը մտնում է գալակտիկայի սիստեմի մեջ, որի տրամագծի երկարությունը հավասար է 100 հազար լուսային տարվա (լուսային տարին այն տարածությունն է, երբ լույսը, կտրելով մեկ վայրկյանում 300 հազար կիլոմետր, անցնում է մեկ տարվա ընթացքում։ Աստղաբաշխության մեջ լուսային տարին օգտագործվում է որպես երկարության միավոր)։ Բացի մեր գալակտիկայից, հայտնի են նաև այլ գալակտիկաներ, որոնք ընդգրկում են բազմաթիվ աստղեր և աստղային ասոցիացիաներ և որոնք մեկը մյուսից բաժանվում են միլիոնավոր լուսային տարիներով։ Սրանից հետևում է, որ մեր արեգակնային համակարգությունը հանդիսանում է անսահման տիեզերքի միայն մի փոքրիկ մասը։

Մատերիան հավերժ է նաև ժամանակի մեջ, այսինքն՝ նա չի ունեցել սկիզբ և չունի վերջ. նա ոչնչանալ չի կարող. նա կարող է սոսկ փոխակերպվել մի վիճակից մյուսին։ Իդեալիստները կտրում են ժամանակն ու տարածությունը մատերիայից և ասում են, որ դրանք իբր սոսկ մեր մտքի արդյունք են։ Մարքսիստական մատերիալիզմը քննադատում է ժամանակի և տարածության ամեն մի իդեալիստական աղավաղում։

Ասացինք, որ մատերիան, նյութական աշխարհը գտնվում է անընդհատ շարժման, զարգացման պրոցեսում։ Փիլիսոփայական մատերիալիզմը գտնում է, որ այդ զարգացումը տեղի է ունենում օրինաչափ կերպով։ Ամբողջ բնությունը և հասարակությունը ունեն իրենց զարգացման օրենքները, որոնք անկախ են մարդուց և գոյություն ունեն օբյեկտիվորեն։ Այդ օրենքներն արտահայտում են բնության երևույթների և առարկաների հարաբերական կայուն, ներքին անհրաժեշտ կապը։ Մարդիկ իրենց հասարակական, արտադրական պրակտիկայի ընթացքում ճանաչում են այդ օրենքները։ Ճանաչելով աշխարհը, նրա անհրաժեշտ էական կապերը, նրա օրենքները, մարդիկ դրանով իսկ ձեռք են բերում գործունեության ազատություն։ Օբյեկտիվ աշխարհի օրենքների ճանաչողությունը մարդկանց հնարավորություն է ընձեռնում օգտագործել բնության ուժերը իրենց կեցության պայմանները բարելավելու համար։

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, զինված բնության և հասարակության մասին գիտական մատերիալիստական-դիալեկտիկական ուսմունքով, վստահորեն ուղիներ է հարթում մեր երկրում կոմունիստական հասարակարգ կառուցելու համար։

---



# Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ «ՀԱՅ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» ԱՇԽԱՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հ. Գաբրիելյանը ձեռնարկել է գրել հայ փիլիսոփայական մտքի բազմահատոր պատմությունը։ Նա ոչ միայն ձեռնարկել, այլև հրապարակի վրա դրել է այդ գործի առաջին հատորը, որն ընդգրկում է սկզբից մինչև 8-րդ դարը ներառյալ։

Ինքնին հասկանալի է, որ հայ փիլիսոփայական մտքի պատմություն շարադրելու համար անհրաժեշտ է խորապես իմանալ փիլիսոփայությունը և նրա պատմությունը, հայ ժողովրդի և նրա կուլտուրայի պատմությունը, իմանալ լեզուներ, մանավանդ գրաբարը և հունարենը, կարդալ մատենագիրներին, իմանալ սկզբնաղբյուրները, Մատենադարանի չհրապարակված կարևոր ձեռագրերը, վերջապես՝ հանգամանորեն իմանալ նյութին վերաբերող տարբեր գրականությունը։

Հայագիտությունը գիտության և կուլտուրայի, մանավանդ դեռ ուսումնասիրության կարոտ հարցերի բնագավառում՝ անհանդուրժելի է։

Ուրեմն, պահանջվում է երկար ու ձիգ տարիների պրոֆեսիոնալ գործչի աշխատանք, պահանջվում է կարողություն՝ սահմանելու փիլիսոփայական մտքի զարգացման էտապները, նրանց հաջորդական կապը և առանձին ներկայացուցիչներին, ուղղությունները, ընդհանրապես այդ բնագավառի զարգացման օրինաչափությունը։ Եվ եթե այդ պատմությունը շարադրելիս չի դրսևորվում այսպիսի իմացություն և կարողություն, ապա այդ դեպքում սարսափելի է դառնում անգամ այն իդեան, թե մեր փիլիսոփայական ժառանգության հիման վրա հնարավոր է գիտականորեն շարադրել հայ փիլիսոփայական մտքի զարգացման պատմությունը։

Հիրավի, Հ. Գաբրիելյանի նախաձեռնությունը կարող է լինել միայն մի ցանկալի իդեալ ամենքիս համար, մի ծանրակշիռ գործ, որի կողքով անտարբեր չի կարելի անցնել։ Այդպիսին է Հ. Գաբրիելյանի գիրքը իր թեմատիկայով և ծավալով, արտաքին իր հատկանիշներով։

Սակայն, միայն արտաքին հատկանիշներով չի կարելի գրքի մասին գաղափար կազմել. նախ և առաջ անհրաժեշտ է քննության առնել նրա բովանդակությունը։

Գրախոսվող աշխատության մեծագույն մասը՝ երեք քառորդից ավելին, նվիրված է հայկական աստվածաբանության պատմությանը, մասամբ և հայ ժողովրդի պատմությանը, մնացածը՝ ավելի քիչ, քան գրքի մեկ քառորդն է, նվիրված է փիլիսոփայությունից և աստվածաբանությունից վերցրած հարցերի համառոտ քննությանը։ Փիլիսոփայական մտքի այդ վաղ շրջանի պատմությունը, անկասկած, պետք է, որ շոշափեր նրա հետ առնչվող աստվածաբանական որոշ հարցեր, սակայն, Հ. Գաբրիելյանի մոտ ստացվել է հակառակը, նա գրել է աստվածաբանության պատմությունը՝ շոշափելով նրա հետ առնչվող որոշ փիլիսոփայական հարցեր։

Դիմենք փաստերին։ Հ. Գաբրիելյանի գիրքը կազմված է տասը գլուխներից, որոնցից հինգը՝ առաջինը, չորրորդը, հինգերորդը, ութերորդը և տասներորդը գրեթե ամբողջովին նվիրված են հայկական աստվածաբանությանը։ Այսպես, առաջին գլխում՝ «Վաղ քրիստոնեական փիլիսոփայության (կարդա՝ աստվածաբանության—Վ. Զ.) առաջին ներկայացուցիչները», շարադրված է քրիստոնեական գաղափարախոսության երկու ուղղությունների՝ գնոստիցիզմի և ապոլոգետիկայի մասին, եկեղեցու սուրբ հայրերի՝ Օրիգենի և Եգոստինոսի հայացքների մասին։

Այստեղ խոսվում է Ագաթանգեղոսի աստվածաբանական ուսմունքի և այն մասին, թե ինչպես աստված ստեղծեց աշխարհը. երկինքը՝ «հրեղեն հրեշտակների բնակության համար» (էջ 114), իսկ «երկրի ցամաքը մեր բնակության համար» (էջ 117)։ Աստվածաբանության մեջ Ագաթանգեղոսին հետևում է Մաշտոցը, որը սակայն «չի բավականանում աստծո գոյության դեկլարատիվ հայտարարությամբ, նա փորձում է ապացուցել այն» (էջ 125), նա գալիս է այն հետևության, «թե աստված-սուբստանցիան երրորդության (այսինքն՝ հայր աստված, որդին աստված և սուրբ

նություն չէ, բայց դրա հակակղերական, հակաիդեալիստական ընդհանուր տենդենցը ակնհայտ է» (էջ 527)։ Այս օրինակների թիվը կարելի է շարունակել... Հ. Գաբրիելյանի մոտ Ագաթանգեղոսից մինչև Շիրակացի բոլոր հեղինակները ստանում են նույն շաբլոն գնահատականը՝ իդեալիստ է, բայց կրում է մատերիալիզմի ազդեցությունը կամ «գնում է դեպի մատերիալիզմը», մատերիալիստ չէ կամ չի կարող լինել, բայց ունի մատերիալիզմի տենդենցներ և այլն։

Բերենք Հ. Գաբրիելյանի գրքից մի ուրիշ կարգի ստանդարտ սահմանում՝ տարբեր ժամանակների տարբեր հեղինակների վերաբերյալ։ Նա գրում է Եզնիկի մասին. «ակամայից Եզնիկը հանգում է դուալիզմի, որի դեմ սուր է ճոճում» (էջ 163)։ Դավիթ Հաղբատցու մասին. «նա փաստորեն նորից վերադառնում է դուալիզմին, որի դեմ շատ սուր է ճոճել Կողբացին» (էջ 343)։ Պետրոս Սյունեցու մասին. «Սա յուրօրինակ դուալիզմ է» (էջ 329)։ Հ. Մայրավանեցու մասին. «զարգացրեց յուրօրինակ դուալիզմ» (էջ 484)։ Շիրակացու մասին «սա յուրօրինակ դուալիզմ է» (էջ 530)։ Այսպիսի շաբլոն բնորոշումներ կարելի է թվել անվերջ, ամենուրեք նույնն է. «դուալիզմ», «յուրօրինակ մոնիզմ», հետո գալիս է «յուրօրինակ ռացիոնալիզմ», «յուրօրինակ մատերալիզմ» և այդպես անվերջ։ Կամ թե չէ՝ «Եզնիկը հետևողական մոնիստ չէ, նա մոնոթեիստ է, որը յուրօրինակ մոնարխիզմ է իդեոլոգիայի բնագավառում» (էջ 171)։ Ահա և մեկ ուրիշ սահմանում. «Եզնիկը ընդհանուր առմամբ մետաֆիզիկ է, բայց այս հանգամանքը արգելք չի հանդիսացել նրան՝ մի շարք կոնկրետ հարցերում ոչ միայն շեղվելու իր ընդհանուր ուղղությունից, այլև որոշակիորեն նայելու դեպի ապագան» (էջ 206)։ Մնում է, որ մեր խեղճ ընթերցողը գլուխ ջարդի հասկանալու համար, թե ինչ է նշանակում ասել. Եզնիկը հակառակ մետաֆիզիկային, «նայում է դեպի ապագան»։

Հ. Գաբրիելյանի մոտ նույն շաբլոնով գործածվում է հումանիզմ բառը, որի նշանակությունը վաղ ֆեոդալիզմի ժամանակ, այդպես էլ գրքում մնում է առանց վերծանելու։ Այսպես, մեր հեղինակը գրում է. Շիրակացին «մեծ հումանիստ է» (էջ 504), «Հաղբատցին հումանիստ է» (էջ 341), հումանիստ է նաև Մամբրե Վերծանողը, որին Հ. Գաբրիելյանը ներկայացնում է մեզ որպես ռեակցիայի ներկայացուցիչ. Մամբրեն «հումանիստ է և ձգտում է հումանիզմը հարմարեցնելով կրոնական դոգմաներին՝ դրանով վերջիններին ևս մասամբ հումանիստական բնույթ տալով սանձել կրոնական ավելի համբերատար սկզբունքների մի ամբողջություն» (էջ 296), Մամբրե Վերծանողը «աշխատում է մինչև իսկ կրոնական առասպելներն օգտագործել իր հումանիստական իդեաները պրոպագանդելու համար» (էջ 294)։ Թող մեզ թույլ տրվի ասելու, որ այստեղ Հ. Գաբրիելյանն իր հերթին պրոպագանդում է իր ընթերցողներին «յուրօրինակ կրոնական հումանիզմ»։

Ճիշտ այդպես է Հ. Գաբրիելյանը վարվում Հ. Մայրավանեցու (7-րդ դար) վերաբերյալ, երբ հայտարարում է, թե նա կրոնական և հասարակական հարցերի ըմբռնման գործում հանդես եկավ «լիբերալիզմի դիրքերից» (էջ 474), նեղություն չտալով իրեն բացատրելու, թե դա ինչ է նշանակում և ինչ հիմքեր կան այդպիսի որակման համար։

Հ. Գաբրիելյանն իր աշխատության մեջ անհիմն հասկացություններ և կոնցեպցիաներ է վերագրում այս կամ այն գործչին կանխակալ սխեմայով։ Ահա մի փաստ։ Նա բերում է Ագաթանգեղոսի հետևյալ տողերը. «Երկիրը ջրերից հրամանով (աստծու—Վ. Զ.) ազատեց. և ջրով պարուրված (սնված, գիրացած)՝ բոլոր բույսերը, զեռունները, գազանները, անասունները և թռչունները ջրերի դալար պահելու հետևանքով բխեցին (ծնվեցին) երկրից» (էջ 113)։ Այստեղ շատ պարզ սովորական մարդկային մի դատողություն է, ընդունելի թե աստվածաբանի և թե Հ. Գաբրիելյանի համար, այն, որ ջրից սնվում և աճում են բույսերը, անասունները և կենդանիները։ Բայց այդ Հ. Գաբրիելյանին չի բավարարում, նա գտնում է, որ Ագաթանգեղոսի կողմից տրված «Երևույթի այս բացատրությունը շատ որոշակիորեն հիշեցնում է մեզ Արիստոտելի ասածն այն մասին, որ Թալեսը ջուրը սկզբնական համարեց, որովհետև բոլոր գոյերի կերակուրը խոնավությունն է, և ինքը՝ ջերմությունն էլ խոնավությունից է ստացվում ու նրանով էլ ապրում, որ բոլոր սերմերի բնությունը խոնավությունն է, իսկ խոնավ իրերի սկիզբը՝ ջուրը։ Անշուշտ, Ագաթանգեղոսը ջրի սկզբնական լինելու հարցը չի դնում, բայց միաժամանակ երկրի կենդանության աղբյուրը ջուրն է համարում» (էջ113—114)։ Այսպես հիշատակվում է՝ Արիստոտել, Թալես, ջուրը վերջինիս մոտ որպես սկզբնական և հիմնական, որպեսզի ի վերջո հայտարարի, թե Ագաթանգեղոսը այդ բոլորի հետ չունի և ոչ մի առնչություն։ Անշուշտ այս բոլորը մեծացրել են լոկ գրքի ծավալը, բայց ո՛չ որակը։

Մինչև այժմ մենք խոսում էինք Հ. Գաբրիելյանի գրքի մասին՝ իր ամբողջության մեջ։ Իսկ այժմ նշենք գրքում տեղ գտած բազմաթիվ



մասնավոր թերություններից լոկ մի քանիսը։

Հ. Գաբրիելյանը Վարդանանց պատերազմին նվիրված Եղիշեի նշանավոր գրքում գտել է մի նախադասություն. «...և արդ ես տեսանեմ ի մերում աշխարհիս և ոչ զոք ազատեալ յայսպիսի աղէտից» (էջ 241), այլ կերպ ասած, Եղիշեն Ավարայրի ճակատամարտից հետո մտածում է Հայաստանի անելանելի դրության մասին և ելք չի գտնում ստեղծված աղետից ազատվելու համար։ Սա պարզ, հասկանալի արտահայտություն է Հայաստանում ստեղծված կացության մասին հայ-պարսկական պատերազմից հետո։ Սակայն, Հ. Գաբրիելյանը Եղիշեից բերած այդ նախադասության վրա հնարում է մի անհիմն եզրակացություն։ Նա գրում է. «այլ կերպ ասած՝ նախապես սահմանված կանոնների սահմանից դուրս գալը կամ կյանքի կոնկրետ ընթացքից խուսափելն անհնար է, ամեն ինչ արդեն կանխորոշված է, ու մեզ մնում է միայն ենթարկվել դրան։ Սա բացահայտ ֆատալիստական քարոզ էր, որ կարդում էր կյանքից հուսախաբ Եղիշեն» (էջ 241)։ Պարզ է, որ Հ. Գաբրիելյանը չի հասկացել, թե ինչ տարբերություն կա Եղիշեի ընկճված տրամադրության և այն ֆատալիզմի միջև, որը մեր հեղինակը փաթաթում է Եղիշեի վզին։

Հ. Գաբրիելյանը գրում է. «Աթենքի առաջին եպիսկոպոս համարվող այսպես կոչված Դիոնիս Արիոպագեցին նեոպլատոնիզմի յուրացման մեջ ավելի հեռուներ գնաց» (էջ 108)։ Այնուհետև, նա շարադրում է Դիոնիսի ուսմունքը այնպես, ինչպես ինքը հասկանում է և հետո անում է հետևյալ եզրակացությունը. «Ահա այսպիսի որոնումների և լինելության պրոցեսի մեջ էր գտնըվում քրիստոնեությունը, երբ Հայաստանում դա հաստատվեց որպես պետական կրոն ու սկսեց ձևավորվել որպես մտքի նոր սիստեմ» (էջ 108)։ Նախ, այն նեոպլատոնիզմը, որի մասին խոսում է Հ. Գաբրիելյանը, ոչ մի առնչություն չունի Աթենքի եպիսկոպոս Դիոնիս Արիոպագեցու հետ, թեկուզ նրա համար, որ այդ Դիոնիսը ապրել է 1-ին դարում, նեոպլատոնիզմի լույս աշխարհ գալուց դարեր առաջ և չի թողել և ոչ մի աշխատություն։ Ուրիշ բան է կեղծ Դիոնիս Արիոպագեցին, որին վերագրվող աշխատությունները լույս աշխարհ եկան 533 թվին Կոստանդնուպոլսի Տիեզերական ժողովի ժամանակ, որպես Արևելքի մոնոֆիզիտների գաղափարախոսությունն այդ ժողովում։ Այստեղ զարմանալին այն է, որ նա 6-րդ դարը համարում է քրիստոնեության «որոնումների և լինելության» շրջան, մի շրջան «երբ քրիստոնեությունը հաստատվեց Հայաստանում որպես պետական կրոն», այն ժամանակ, երբ այդ «որոնումների և լինելության» շրջանը եղել էր շատ դարեր առաջ, երբ քրիստոնեությունը Հայաստանում պետական կրոն էր դարձել դեռ 286 թվականին։

Հ. Գաբրիելյանը գրում է. «Ինչ ինչ վերաբերում է Ներոնի դաստիարակ Սենեկային, նա արևմտյան աշխարհի ծնունդ էր, այդ աշխարհի անտիկ հարաբերությունների անկման ու ֆեոդալիզմի կազմավորման շրջանի ծնունդ» (էջ 99)։ Ուրեմն, ըստ Հ. Գաբրիելյանի, Արևմտյան Եվրոպայում 1-ին դարը եղել է ֆեոդալիզմի կազմավորման շրջանը։ Սա այնպիսի «հայտնագործություն է», որն արժանի չէ և ոչ մի ուշադրության։

Հ. Գաբրիելյանը իր գրքի 145-րդ էջում աստվածաբան Նեղոսից բերում է երեք քաղվածք՝ վերագրելով դրանք Եզնիկին։ Սակայն, Հ. Գաբրիելյանին անհայտ, բայց հայագիտությանը շատ վաղուց հայտնի թյուրիմացություն է, երբ այդ Նեղոսի «խրատները» հեռավոր անցյալում վերագրվել են Եզնիկին և որը Ղուկասյան Մատենադարանի անգետ հրատարակիչների կողմից կցվել է Եզնիկի աշխատությանը որպես նրա գործը։ Հ. Գաբրիելյանը, որն այդ «խրատների» հիման վրա անում է Եզնիկի փիլիսոփայության վերաբերյալ եզրակացություններ, պետք որ իմանար, որ նա գործ ունի ոչ թե Եզնիկի, այլ Նեղոսի աշխատության հետ։ Մոտավորապես այդպիսի անհարմար վիճակի մեջ է դնում իրեն Հ. Գաբրիելյանը, երբ խոսում է Կոնիբերի աշխատության մասին։ Նա գրում է. «մենք իրավունք ունենք ասելու, որ նրա (Հ. Մանանդյանի— Վ. Զ.) բոլոր ասածներն էլ հունաբան դպրոցի սկզբնավորման, էտապների, ուստի և մեզ զբաղեցնող Դավիթ Անհաղթի էպոխայի որոշման մասին՝ մնում են չհիմնավորված ֆորմալ դատողություններ։ Ահա թե ինչու ներկա խնդրում մենք Կոնիբերի հարցադրումը Մանանդյանի հարցադրումից ճշմարտությանն ավելի մոտ ենք համարում» (էջ 354)։

Մենք մի կողմ ենք թողնում այն հարցը, թե Հ. Գաբրիելյանը որքան ձեռնհաս է գրաբարի և հունարենի, բնագիտության և պատմության իմացության խնդիրներում, որ այդպես խրոխտ կերպով ժխտում է Հ. Մանանդյանի «բոլոր ասածները» հունաբան դպրոցի մասին, բայց չենք կարող չասել, որ եթե փորձում է ինքը հենվել Կոնիբերի վրա, ապա պետք է իմանա, որ նրա աշխատությունը նվիրված է Արիստոտելի Օրգանոնի առաջին երկու մասերի հին հայերեն թարգմանությանը և մեկնությանը, և շոշափում է Դավիթ Անհաղթի հարցը այնքանով, որքանով տրադիցիոն կերպով նրան են

# ՊԼԵԽԱՆՈՎԻ ԸՆՏԻՐ ԵՐԿԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԸ

*Ականավոր մարքսիստ Գ. Վ. Պլեխանովի փիլիսոփայական-տեսական աշխատությունները մեծ դեր են խաղացել մարքսիզմի հիմնավորման և տարածման գործում՝ Ռուսաստանում։ Անհերքելի են նաև Գ. Վ. Պլեխանովի հսկայական ծառայությունները մատերիալիստական փիլիսոփայության աղճատումների դեմ մղված պայքարում միջազգային մասշտաբով։ Պլեխանովը քաղաքական ասպարեզ իջնելով որպես նարոդնիկ, այնուհետև էվոլյուցիա կատարեց դեպի գիտական սոցիալիզմ՝ մարքսիզմը, և հետագայում մարքսիստական աշխարհայացքի կրքոտ մարտիկը հանդիսացավ, պաշտպանելով ռևոլյուցիոն ուսմունքի ոգին ռևիզիոնիստական փորձերից։*

*Մեր պարտիայի հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինը ճշմարիտ գնահատականներ է տվել Պլեխանովի թեորիական վաստակի վերաբերյալ։ «... Միջազգային սոցիալ-դեմոկրատիայի մեջ,— ասել է Վլադիմիր Իլյիչը,— միակ մարքսիստը, որ տվել է ռևիզիոնիստների... բազմաթիվ անհեթեթությունների քննադատությունը՝ հետևողական դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետից, Պլեխանովն էր։ Այս առավել ևս անհրաժեշտ է վճռականորեն ընդգծել, որովհետև մեր ժամանակում խորապես սխալ փորձեր են կատարվում հին և ռեակցիոն փիլիսոփայական հնոտին անցկացնելու Պլեխանովի տակտիկական օպորտունիզմի քննադատության դրոշակի տակ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 15, հայ. հրատ., էջ 24—25)։*

*Բարձր գնահատելով Պլեխանովի փիլիսոփայական տեսական աշխատությունները, Լենինն անհրաժեշտ է գտել, որ նրանք մտնեն «կոմունիզմի պարտադիր դասագրքերի սերիայի մեջ» և ավանդվեն ուսանողներին։*

*Պլեխանովի տակտիկական օպորտունիզմը անջատեց նրան բանվոր դասակարգից, աշխատավորական մասսաներից, որոնք զինված խակական ռևոլյուցիոն ուսմունքով՝ մարքսիզմ-լենինիզմով, բարձրացրին Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դրոշը և այժմ կառուցում են կոմունիստական հասարակարգ։ Բայց անդասակարգ հասարակության համար մղվող պայքարի ամենատաղանդավոր, ամենաանձնվեր մարտիկների շարքում միշտ կշողշողա Գեորգի Վալենտինովիչ Պլեխանովի՝ մարքսիզմի ականավոր պրոպագանդիստի, ռուս և միջազգային բանվորական շարժման փայլուն գործիչի և խոր մտածողի անունը։ Նրա տեսական աշխատությունները մինչև այժմ չեն կորցրել իրենց նշանակությունը և հատու զենք են մեր օրերի բուրժուական ռեակցիոն գաղափարախոսությունը մերկացնելու գործում։ Հենց այս տեսակետից էլ միանգամայն ողջունելի է Պլեխանովի փիլիսոփայական ընտիր Երկերի հինգհատորյակի հրատարակությունը Գոսպոլիտիզդատի կողմից։ Առաջին հատորը արդեն հրապարակի վրա է գտնվում։*

*Պլեխանովի Երկերի առաջին հատորը կազմված է գերազանցապես նրա այն աշխատություններից, որոնք նվիրված են նարոդնիկության դեմ մղվող պայքարին և ընդգրկում են 1883—1895 թ. թ. շրջանը։ Այդ աշխատությունների թվին են պատկանում Պլեխանովի այնպիսի հանրահայտ գրվածքները, ինչպիսին են «Սոցիալիզմը և քաղաքական պայքարը», «Մեր տարաձայնությունները», «Ինքնակալության նոր պաշտպանը, կամ Պ. Լ. Տիխոմիրովի ողբը», «Մոնիստական պատմահայեցողության զարգացման հարցի շուրջը»։ Հատորում զետեղված են Պլեխանովի «Աշխատանքի ազատագրություն» խմբակի երկու ծրագրերը, որոնք նշանակալից դեր խաղացին ռուս սոցիալ-դեմոկրատիայի ծրագրային խնդիրների ձևակերպման համար, ինչպես նաև Պլեխանովի հռչակավոր ճառը, արտասանած 1889 թ. Փարիզի միջազգային բանվորական սոցիալիստական կոնգրեսում։ Խորը տեսական նշանակություն ունի «Հեգելի մահվան վաթսուներորդ տարեդարձի առթիվ» փայլուն հոդվածը, որը գրվել է գերմաներեն և առաջին անգամ լույս է տեսել գերմանական սոցիալ-դեմոկրատիայի տեսական ամսագիր «Նոյե Ցայտ»-ում։ Վերջապես, հատորում տպագրված են Էնգելսի՝ «Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը» գրքի առթիվ Պլեխանովի կողմից գրած առաջաբանը և բովանդակալից ծանոթագրությունները։*



*Հատորին կցված է Վ. Ֆոմինայի հետաքրքրական ներածական հոդվածը։*

*Պլեխանովի Երկերի հատորը բացվում է «Սոցիալիզմը և քաղաքական պայքարը» նշանավոր հոդվածով, որը, ըստ Լենինի արտահայտության իրենից ներկայացնելով «Ռուսական սոցիալիզմի առաջին «profession de foi-ն» ցույց է տվել, «թե հատկապես ինչպես և ինչու ռուսական ռևոլյուցիոն շարժումը պետք հանգեցնի սոցիալիզմի և քաղաքական պայքարի միաձուլման, բանվորական մասսաների տարերային շարժման միաձուլմանը ռևոլյուցիոն շարժման հետ, դասակարգային պայքարի և քաղաքական պայքարի միաձուլման» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 4, հայ. հրատ., էջ 364)։*

*Ռուսական սոցիալիզմի պատմության մեջ «Սոցիալիզմը և քաղաքական պայքարը» (1883 թ.) առանձնահատուկ տեղ է գրավում։ Այս գրվածքով Պլեխանովը հաստատ կանգնում է մարքսիզմի հողի վրա, ավարտելով իր էվոլյուցիան ուտոպիստական սոցիալիզմից դեպի գիտական սոցիալիզմը։ Պլեխանովը այստեղ հանրագումարի է բերում սոցիալիստական շարժման պրակտիկան Ռուսաստանում և համարձակորեն գիտական սոցիալիզմի տեսակետից շարադրում հասարակության զարգացման օրինաչափությունը և ռուս սոցիալիստների քաղաքական խնդիրները, հանդես գալով նարոդնիկության տրադիցիաների և ծրագրերի դեմ։*

*Ռուս հասարակության շփոթվածության և ձախորդ ժամանակների գարաշրջանում Պլեխանովն իր այս գրվածքում առաջինը ցույց տվեց սոցիալիստական ռևոլյուցիայի ուղիները Ռուսաստանում և այն դասակարգը, որը կոչված է վճռական պայքարի միջոցով անցում կատարելու դեպի նոր հասարակական ֆորմացիա...*

*Նարոդնիկների հետ միատեղ պայքարի տարիները Պլեխանովի համար տանջալից էին դարձրել վերջնական խզումը իր վաղեմի ընկերներից։*

*«Զեմլյա ի Վոլյա» կազմակերպության մեծամասնությունը ընտրել էր տեռորիստական գործելակերպի ուղին, որպես պատասխան կառավարական գործակալների վայրագությունների և հետապնդումների։*

*Պլեխանովը փորձ արեց հավատարիմ մնալ նարոդնիկության հին սկզբունքներին։ Իհարկե նրա համար ընդունել տեռորը նշանակում էր հրաժարվել սոցիալական պայքարից, կանգնել քաղաքական պայքարի ուղիների վրա։ Իսկ դա հերետիկոսություն էր բունտար-բակունիստի տեսակետից, որպիսին էր Պլեխանովը։ Կարծիքների բախումը 1879 թ. Վորոնեժի համագումարում «Զեմլյա ի Վոլյա» կազմակերպությանը բաժանեց երկու մասի՝ «Նարոդնայա Վոլյա» և «Չորնի պերեդել» կազմակերպությունների։*

*«Չորնի պերեդել»-ի գաղափարախոսն ու ղեկավարը Պլեխանովն էր։*

*Քաղաքներում, գլխավորապես Պետերբուրգում, ջախջախումից հետո պառակտված նարոդնիկները շփվեցին բանվորների հետ, ականատես եղան ծավալվող գործադուլային շարժմանը։ Բայց նրանց համար պրոլետարիատը երկրորդական, օժանդակ զորախումբ էր այն գյուղացիության համեմատ, որը, ըստ նարոդնիկների, ռևոլյուցիայի և սոցիալիզմի միակ հզոր գործոնն է Ռուսաստանում։*

*Պլեխանովն անջնջելի տպավորություններ է ստացել բանվորների հետ ունեցած իր առաջին հանդիպումներից։ Պետերբուրգի պրոլետարական միջավայրը բացառիկ ազդեցություն ունեցավ Պլեխանովի՝ որպես քաղաքական գործիչի էվոլյուցիայի վրա։ Կարելի է ասել, որ մայրաքաղաքի բանվորական շարժումը ծանր փորձությունների ենթարկեց Պլեխանովի նարոդնիկական աշխարհայացքը, որը զգալի ճեղքվածքներ էր տալիս, երբ ստուգվում էր իրականության կողմից։ Պլեխանովը ստիպված էր ըստ ամենայնի գնահատել նոր հասարակական երևույթները և ամենից առաջ բանվոր դասակարգի երևան գալը ռուս պատմական թատերաբեմում։ Արտասահմանում, էմիգրացիայի առաջին տարիներին, Պլեխանովը հիմնավորապես ուսումնասիրեց մարքսիստական գրականությունը, Արևմտյան Եվրոպայի բանվորական շարժման պրակտիկան։ Ութսունական թվականների ընթացքում Պլեխանովը վերջնականապես ձևավորվում է որպես մարքսիստ։*

*Ահա այս ամբողջ անցած շրջանի գնահատականն է տալիս «Սոցիալիզմը և քաղաքական պայքարը» գրվածքը։ Պլեխանովը այս աշխատությունը գրել է այն ժամանակ, երբ նարոդովոլեցների և չերնոպերեդելեցների միանալու հույս կար և ենթադրվում էր հոդվածը զետեղել «Վեստնիկ Նարոդնոյ Վոլի» ամսագրի առաջին համարում։ Սակայն, հոդվածի տպագրելը մերժվեց ամսագրի խմբագիրներ Լավրովի և Տիխոմիրովի կողմից։ Հոդվածը լույս ընծայվեց նույն 1883 թվականին կազմակերպված «Աշխատանքի ազատագրություն» խմբակի կողմից։*

*Վերլուծելով ռուսական իրականության մեջ տեղի ունեցող նոր հասարակական երևույթները, Պլեխանովը քննադատական գնահատման է ենթարկում նարոդնիկության արդեն քարացած հասկացողությունները և մարդկանց մտքերին տիրող նախապաշարմունքները։*

*«Ժողովրդի մեջ և ժողովրդի համար աշխատելու ձգտումը,— ասում է Պլեխանովը,— այն*

ցույց է տալիս համայնքի քայքայման ուժեղացող պրոցեսը։

Պլեխանովը միևնույն ժամանակ ապացուցում է, որ ժողովրդական տնտեսության զարգացման համար կապիտալիզմը անխուսափելի և դրական փուլ է կազմում։

«Կապիտալիզմին կողմ են մեր հասարակական կյանքի ամբողջ դինամիկան, բոլոր այն ուժերը, որոնք զարգանում են սոցիալական մեխանիզմի շարժման ժամանակ և, իրենց հերթին, որոշում են նրա շարժման ուղղությունն ու արագությունը։ Կապիտալիզմին դեմ են գյուղացիության որոշ մասի շատ թե քիչ կասկածելի շահերը միայն և ինտելիգենցիայի այն ուժը, որը ժամանակ առ ժամանակ այնքան խիստ կերպով զգացնել է տալիս իրեն յուրաքանչյուր հետամնաց գյուղատնտեսական երկրի զարգացած մարդկանց» (էջ 288—289)։

Պատասխանելով այն հարցին, թե որոնք են ռուս սոցիալիստների իսկական խնդիրները, Պլեխանովը կոչ է անում ձուլվել համաշխարհային սոցիալիզմի հետ, ընդունել Մարքսի—Էնգելսի գիտական սոցիալիզմը, որի համաձայն.

ա) բանվոր դասակարգի կոմունիստական ռևոլյուցիան չի կարող առաջանալ այն մեշչանական-գյուղացիական սոցիալիզմից, որը քարոզում են նարոդովոլեցները և այլ ռուս սոցիալիստներ,

բ) գյուղական համայնքը զարգանալով տեղ է տալիս բուրժուական և ոչ թե կոմունիստական հարաբերություններին,

գ) կոմունիստական շարժման նախաձեռնությունը կարող է իր վրա վերցնել միայն արդյունաբերական կենտրոնների բանվոր դասակարգը, որը սեփական ուժերով կհասնի իր ազատագրությանը։

«... Բացի բանվորներից, չկա ուրիշ մի այնպիսի խավ,— համոզված հայտարարում է Պլեխանովը,— որը վճռական րոպեին կարողանար տապալել և վերջնականապես ոչնչացնել տեռորիստների կողմից վիրավորված քաղաքական հրեշին» (էջ 365)։

Բանվորների քաղաքական շարժումը նոր վստահություն կներշնչի քաղաքական ազատության բոլոր կողմնակիցներին, և պայքարն աբսոլյուտիզմի դեմ կմտնի իր վերջին փուլը։

Պլեխանովը կոչ է անում ռուս սոցիալիստական ինտելիգենցիային՝ գնալ դեպի բանվորական միջավայրը, գիտություն և լույս տարածել բանվորների շրջանում, արթնացնելով պրոլետարների դասակարգային գիտակցությունը։ Արդյոք կհասկանա՞ ինտելիգենցիան իր շնորհակալ դերը,— հարցնում է Պլեխանովը։ «Կհասկանա թե ոչ, բայց դեպքերը նրան չեն սպասի։ Դաշնակիցների բացակայությունը ինտելիգենցիայի շրջանից չի խանգարի մեր բանվոր դասակարգին գիտակցել իր շահերը, ըմբռնել իր խնդիրները, իր սեփական միջավայրից ղեկավարներ առաջ քաշել, ստեղծել իր սեփական, բանվորական ինտելիգենցիան։ Այդպիսի ինտելիգենցիան չի դավաճանի դասակարգի գործին, չի թողնի նրան բախտի քմահաճույքին» (էջ 414)։

Եվ որպես մարգարեական ճառի եզրափակիչ ակորդ՝ աշխարհով մեկ հնչում են Պլեխանովի հանդիսավոր խոսքերը Փարիզի միջազգային կոնգրեսում.

«Ռևոլյուցիոն շարժումը Ռուսաստանում կհաղթանակի որպես բանվոր դասակարգի շարժում կամ այն երբեք չի հաղթանակի» (էջ 421)։

Պլեխանովի «Սոցիալիզմը և քաղաքական պայքարը» և «Մեր տարաձայնությունները» չափազանց կարևոր նշանակություն ունեցան մարքսիզմի զարգացման համար Ռուսաստանում։ Նարոդնիկության գաղափարախոսության քննադատությունը անհրաժեշտ քայլ էր ռուս ռևոլյուցիոն շարժման հետագա զարգացման ճանապարհին։ Այդ քննադատության հետ միաժամանակ Պլեխանովը փայլուն կերպով շարադրում է Մարքսի պատմական մատերիալիզմի սկզբունքները և վարպետորեն կիրառում դրանք ռուս իրականության նկատմամբ։

Հարցերի մարքսիստական մշակման և հիմնավորման փայլուն նմուշ է հանդիսանում Պլեխանովի «Հեգելի մահվան վաթսուներորդ տարեդարձի առթիվ» սքանչելի հոդվածը, որն Էնգելսի բարձր գնահատանքին արժանացավ։

Կանգ առնելով Հեգելի փիլիսոփայական-պատմական հայացքների վրա, Պլեխանովը նշում է նրա դիալեկտիկական զարգացման տեսակետը, որը հիմնովին տարբերվում է մետաֆիզիկական մոտեցումից դեպի հասարակական երևույթները և դրանք փոխադարձությամբ բացատրելուց։ Ամբողջ պատմությունը Հեգելի համար—դա համընդհանուր ոգու շարադրումն ու կենսագործումն է։ Դա, իհարկե, իդեալիստական տեսակետ է, նկատում է Պլեխանովը։ «Բայց միևնույն ժամանակ նա սովորեցնում է մեզ մտածողության հետևողականությանը, և ով սիրով և ուշադրությամբ կանցնի նրա խստաշունչ դըպրոցը, նա մշտապես կունենա փրկարար զզվանք էկլեկտիկ վինեգրետի նկատմամբ» (էջ 430)։

Համընդհանուր ոգու շարժումը կատարվում է աստիճաններով, որոնցից յուրաքանչյուրն



ունի իր հատուկ ժողովրդական ոգին։ Տվյալ ժողովրդի ոգու հատկությունները որոշելու համար Հեգելը հաճախ կանգնում է պատմական, էմպիրիկ հողի վրա, և այն ժամանակ, ինչպես նկատում է Պլեխանովը, մատերիալիզմը հանդես է գալիս որպես իդեալիզմի ճշմարտություն։ «Իդեալիստներից մեծագույնը կարծես նպատակ է դրել ասպարեզ մաքրել մատերիալիզմի համար»,— նկատում է Պլեխանովը։

Փիլիսոփայական մտքի հետագա զարգացումը կատարվեց Մարքսի կողմից։ Դիալեկտիկական մեթոդը՝ գերմանական իդեալիստական փիլիսոփայության այդ գլխավոր նվաճումը՝ մարքսիզմի քննադատության բովից անցավ ժամանակակից մատերիալիզմին։ Դիալեկտիկան ազատագրվեց հեգելյան միստիկական քողից։

Մարքսի կողմից զարգացրած մատերիալիստական փիլիսոփայությունը ամբողջական և հետևողական աշխարհայացք է։ Իդեալիզմը վտարվեց իր վերջին ապաստարանից՝ սոցիոլոգիայի բնագավառից։ Մարքսի համար պատմությունը օրինաչափական պրոցես է ներկայացնում, և հասարակական կյանքում գործող և ներգործող ուժերը վերջին հաշվով բացատրվում են արտադրողական ուժերի զարգացումով։ Քանի դեռ պատմական զարգացման շարժիչ ուժերը գործում էին մարդկանց գիտակցությունից անկախ, պատմությունը կատարվում էր անգիտակցաբար։ Բայց երբ բացատրված են այդ ուժերը և նրանց զարգացման ու գործողության օրենքները, ապա մարդիկ կարող են գիտակցորեն գործել և հասնել սպասած արդյունքների։ Այդպիսով, բացվում է ճանապարհը դեպի գիտակից գործունեության ու ազատության թագավորությունը։

Հասարակությունը չի կարելի վերափոխել ուտոպիստական ծրագրերի համաձայն, այլ նրա զարգացումը պայմանավորված է օբյեկտիվ օրենքներով։ Ուտոպիստները հաշվի չառնելով այդ օրենքները, ձգտում են արգելակել, կանգնեցնել պատմության անիվը, ստանձնելով ռեակցիայի դերը, նշում է Պլեխանովը։

Բանվորական շարժման հաջողությունները համախմբեցին նրա թշնամիներին, որոնք 90-ական թվականներին դիմեցին հակահարձակման, ընտրելով նաև տեսության ասպարեզը։ Ինչպես Եվրոպայում, այնպես էլ Ռուսաստանում իրար հետևից լույս տեսան հոդվածներ, բրոշյուրներ, գրքեր, որոնք «գիտական» տեսակետից «հերքում» էին մարքսիզմը։ Ռուսաստանում պրոլետարիատի ուսմունքի քննադատների դերում հանդես եկան լիբերալ նարոդնիկներ Ն. Միխայլովսկին, պրոֆ. Կարեևը, Կուդրինը, Ժուկովսկին և ուրիշները, որոնք պատմական մատերիալիզմը մեղադրում էին ներքին հակասությունների, միակողմանիության, սահմանափակության, քվիետիզմի, դոգմատիզմի և այլ մեղքերի մեջ։

Պլեխանովի «Մոնիստական պատմահայեցողության զարգացման հարցի շուրջը» (1895) գիրքը մի ջախջախիչ պատասխան էր այդ բոլոր քննադատներին, ուր հեղինակը մեկ առ մեկ վերլուծում է մարքսիզմի հակառակորդների տեսակետները, ապացուցում նրանց սնանկությունը և մերկացնում լիբերալ-նարոդնիկ քննադատների ռեակցիոն սուբյեկտիվ-իդեալիստական հայացքները հասարակության զարգացման մասին։

Բացառիկ էր այդ գրքի ազդեցությունը ժամանակակիցների մտքերի վրա։ Այդ գիրքը, ինչպես նշել է Լենինը, ռուս մարքսիստների մի ամբողջ սերունդ է դաստիարակել։ Երիտասարդությունը թողնում էր նարոդնիկական գրքերը և մասսայաբար կանգնում մարքսիզմի դրոշի ներքո։ Բելտով-Պլեխանովը դարձել էր երիտասարդության «մտքերի տիրակալը»։

Պլեխանովի գիրքը հեղինակին հատուկ տաղանդով ու փայլով ընթերցողի առաջ բացահայտում է մարքսիստական գաղափարների անսպառ գանձարանը, հաստատելով միևնույն ժամանակ գիտական սոցիալիզմի տեսության հաջորդական կապը մարդկության կուլտուրայի անցյալի նվաճումների հետ։

Մարդկության պատմական շարժման բանալին գերմանական իդեալիստ փիլիսոփաները փնտրում էին ոգու հատկությունների, բացարձակ գաղափարի զարգացման տրամաբանական օրենքների մեջ։ Դրանով իդեալիստ փիլիսոփաները վերակենդանացնում էին մարդկային բնության տեսակետը։ «Մարքսի հանճարեղ հայտնագործությունը ուղղում է իդեալիզմի այդ արմատական սխալը, դրանով իսկ հասցնելով նրան մահացու հարված, սեփականության վիճակը, իսկ նրա հետ միասին նաև սոցիալական միջավայրի բոլոր հատկությունները... որոշվում են ոչ թե բացարձակ ոգու հատկություններով և ոչ էլ մարդկային բնությամբ, այլ այն փոխադարձ հարաբերություններով, որոնց մեջ մարդիկ անհրաժեշտաբար դրվում են իրար նկատմամբ «իրենց կյանքի արտադրության հասարակական պրոցեսի ընթացքում», այսինքն՝ գոյության համար մղվող իրենց պայքարում» (էջ 635)։

«Արտադրողական ուժերի տվյալ վիճակի հողի վրա կազմակերպվում են արտադրության որոշակի հարաբերություններ, որոնք ստանում են իրենց իդեալական արտահայտությունը

գրելու: Խմբագրության ձեռք բերած հաջողությունն այս ուղղությամբ այն է, որ նա կարողացել է իր շուրջը համախմբել մեր երիտասարդ տաղանդավոր նկարիչներին ու նրանց ուժերով նկարազարդել ամսագիրը, ինչպես և տպագրել կլասիկների գործերի ռեպրոդուկցիաներ: Բայց այդ ամենը միայն սկիզբը պիտի համարել: Ամսագրի թուղթը այն ցանկալի որակը չէ, որի վրա, ինչպես նկարիչների մոտ ընդունված է ասել, կարելի լիներ հաճույքով աշխատել. բացի այդ, տպագրական որակը այնքան ցածր է, որ հիանալի բնագրերը խակությամբ արտաբերվելու փոխարեն ծեփվում են համատարած մրով, գույները շաղվում են այնպես, որ հազիվ կարելի է լինում գործը ճանաչել (օրինակ՝ Վ. Սուրենյանի «Շամիրամը Արա Գեղեցիկի դիակի մոտ», № 4): Ավելի զարմանալին այն է, որ լուսանկարներն անգամ ցանկալի որակով չեն տպագրվում: «Պիոներ» ամսագիրն արժանի է, որ և՛ վիմագրությունը, և՛ խոր տպագրությունն ու բազմագույն տպագրությունը ասեն իրենց վերջին խոսքը՝ բարձրորակ տպագրական աշխատանք տալով մեր երեխաներին:

Խմբագրությունը հարկ եղած ուշադրություն չի դարձնում նաև տառատեսակներին: Հայտնի է, որ տառատեսակի բազմազանությունը (ոչ միայն սովորական շարվածքը, այլև գլխատառերը) մեծ աշխուժություն է առաջացնում ու իսկույն գրավում է ընթերցողին: Էլ չենք խոսում այն մասին, որ տողի երկարությունից ու կարճությունից է կախված այս կամ այն նյութի դյուրին ընթերցումը՝ առանձնապես փոքրահասակների համար: Սրանք այնպիսի հարցեր են, որոնք տեխնիկական լինելուց ավելի մանկավարժական նշանակություն ունեն: Այս գործում թերացումը ցույց տալու համար բավական է վերցնել անցյալ տարվա համարներից մեկը (№ 3) և տեսնել, թե ինչպիսի տաղտուկ են առաջացնում նրա վերնագրերը, որոնց ճնշող մասը տպագիր տառատեսակն է, այն էլ՝ ամենաանարտահայտիչը: Մինչդեռ բազմազան են մեր տպագիր գլխատառերը: Բայց մեր խոսքը, իհարկե, այն մասին է, որ տպագրված նյութերի վերնագրերը կարելի է նկարազարդել, ձեռագիր տառերով տալ:

Պետք է բովանդակալից դարձնել ամսագիրը, լրջորեն մտածել նրա պոլիգրաֆիական ձևավորման որակը բարելավելու մասին: Եվ վերջապես, չի կարելի ռեսպուբլիկայի հազարավոր պատանի ընթերցողների բոլոր հասակների համար հրատարակել մեկ ամսագիր, այն էլ, ինչպես մենք տեսանք, շատ կողմերով անարտահայտիչ ու աղքատիկ:

**Ս. ՍԱՐԳՍՅԱՆ**

ՀԱՐԳԵԼԻ ԸՆԿԵՐ

1957 թվականի հունվար ամսից «Պարտիական կյանք» ամսագիրը լույս է տեսնում «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» վերնագրով:

Ամսագրի ծավալը երկու մամուլով ավելանալու հետևանքով նրա գինը 50 կոպեկով բարձրացել է: Ամսագիրը տարեկան արժե 30 ռուբլի:

Իրազեկ դարձնելով Ձեզ այս առթիվ, խնդրում ենք բաժանորդագրության վճարի տարբերությունը (տարվա համար վեց ռուբլի) մուծել «Սոյուզպեչատ»-ի շրջանային բաժանմունքը կամ մամուլի Ձեր լիազորին:

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении. тел. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

ՎՖ 00578 Պատվեր 29 Տիրաժ 6300

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 29/I 1957 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆ II տպարան, Երևան, Կնունյանցի 8:

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.



# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ

# „ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ“

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ 1957 ԹՎԱԿԱՆԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ՝

Տարին — 30 ռուբլի, վեց ամիսը — 15 ռուբլի

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

ԿԱՊԻ ԲՈԼՈՐ ԳՐԱՍԵՆՅԱԿՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, «ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՄ, ՖԱԲՐԻԿԱՆԵՐՈՒՄ, ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ, ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԻԱԶՈՐՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ։

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»